Պրոֆ. Յ. ՄԱՆԱՆԴՅԱՆ

# ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԳԼԽԱՎՈՐ ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐԸ

ՀՍԽՀ ԼՈՒՍԺՈՂԿՈՄԱՏ

ՊՐՈՖ. ՀԱԿՈԲ ՄԱՆԱՆԴՅԱՆ



# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԳԼԽԱՎՈՐ ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐԸ

ԸՍՏ

## ՊԵՎՏԻՆԳԵՐՅԱՆ ՔԱՐՏԵԶԻ





ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅՈՒՆ ՄԵԼՔՈՆՅԱՆ ՖՈՆԴԻ

ԵՐԵՎԱՆ ԳԻՏՀՐԱՏԻ ՏՊԱՐԱՆ 1936

# ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ

1. Հայաստանի ռազմական ու առևտրական հին ճանապարհների ուսումնասիրության համար միակ հիմնական աղբյուրն է հռոմեական հին քարտեզը, որն անվանվում է այժմ Tabula Peutingeriana, այսինքն՝ «Պևտինգերյան Տախտակներ»։

Ինչպես հայտնի է, այդ քարտեզը գտել էր 16-րդ դարում Վիեննայի հումանիստ Conrad Celtes-ը և հանձնել Աուգսբուրգի գիտնական Peutinger-ին, որի անունով և կոչվում է «Պևտինգերյան»։ Պետք է սակայն մատնանշել, որ գրավոր այս հուշարձանը, որն անվանվում է նաև «հռոմեական աշխարհաքարտեզ», իրապես, ո՛չ թե քարտեզ է այժմյան իմաստով, այլ հին աշխարհի ճանապարհների մանրամասն մի նկարագրություն է և հատուկ մի ուղեցույց, որի վրա նշանակված են առանձին գծերով ու նկարներով Բրիտանիայի, Եվրոպայի, Ասիայի և Աֆրիկայի հաղորդակցության հին ճանապարհները, այդ ճանապարհների վրա գտնվող քաղաքներն ու կայարանները և միաժամանակ—և այդ առանձնապես կարևոր է—նաև տարածությունները յուրաքանչյուր կայարանից մինչև մյուս կայարանը, որոնք ցույց են տրված, գլխավորապես, հռոմեական մղոններով, իսկ երբեմն նաև այլ չափերով։

2. Հռոմեական այս ճանապարհացույց-քարտեզը վերահրատարակել է նորերս և մանրամասն կերպով ուսումնասիրել ու մեկնել է գերմանական գիտնական Կոնրադ Միլլերն իր ընդարձակ Itineraria Romana աշխատության մեջ (Itineraria Romana, Römische Reisewege an der Hand der Ta-

bula Peutingeriana, Stuttgart *1916, եջ* III—LXXV *և 1—992)։*

*Իր հրատարակության առաջաբանում Կ. Միլլերը, խոսելով այս քարտեզի ծագման ու ժամանակի մասին՝ կարծում է, վոր սրա հեղինակն է հռոմեական աշխարհագիր Կաստորիուսը, վորն այս* Itineraria*-ն կազմել է, հավանորեն, 4-րդ դարի վաթսունական թվականներին։ Նրա այս հետևությունը, վոր հիմնված է ուշագրավ դիտողությունների և փաստական տվյալների վրա՝ միանգամայն հավանական է ու համոզիչ։*

*Քարտեզի վրայի նկարներից, ինչպես մատնանշել է Կ. Միլլերը, պարզ յերևում է, վոր նրա հորինման ժամանակ Հռոմը, Կոստանդնուպոլիսը և Անտիոքն յեղել են միաժամանակ կայսերական գահանիստ քաղաքներ, իսկ այս, անշուշտ, ուշադրության արժանի ու խիստ կարևոր մի ապացույց է, վոր քարտեզը կազմված պիտի լիներ չորրորդ դարում՝ Կոստանդին Մեծից (324—337 թ.) հետո և Թեոդոսիոս Մեծից (379—395 թ.) առաջ։ Քննության առնելով քարտեզի նաև մյուս մանրամասնությունները՝ Կ. Միլլերը նրա հորինման ժամանակը վորոշում է կամ 365 թվին և կամ 361—363 թվականներին (տես եջ* XXIX—XXXVI*)։*

*Ավելի քան հավանական են նույնպես Միլլերի դիտողությունները քարտեզի հեղինակի մասին։*

*Մոտավորապես 670 թվին*[1] *այս աշխարհաքարտեզից, ինչպես ցույց է տվել Միլլերը, օգտվել է իր աշխարհագրության մեջ Անանուն Ռավեննացին։ Նա ունեցել է իր ձեռքի տակ քարտեզի նաև առաջին թերթը, վորն այժմ պակասում է, և այդ թերթի վրա նա կարող եր, բնականաբար, կարդացած լինել վերնագրում հեղինակի անունը։ Միլլերի քննության համաձայն Ռավեննացու մոտ հիշատակված են մոտ*

---

[1] *Այս կետում Մարկվարտը համաձայն չէ Միլլերին և կարծում է, վոր Ռավեննացու աշխարհագրությունը գրված է 734 թվից հետո (տես* Das Itinerar von Artaxata nach Armastica auf der römischen Weltkarte, Wien 1928, *եջ 5)։*

2000 տեղանուն, վորոնք քաղված են այս քարտեզից, և իբրև այդ քաղվածքների հեղինակ մատնանշված է (36 անգամ) հռոմեական աշխարհագիր Կաստորիուսը՝ Romanorum Cosmographus, multotiens dictus Castorius, ipse Castorius են (տես Itineraria Romana, էջ XXVI—XXIX)։ Վորոշ հիմք է ունեցել, ուրեմն, Միլլերը պնդելու, վոր Պևտինգերյան քարտեզը վերագրվելու յե, իբրպես, հռոմեական աշխարհագիր Կաստորիուսին։

3. Կաստորիուսին վերագրված քարտեզը, ինչպես տեսնում ենք, կազմված է յեղել կայսերական Հռոմի աշխարհակալության այն շրջանում, յերբ հայերը դեռ չեն ունեցել գիր և գրականություն և յերբ ֆեոդալական Հայաստանը գտնվել է դեռևս Արշակունիների իշխանության տակ։ Այդ հնության պատճառով՝ նրա Հայաստանի ու հարևան յերկրների մասը, բնականաբար, անփոխարինելի ու անգնահատելի մի աղբյուր է հայկական լեռնաշխարհի պատմական աշխարհագրության։ Կ. Միլլերի կարծիքով՝ «հին աշխարհագրության համար Կաստորիուսի այս քարտեզն ավելի կարևոր է, քան հին ժամանակի գիտական ամենանշանավոր աշխարհագրական աշխատությունը՝ Պտոլեմեոսի աշխարհագրությունը․ ավելի կարևոր է, վորովհետև Կաստորիուսի թվերն ազատ են սխալներից ու թերություններից, վորոնք հատուկ են հին աշխարհի աստղաբաշխական ու յերկրա-բնագիտական հասկացողություններին» (տես Itineraria Romana, էջ XXXIX—XL)։

Պետք է սակայն ի նկատի ունենալ, վոր քարտեզի առանձին մասերը և թվերը տարբեր են ըստ իրանց ճշտության ու արժեքի։ Հեռավորության թվերը ստույգ են համեմատաբար և վստահելի այն ճանապարհների նկատմամբ, վորոնք չափված են յեղել և ունեցել են մղոնաքարեր, իսկ չչափված ճանապարհների նկատմամբ միջկայարանային հեռավորությունները հիմնված են, հավանորեն, ճանապարհորդների կամ տեղացիների հաղորդած տեղեկությունների վրա։ Քարտեզի այս մասերում համապատասխան թվերը կարող են լինել, անշուշտ, մոտավոր ու վիճելի։

*Ինքն ըստ ինքյան հասկանալի յե նմանապես, վոր այս քարտեզում ևս, ինչպես և հին մատենագրության գրչագիր մյուս ձեռագրերներում, կան տեղանունների ու թվերի բազմաթիվ աղավաղումներ, վորոնք վերագրվելու յեն, մեծ մասամբ, քարտեզն ընդորինակողներին։*

*Այս վերջին հանգամանքը չե կարող, իհարկե, հիմք ծառայել մեծարժեք այս աշխատության վարկաբեկման։*

*4. Քարտեզի կարևորության մասին բացասական նման կարծիք եր հայտնել, որինակ, Ա. Խաչատրյանն իր զեկուցման մեջ («Առևտրական ու ռազմական ճանապարհները Հին Հայաստանում»), վորը նա կարդացել եր Կուլտուրայի Պատմության Ինստիտուտում 1933 թվին։ Իր այդ զեկուցման 11-րդ թեզիսում, վորը մեքենագրված ու հրապարակված եր՝ նա տալիս ե Պևտինգերյան քարտեզի հետևյալ գունավորված ու չափազանցված բնորոշումը՝*

> *«Ըստ քննադատների—գրում ե Խաչատրյանը—այս քարտեզի վրա անունները նշանակված են բոլորովին աղճատված ձևերով. կայարանների անունները զանազան ուղեգծերի վրա գրված են ավելի կամ պակաս թվով. նրանց հաջորդականությունը հաճախ վեր-վայր ե շրջված և դրված հեռավորության չափերը շատ անճիշտ են, ուստի և այս թերություններովը Պևտինգերյան քարտեզը չի կարող վստահելի առաջնորդ լինել գտնելու հին ճանապարհները Հայաստանում, ինչպես ընդունել ե պրոֆ. Մանանդյանը»։*

*Խաչատրյանի այս գնահատականը, վորը նա աշխատում եր հաստատել Ռամզայի* «Historical geograpy of Asia Minor» *(1890) աշխատության վկայություններով, ինչպես կտեսնենք, ճիշտ չե։ Ինչպես նախորդ իմ ուսումնասիրությունը («Հին Հայաստանի ճանապարհները* Artaxata-Satala *և* Artaxata-Tigranocerta *ըստ Պևտինգերյան քարտեզի», Յերևան 1930), նույնպես և իմ այս ընդարձակ աշխատությունը, պարզ ու վորոշ ցույց են տալիս, վոր Պևտինգերյան քարտեզը (Անանուն Ռավեննացու ուղղումներով) միանգամայն*

*«վստահելի առաջնորդ» ե, վորի ոգնությամբ ճշտվում են վոչ միայն Արշակունյաց Հայաստանի հին ճանապարհները, այլ և այդ ճանապարհների վրա գտնվող կայարանների մեծագույն մասը։ Հայտնի յե նույնպես, վոր նույն այս քարտեզի հայկական մասը մեծարժեք առաջնորդ են համարել և ոգտագործել Ադոնցը և Մարկվարտը։*

*5. Հռոմեական ճանապարհացույց-քարտեզի միակ որինակը, վոր այժմ գտնվում ե Վիեննայի Պետական գրադարանում, մեծ խնամքով գրված մի ընդորինակություն ե, վորի գրության ժամանակը Կ. Միլլերը յենթադրում ե 11—12-րդ դարում (տես* Itineraria Romana, *եջ* XVII*)։ Լինելով համեմատաբար ուշ ժամանակի արտագրություն՝ միակ այս ձեռագիրը չե կարող, իհարկե, լինել անթերի ու անաղճատ պատճենը քարտեզի սկզբնական բնագրի։*

*Սակայն Հայաստանի նկատմամբ՝ այժմյան որինակի աղավաղությունները կարելի յե, ինչպես կտեսնենք, ուղղել մասամբ Անանուն Ռավեննացու քաղվածքների ոգնությամբ։*

*Ռավեննացին իր աշխարհագրության մեջ ոգտվել ե, ինչպես վերև ասացինք, հռոմեական միևնույն այս քարտեզից։ Բոլոր այն տեղանունները, վոր մենք քննության ենք առնելու, արտագրված են նաև նրա աշխարհագրության մեջ, և գրեթե միշտ այն հաջորդականությամբ, ինչպես նրանք նշանակված են յեղել քարտեզում։ Ռավեննացու քաղվածքների համեմատությունն այժմյան քարտեզի վկայությունների հետ ցույց ե տալիս, վոր նա ունեցել ե իր ձեռքի տակ այս քարտեզի ավելի ընտիր ու ավելի լրիվ մի որինակ, քան Պետինգերյանը։ Մարկվարտը յենթադրում ե նույնիսկ, վոր Ռավեննացին ունեցել ե իր տրամադրության տակ միևնույն այս քարտեզի վոչ թե մեկ, այլ յերկու որինակ (տես* Das Itinerar von Artaxata nach Armastica, *եջ 11)։*

*Միանգամայն հասկանալի յե, ուրեմն, վոր Արշակունյաց Հայաստանի հին ճանապարհների ուսումնասիրության համար անհրաժեշտ ու խիստ կարևոր ոժանդակ աղբյուր ե նաև Անանուն Ռավեննացու աշխարհագրությունը։*

Այս աղբյուրի տպագիր հրատարակությունը (ed. Pinder et Parthey), վորն այժմ խիստ հազվագյուտ է, դժբախտաբար, յես չեմ կարողացել ձեռք բերել, ուստի և օգտվել եմ, գլխավորապես, Կ. Միլլերի Itineraria-յում մեջ բերված վկայություններից, վորոնց մեջ մատնանշված են Հայաստանում գտնվող կայարանների անուններն այն ընթերցանությամբ ու հաջորդականությամբ, ինչպես նրանք տրված են նաև Ռավեննացու մոտ։

6. Պևտինգերյան քարտեզի և Ռավեննացու աշխարհագրության վկայությունների քննական ու համեմատական ուսումնասիրությամբ Արշակունյաց Հայաստանի հին ճանապարհների ընդհանուր ուղղությունը վորոշվում է, ինչպես կտեսնենք, միանգամայն բավարար ճշտությամբ։ Իսկ նոր այս տվյալները խիստ կարևոր են վոչ միայն Հայաստանի պատմական աշխարհագրության, այլ և Հայաստանի տնտեսական ու քաղաքական պատմության համար։

Սույն ուսումնասիրության ընթացքում մենք կըպարզենք, վոր հին այս ճանապարհներով երբեն մեծ մասամբ կատարվել հայկական, պարթևական, հռոմեական, նաև բյուզանդական ու սասանյան զորքերի տեղաշարժումները։ Սակայն պատերազմող այս զորքերի հարձակման ու նահանջի հին ճանապարհները, վորոնք անորոշ ու անցողակի կերպով հիշված են մատենագրական թե հայ և թե ոտար յերկերում, սխալ են հաճախ լուսաբանվում պատմագիտական նորագույն անգամ յերկերում։

Հասկանալի յե, ուրեմն, վոր Պևտինգերյան քարտեզում գծված հայկական ճանապարհների ճշտումը մի նոր կռվան է լինելու մատենագրական վկայությունների հավանական լուսաբանության։

Վոչ պակաս կարևոր է նաև այն, վոր միևնույն այս ճանապարհների վորոշմամբ պարզվում է առևտրական հին ճանապարհների ուղղությունն և, մասնավորապես, կարավանների այն համաշխարհային ճանապարհագիծը, վորը գալիս եր Չինաստանից ու Միջին Ասիայից Արտաշատ և այստեղից գնում Սև ծովի նավահանգիստները։

7. Ներկա աշխատության մեջ, ինչպես և այս աշխատությանը կցված հատուկ քարտեզներում, հին ճանապարհներն ու կայարանատեղերը վորոշված են ուղիղ գծերով և մոտավոր միայն ճշտությամբ։ Նույն ճանապարհների ճշգրիտ ու իսկական ուղղությունները, ինչպես և կայարանատեղերի հավանական հին տեղադրությունը, պետք է, բնականաբար, վորոշեն տեղում գիտական առանձին արշավախմբերը։

Տեղաքննական այս հետազոտությունները կարող են նշանակություն ունենալ, մասնավորապես, նաև հնագիտության համար։ Ավելի քան հավանական է, վոր Արշակունյաց Հայաստանի հին ճանապարհների ուղղությամբ և Պևտինգերյան քարտեզում մատնանշված գլխավոր վայրերում կըգտնվեն թերևս հնագիտական մնացորդներ ու պատմական հուշարձաններ, վորոնք կարող են աչքաթող արված լինել հին այս ճանապարհների անհայտ լինելու պատճառով։

Մեր այս ուսումնասիրության ընթացքում մենք մատնանշելու յենք այն կարևոր շրջաններն ու տեղերը, վորոնք հնագիտական տեսակետից շատ քիչ են ուսումնասիրված և արժանի յեն հնագետների հատուկ ուշադրությանը։

8. Պևտինգերյան քարտեզում նշանակված են բուն Հայաստանի հինգ մեծ ճանապարհները, վորոնց միավորման ու հանդիպման կետը յեղել է Արտաշատ քաղաքը։

Գլխավոր այդ հինգ ճանապարհներն են՝ 1. Արտաշատ-Սատաղ, 2. Արտաշատ-Տիգրանակերտ, 3. Արտաշատ-Սեբաստոպոլիս, 4. Արտաշատ-Համադան և 5. Արտաշատ-[Արմաստիկա]։

Այս ճանապարհներից հինգերորդը մանրամասն քննված է Մարկվարտի ընդարձակ աշխատության մեջ, վորը լույս եր տեսել Վիեննայում 1928 թվին (տես Skizzen zur historischen Topographie und Geschichte von Kaukasien. Das Itinerar von Artaxata nach Armastica auf der römischen Weltkarte, Wien 1928, տես նաև «Հանդէս Ամսօրեայ» 1927, № 11—12, եջ 826—866)։

Իսկ մեր այս ուսումնասիրության մեջ քննության են առնված միայն առաջին չորս ճանապարհները։

Վերոհիշյալ ճանապարհներից առաջինը և յերկրորդը, ինչպես և Պևտինգերյան քարտեզի Hariza կայարանը, մանրամասն հետազոտված են ու լուսաբանված նաև իմ նախորդ աշխատություններում (տես «Հայաստանի հին ճանապարհները Artaxata-Satala և Artaxata-Tigranocerta ըստ Պևտինգերյան քարտեզի»[1], Տեղեկագիր Գիտ. և Արվ. Ինստիտուտի № 5, Յերևան 1931, եջ 65—89, նաև «Մանր Հետազոտություններ», Յերևան 1932, եջ 3—21)։ Սակայն նույն ուսումնասիրությունները մենք վերահրատարակում ենք այժմ ավելի լրիվ ու ընդարձակ բովանդակությամբ, ավելացնելով մեր նոր դիտողությունները Barantea, Cymiza, Patansana, Vastauna և այլ կայարանների մասին, վորոնց անունները մեզ չեր հաջողվել լուսաբանել վերոհիշյալ աշխատություններում։

Նոր այս հավելումները հնարավորություն են տալիս, ինչպես կտեսնենք, Տիգրանակերտից Արտաշատ տանող ճանապարհը վորոշել հյուսիսային ուղղությամբ այժմյան Ներջիկի վրայով։ Մեր նախորդ քարտեզը (տես «Հայաստանի հին ճանապարհները», եջ 88 ա) կարոտ է, ուրեմն, սրբագրման։ Tigranocarten—Cymiza—Vastauna ճանապարհամասի ուղղությունը վորոշվում է այժմ ավելի հաստատուն կերպով, քան նախորդ քարտեզում։

9. Սույն ուսումնասիրության վերջում՝ հատուկ հավելվածում՝ մենք մանրամասն քննել ենք նաև արաբական ու հայկական աղբյուրների վկայությունները Դվին-Պարտավ ճանապարհի մասին։ Այս ճանապարհը, ինչպես հայտնի յե, առևտրական կարևոր դեր է կատարել, գլխավորապես, արա-

[1] Տես նաև ռուսերեն իմ աշխատությունը «О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времен», Эривань 1930, եջ 101—104 (§ 21. Главные пути Армении по Tabula Peutingeriana)։

բական տիրապետության ու Բագրատունյաց թագավորության շրջաններում։

Համառոտ ու թռուցիկ կերպով այս գծի ուղղությունը, ինչպես և մի քանի կայարանների տեղադրությունը, փորձել են լուսաբանել ռուս գիտնական Ն. Ա. Կարաուլովը (տես Сборник материалов для описания местностей и племен Кавказа, XXIX, 1901, էջ 33) և Մարկվարտը (Das Itinerar von Artaxata nach Armastica, էջ 55—56)։ Սակայն ներկա աշխատության մեջ, վորին հիմք են ծառայել վոչ միայն Իստախրիի, այլ և հայկական «Մղոնաչափք»-ի վկայությունները՝ նույն ճանապարհի ուղղությունը, ինչպես և կայարանների անուններն ու տեղադրությունը, վորոշված են ավելի հանգամանորեն և, ինձ թվում է, ավելի հիմնավոր կերպով, քան այդ արված էր նախկին աշխատություններում։

Մեր քննության յեզրակացությունները, վոր ստացվել են վերոհիշյալ աղբյուրների համեմատական ուսումնասիրությամբ, պետք է, իհարկե, ստուգվեն տեղում գիտական արշավախմբերի կողմից։

10. Ավելորդ չենք համարում բնորոշել ու բացատրել ի վերջո հռոմեական քարտեզի մի քանի կարևոր առանձնահատկությունները։

Tabula Peutingeriana-յում, վորը գունազգույն նկարված ու պատկերազարդ մի քարտեզ է, առանձնապես հետաքրքիր են ու ուշադրավ վորոշ կայարանների մոտ գտնվող զանազանակերպ նկարները, վորոնք ունեն, ըստ յերևույթին, հատուկ նշանակություն։ Հայաստանում հատկապես՝ մի շարք կայարանների մոտ նկարված են զույգ աշտարակներ։ Կ. Միլլերը և Յ. Մարկվարտը կարծում են, վոր զույգ աշտարակներ ունեցող կայարանները յեղել են քաղաքներ (տես Itineraria Romana, էջ XLIV) կամ զինվորական պահակատեղիներ (տես Das Itinerar von Artaxata nach Armastica, էջ 4)։

Թվերը, վոր դրված են կայարանների անուններից հե-

*տո, մատնացույց են անում տարածությունները մի կայարանից մյուս կայարան, սովորաբար, հռոմեական մղոններով* (milia passus=*1,4815 կիլոմետր), իսկ երբեմն նաև պարսկական պարասանգներով։*

Tabula-*յի մյուս մանրամասնությունները հասկանալի են առանց բացատրության։*

# ՊԵՎՏԻՆԳԵՐՅԱՆ ՔԱՐՏԵԶԻ ԳԼԽԱՎՈՐ ՃԱՆԱՊԱՐՀՆԵՐԸ ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

## 1. *ԱՐՏԱՇԱՏ—ԲԱԳԱՎԱՆ—ՍԱՏԱՂ*

*1. Արտաշատից Սատաղ տանող ճանապարհն ըստ Պևտինգերյան քարտեզի ունի հետևյալ կայարանները՝*

ARTAXATA 23 Paracata 33 Coloceia (*Ռավեննացու մոտ՝* Zotozeta) 24 Hariza 24 RAUGONIA (*Ռավեննացու մոտ՝* Raganna) 24 Colchion 24 CHADAS 17 Armanas 12 ANDAGA (*Ռավեննացու մոտ՝* Andacas) 26 Barantea 30 Adconfluentes 10 Datamisa 20 Tharsidarate 15 Autisparate 12 Calcidava (*Ռավեննացու մոտ՝* Chalchidara) 15 Sinara 22 Lucus Basaro 15 Aegea (*Ռավեննացու մոտ՝* Egea) 20 Darucinte 20 Salmalasso 20 SATALA [1].

*Մեծագիր տառերով են տպված մեր բնագրում այն կայարանների անունները, վորոնց մոտ Պևտինգերյան քարտեզում նկարված են զույգ աշտարակներ։ Կայարանների անունների մոտ դրված թվերը ցույց են տալիս տարածությունները մի կայարանից մյուս կայարան հռոմեական մղոններով (=1,4815 կիլոմետր)։ Ուրեմն՝ համաձայն այս քարտեզի ամբողջ տարածությունը Արտաշատից մինչև Սատաղ ցույց է տրված 406 հռոմեական մղոն կամ մոտավորապես 600 այժմյան կիլոմետր։*

*Ուշագրավ է, վոր հեռավորության այս թիվը համա-*

---

[1] *Տես* Itineraria Romana, *էջ 676—677.*

պատասխանում է մոտավորապես հայկական «Մղոնաչափք»-ի թվերին (տե՛ս «Խորենացու առեղծվածի լուծումը», Երևան 1934, էջ 85), որի մեջ ընդհանուր տարածությունը Դվինից մինչև Կարին ցույց է տրված կլոր թվով 200 արաբական մղոն (=մոտավորապես 384 կիլոմետր), իսկ Կարինից «ի փոսադուրս» (նախ քան Սատաղ)՝ 100 արաբական մղոն (=մոտավ. 191 կիլոմ.)։

2. Արտաշատից Սատաղ տանող ճանապարհի վրա Պևտինգերյա նքարտեզում հիշատակված են, ինչպես տեսնում ենք, 21 կայարան։

Այս կայարանների անուններից որոշ եյին սկզբում միայն յերկուսը՝ Արտաշատը և Սատաղը։

Satala հին քաղաքը, որ այժմյան Սատաղ գյուղն է, գտնվել է, ինչպես հայտնի յէ, Գայլ գետի մոտ (հունարեն՝ Լիկոս, այժմ՝ Կելկիդ) և հռոմեական շրջանում յեղել է մշտական կայան հռոմեական սահմանապահ զորքի։ Նրա տեղագրական ու հնագիտական նկարագրությունը, ինչպես և նրա պատմական անցյալին վերաբերվող մատենագրական կարևոր վկայությունները, մանրամասն տրված են Կյումոն յեղբայրների «Ուղևորութիւն հնախօսական հետազօտութեան ի Պոնտոս եւ ի Փոքր Հայս» աշխատության մեջ (տե՛ս «Պոնտական ուսումնասիրութիւնք», թարգմ. Հ. Տաշյանի, Վիեննա 1919, էջ 359—369)։

Ինչպես այս աշխատությունից, նույնպես և Ադոնցի «Армения в эпоху Юстиниана» ուսումնասիրությունից СПБ. 1905, էջ 75 ևն), պարզ յերևում է, որ Satala-ն կարևոր հանգույց է յեղել հին ճանապարհների և որ հենց այստեղից է ճյուղավորվել Բարձր Հայքից յեկող ճանապարհը դեպի Տրապիզոն, Մալաթիա և Նիկոպոլիս-Նեոկեսարիա ու Նիկոպոլիս-Սեբաստիա։ «Մղոնաչափք»-ի վկայություններից էլ դժվար չէ հետևցնել, որ արաբական շրջանում, անգամ իններորդ դարում, Դվինից Պոլիս տանող հին ճանապարհի ուղղությունը պետք է յենթադրել Երզրումի վրայով դեպի Սատաղ, այստեղից՝ Կողոնիա, Նեոկեսարիա,

Գանդրա և Անկյուրիա, և այդտեղից՝ Պոլիս (տես «Խորենացու առեղծվածի լուծումը», Յերևան 1934, եջ 85)։

Մոտավորապես հայտնի յե նույնպես Արտաշատ քաղաքի տեղը։

Ստրաբոնի և Մովսես Խորենացու վկայություններից (Str. XI, 14, 6 և Խոր. Պատմ. II, 49, եջ 176 ու Աշխարհաց., Վենետիկ 1881, եջ 34), վոր մեջ են բերված նախորդ իմ աշխատություններում (տես «О торговле и городах Армении», եջ 104 և «Խորենացու առեղծվածի լուծումը», եջ 53—54), կարելի յե յեզրակացնել, վոր Արտաշատ քաղաքը գտնվել ե Արաքս գետի ափին, հավանորեն, այժմյան Խոր Վիրապի շրջակայքում։

Բացի կենտրոնական այս վայրերից՝ մյուս 19 կայարանների անունները մնում եյին յերկար ժամանակ մութ ու անհայտ և համեմատաբար նոր ժամանակներում միայն Յ. Մարկվարտը և Վ. Բելքը, ինչպես կտեսնենք ներքև, կարողացել եյին վորոշել յերկու կայարանի թե անունները և թե տեղադրությունը՝ Raugonia (Ռավեննացու մոտ՝ Ragauna) = Բագավան և Paracata = Փառախոտ։ Իսկ Կ. Միլլերը և Ռ. Կիպերտը լուսաբանել եյին Adconfluentes, Sinara և Aegea կայարանների անունները։

Ներկա ուսումնասիրության մեջ մենք փորձել ենք պարզաբանել և վորոշել մնացած 16 կայարաններից ինը՝ վորոնցից յերկուսը (Coloceia և Hariza) գտնվում են Արտաշատ-Բագավան գծի վրա, իսկ մյուս յոթը (Chadas, Armanas, Andaga, Barantea, Calcidava, Lucus Basaro և Darucinte)՝ Բագավան-Սատաղ գծի վրա։ Այս կայարաններից հինգը լուսաբանված եյին արդեն վերոհիշյալ իմ աշխատություններում, իսկ չորսը (Chadas, Barantea. Lucus Basaro և Darucinte) առաջին անգամ քննվելու յեն ներքև ընդարձակ այս ուսումնասիրության մեջ։

Հասկանալի յե, իհարկե, վոր նոր այս տվյալների ոգնությամբ Արտաշատ-Սատաղ ճանապարհի ուղղությունը վո-

ըոշվում է ավելի ճշգրիտ ու ավելի հիմնավոր կերպով, քան այդ արված է նախկին աշխատություններում։

3. Սատաղից Արտաշատ և Տիգրանակերտից Արտաշատ տանող ճանապարհները հանդիպում էին իրար ըստ Պևտինգերյան քարտեզի Raugonia (Ռավեննացու մոտ՝ Ragauna) հանգուցային կետում և այստեղից գնում էին Արտաշատ միևնույն կայարաններով՝ Hariza 24 Coloceia (Ռավեննացու մոտ՝ Zotozeta) 33 Paracata 23 Artaxata: Ուրեմն՝ այդ յերկու ճանապարհների ուղղությունը վորոշելու համար անհրաժեշտ էր, նախ և առաջ, պարզել Rangonia կամ Ragauna կայարանի տեղը։

Կոնրադ Միլլերը վերոհիշյալ Itineraria Romana աշխատության մեջ և բացատրական հատուկ իր քարտեզում Raugonia (կամ Ragauna) կայարանի տեղը յենթադրում է այժմյան Սուլուկ-սու գետի ափին, վոր գտնվում է Վանա լճի ու Բերկրիի հյուսիս-արևելյան կողմում։ Իսկ ճանապարհը Արտաշատից Սատաղ նա վորոշում է հետևյալ ուղղությամբ՝

Artaxata—Արտաշատ, Paracata—Բուրոլանի մոտ, Coloceia-Koischet Մայայի մոտ, Hariza—Արաբդիզե Քիլիսաքենդի մոտ, Raugonia—Բայազիդաղա Սուլուկսու գետի մոտ, Colchion—Արնիս, Chadas—Աղսրաֆ (Միլլերի մոտ՝ Aschraf), Armanas—Առին, Andaga—Աղիլջեվազ, Barantea—Խլաթի ավերակները, Adconfluentes—Ցոնջալու, Datamisa-Chamschudschur Խամուր լեռան մոտ, Tharsidarate—Աղվերան, Autisparate—Ավերքաղաքի ավերակները Կյուլլուի մոտ, Calcidava—Arablarmezar-ի ավերակները կամ Կարաքիլիսա, Sinara—Սընկառիճ Երզրումի մոտ, Lucus Basaro—Karabey-ի ավերակները, Aegea—Աշկալա, Darucinte—Շողանու մոտ, Salmalasso—Կարակուլաք (Միլլերի մոտ՝ Karatulak), Satala—Սատաղ[1]։

[1] Տես Itineraria Romana, էջ 676—677 և բացատրական քարտեզ 214, էջ 651։

*Ռ. Կիպերտը Փոքր Ասիայի իր ընդարձակ քարտեզում*[1] (*տես* Atlas von Kleinasien in 24 Blättern, 1902—1906) Raugonia *կամ* Ragauna *կայարանը, վորտեղ միանում եյին Սատաղից և Տիգրանակերտից Արտաշատ տանող ճանապարհները, յենթադրում է այժմյան Պարնաուտում, վորը գտնվում է Արաքսից հարավ՝ Կաղզվանի և Կողբի միջև։ Արտաշատից Սատաղ տանող գիծը, նրա կարծիքով, ունեցել է հետևյալ կայարանները՝*

Artaxata—*Արտաշատ*, Paracata—*Բուլաղ-Բաշ*, Coloceia—*Քյուլլյուկ*, Hariza—*Կողբի մոտ*, Raugonia—*Պարնաուտի մոտ*, Colchion—*Կաղզվան*, Chadas—*Ոլուխլուի մոտ*, Armanas—*Ել-Քեչմաղ*, Andaga—*Սարիղամիշ*, Barantea—*Կարաուրգանի մոտ*, Adconfluentes—*Քեոփրիքեոյ*, Datamisa-Aspendji, Tharsidarate-Unu, Autisparate—*Կան Երզրումի մոտ*, Calcidava—*Իլիջա*, Sinara—*Ալաջա*, Lucus Basaro—*Աշկալա*, Aegea—*Լիճ*, Darucinte—*Բագառիճ*, Salmalasso—*Լորիլար*, Satala—*Սատաղ։*

*4. Կ. Միլլերի և Ռ. Կիպերտի յենթադրությունները* Raugonia *կայարանի տեղի և վերոհիշյալ ճանապարհների ուղղության նկատմամբ պարզորեն սխալ են։ Հ. Մարկվարտը ցույց է տվել արդեն և շատ ուղիղ, վոր* Raugonia *կամ* Ragauna, *ինչպես և* Σαγαυα'να-*ն Պտոլեմեոսի մոտ* (V, *12, 7*), *համապատասխանում են Հին Հայաստանի «Բագաւան»-ին Բագրևանդ գավառում*[2]*։*

Raugonia—Ragauna-*ն Մարկվարտն ուղղում է* *Bagauna *և համարում է* R *տառը* B-*ի փոխարեն պարզապես գրչի սխալ։ Նմանապես և Պտոլեմեոսի մոտ Բագավան անվան*

---

[1] *Այս քարտեզից մենք չենք կարողացել օգտվել և ներքևում առաջ բերված տեղեկությունները քաղել ենք* Itineraria Romana *աշխատությունից, տես եջ 676—677։*

[2] *Տես* Prof Dr. J. Marquart, Die Entstehung und Wiederherstellung der armenischen Nation, Berlin 1919, *եջ 69 ծանոթ., համեմատ նաև նույն հեղինակի՝* Südarmenien und die Tigrisquellen, Wien 1930, *եջ 13**։

սխալ ընթերցվածը ծագել է, անշուշտ, հունարեն Σ և B տառերի շփոթման պատճառով։

Այս պարզ ու անվիճելի բացատրությունից հետո՝ Տիգրանակերտ—Արտաշատ և Սատաղ—Արտաշատ ճանապարհների միացման կետը վորոշվում է, ուրեմն, վոչ թե Պարնաուտում կամ Սուսուկսու գետի մոտ, ինչպես յենթադրել են Կ. Միլլերը և Ռ. Կիպերտը, այլ Հին Հայաստանի Բագրևանդ գավառում, Դիադինի հյուսիս-արևմտյան կողմը, ուր այժմ գտնվում է Ուչ-քիլիսե գյուղը։

Bagauna=Բագավան հանգուցային կայարանի անվան ու տեղի այս ճշտումը, բնականաբար, յելակետ է ծառայում ու հնարավորություն է տալիս վորոշելու ճանապարհների ուղղությունը Բագավանից Արտաշատ, Բագավանից Տիգրանակերտ և Բագավանից Սատաղ։

5. Բագավանից Արտաշատ տանող գծի վրա Պևտինգերյան քարտեզում, ինչպես տեսանք, նշանակված են հետևյալ կայարանները՝ RAUGONIA 24 Hariza 24 Coloceia 33 Paracata 23 և ARTAXATA (ընդհանուր տարածությունը հավասար է 104 հռոմեական մղոն կամ 154 կիլոմետր)։

Բացի Բագավանից մատնանշված կայարաններից մեկի անունը նա հաջող կերպով լուսաբանել է Վ. Բելքը (տես Beiträge zur alten Geographie und Geschichte Vorderasiens, II, Leipzig 1901, եջ 83—92)։ Նրա կարծիքով՝ Պևտինգերյան քարտեզի Paracata-ն համապատասխանում է հայկական Փառախոտին, վորը, ինչպես հայտնի յե, հիշատակված է Մովսես Խորենացու և Անանունի պատմություններում[1]։ Վ. Բելքը, վոր հատուկ հետազոտություններ է կատարել Դաշբուռուն գյուղի շրջակայքում, հանգել է այն յեզրակացության, վոր հին Փառախոտը պետք է յենթադրել այն ավերակների տեղում, վորոնք այժմ անվանվում են Բուլաղ-

[1] Տես «Մովսեսի Խորենացւոյ, Պատմութիւն Հայոց», Տփղիս 1913, եջ 40 (I, 12), նաև «Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն», Ս.-Պետերբուրգ 1879, եջ 7 (Դպրութ. Ա)։

*Բաշ և գտնվում են Դաշբուռուն գյուղից 5 կիլոմետր հեռավորության վրա՝ դեպի հարավ-արևելք։*

Paracata=*Փառախոտի տեղադրության հաստատումն այժմյան Բուլաղ-Բաշում, ինձ թվում ե, հնարավորություն ե տալիս վորոշելու նաև* Coloceia *(Ռավեննացու մոտ՝* Zotozeta*) կայարանի տեղը։*

*Այս կայարանի հեռավորությունը* Paracata—*Փառախոտից ցույց ե տրված 33 հռոմեական մղոն (=49 կիլոմետր)։ Խիստ աղճատված են սակայն թե այս թե մյուս կայարաններից մեծագույն մասի անունները։*

Coloceia—Zotozeta *անվան ստույգ ընթերցումը պետք ե լինի, իմ կարծիքով,* Zolocerta՝ Colo *կամ* Zoto=*Zolo *և* ceia *կամ* zeta=*certa։ *Այս ուղղումից հետո՝* *Zolocerta-*ն համապատասխան կլինի հին Հայաստանի Ձողկերտին, վորը Խորենացու մոտ անվանված ե Ցոլակերտ։ Հավանական կարելի յե համարել նույնպես, վոր Պտոլեմեոսի հիշատակած* Σοτοχαρα-*ն, վորի տեղը ցույց ե տրված նրա մոտ Արտաշատից դեպի հարավ-արևմուտք (77° 15′ յերկ. և 42° 20′ լայն., տես* «Südarmenien und die Tigrisquellen», Wien 1930, *եջ 12*), համապատասխան պիտի լինի հենց այս* *Zolocerta—*Ձողկերտին։*

*5. Հիմնվելով Ալիշանի ցուցմունքների վրա («Այրարատ», Վենետիկ 1890, եջ 123—124)՝ իմ «Հայաստանի հին ճանապարհները» աշխատության մեջ (Տեղեկագիր Գիտ. և Արվ. Ինստիտուտի, № 5) Ձողկերտ—Ցոլակերտի տեղը յես վորոշել եյի Սուրմալի գյուղից դեպի հարավ-արևելք՝ այժմյան Կարակալեյի ավերակների վայրում։ Սակայն այդ յենթադրությունը, ինչպես մանրամասն բացատրել եմ իմ «Մանր Հետազոտություններ»-ում (Յերևան 1932), ճիշտ չե։*

*Ինստիտուտի № 5 Տեղեկագիրը լույս տեսնելուց հետո՝ մեր հայտնի գյուղատնտես Ստեփան Կամսարականը, վորը մոտ ծանոթ ե ճանապարհների տեղադրությանը Գայլատու ծովակի արևելյան կողմում, մատնացույց եր արել ինձ, վոր Արտաշատ-Բագավան գծի ուղղությունը Կարակալեյի վրայով վիճելի յե ու անհավանական։*

Ստեփան Կամսարականի առարկություններն ու Նոր դիտողությունները հիշյալ գծի ուղղության մասին թվում են ինձ հիմնավոր։

Նրա կարծիքով՝ դժվար է այս գծի ուղղությունը յեն-թադրել Կարակալեյի վրայով, վորովհետև ճանապարհը Բու-լաղ-Բաշիից Կարակալե անհարմար է ու ճահճային և, բացի այդ, ճանապարհն այս ուղղությամբ շեղվում է չափազանց դեպի հյուսիս-արևմուտք, ուստի և անհավանական է իր այդ վոլորապտույտ հեռավորության պատճառով։

Հիմք ընդունելով իր այս դիտողությունները, ինչպես և այժմյան մյուս ճանապարհների տեղադրությունը, Կամ-սարականը տրամադիր է կարծելու, վոր Պեվտինգերյան քարտեզի հին ճանապարհի ուղղությունը կարելի յե յեն-թադրել այժմյան Կարվանսարայի վրայով և Կարվանսա-րայի կամ Կուջաղի լեռնանցքով (=7245 վոտնաչափ, տես Ռուսական հին շտաբի տասը վերստանոց քարտեզը, թերթ 99), վորն ամենահարմար ու դյուրամատչելի լեռնանցքն է Գայ-լատու ծովակի արևելյան կողմերում և անցանելի յե նաև ձմեռվա ամիսների ընթացքում։

Մյուս յերկու լեռնանցքները, վորոնցից մեկը (Աբաս-գյոլի լեռնանցքը) գտնվում է Գայլատու ծովակի արևելյան ափերի մոտ, իսկ մյուսը (Ասլանլուի լեռնանցքը) սրանից մի փոքր դեպի արևելք՝ անհամեմատ ավելի բարձր են ու անհարմար և անանցանելի յեն ձմեռվա ամիսների ընթաց-քում։

Ուշագրավ է նաև այն, վոր այժմյան Կարավանսարայի մոտ կան այժմ յերկու հին ավերակներ, վորոնցից մեկը Կամսարականը համարում է յերթևեկող կարավանների հին իջևան։ Կուջաղի լեռնանցքի մոտ ևս պահպանվել են մեծ բերդերի ավերակներ։

Կամսարականի մատնանշած իջևանի ավերակներն այն քարվանսարայի ավերակներն են, անշուշտ, վոր լուսանկա-րել ու հրատարակել է Христианский Восток-ի յերրորդ հատորում Աշխարհբեկ Քալանթարը (т. III, вып. I, Пет-

роград 1914 г.)։ Միջնադարյան այս քարվանսարայը, վոր գտնվում է բաց և լայն դաշտում՝ Ջորից 15—20 վերստ դեպի հյուսիս-արևմուտք, Աշխ. Քալանթարի կարծիքով, կառուցված պիտի լինի 13-րդ դարից վոչ ուշ։ Աշխարհբեգի գտած միակ արձանագրության մեջ հիշատակված է, վոր քարվանսարայը կառուցել է Աշոտը։

6. Կամսարականի վերոհիշյալ ցուցումներին ծանոթանալուց հետո՝ Ալիշանի յենթադրությունը Զողկերտ-Ցոլակերտի տեղադրության մասին պետք է համարել ըստ իս միանգամայն անհաջող։

Յեթե ընդունելու լինենք Արտաշատ-Բագավան գծի ուղղությունը Կուջաղի լեռնանցքի վրայով՝ այդ դեպքում, բնականաբար, կասկածելի կըլինի այդ գծի շեղումը դեպի Կարակալե։

Իսկ վոր հռոմեական շրջանի հին այս ճանապարհն անցել է, իրոք, հենց այս հարմար լեռնանցքով՝ այդ հաստատվում է, ինչպես ցույց ենք տվել մեր «Մանր Հետազոտություններում» (եջ 6—7), Hariza կայարանի տեղադրությամբ, վորը հաջողվել եր ինձ գտնել ռուսական հին շտաբի տասը վերստանոց քարտեզի վրա։

Ընդարձակ այս քարտեզի վրա Կարավանսարայի կամ Կուջաղի լեռնանցքի հարավում (տասը վերստանոց քարտեզի վրա լեռնանցքն անվանված է՝ Каравансарайский перевал, իսկ Լինչի քարտեզում՝ Куджахский перевал)՝ Միսուն գյուղից մի քանի կիլոմետր դեպի արևմուտք՝ նշանակված է Բալըխ-Չայ գետի ափին Арудж գյուղը։ Հենց նույն այս Արուճ գյուղը հիշատակված է, իմ կարծիքով, Ղևոնդի պատմության վկայություններից մեկում, վորի մեջ առանձապես ուշագրավ է նաև այն, վոր Դվին-Բագավան հին ճանապարհն անվանված է «պողոտայն արքունի»

Նկարագրելով 774 թվի նախարարական ապստամբությունը և արաբական հարկահավաքների սպանությունը Կումայրիում և Բագրևանդում, Ղևոնդը շարունակում է՝

«Եւ իբրև այս լուր աղէտի հասանէր ի քաղաքն

Դուխն առ զօրավարն Իսմայելի Մահմետ՝ յամենայն կողմանց տագնապ մեծ յառնէր ի վերայ նորա. և գումարեալ զզօրս քաղաքին Դունայ՝ տայր ի ձեռս զօրագլխի միում, որում անուն էր Ապումճրիպ, ելանել ի խնդիր վրիժու արեան սպանելոցն։ Եւ առեալ զօրավարին այնմիկ զընտիրսն հեծելոց իբրև արս Տ՝ ուղ եղեալ ընդ պողոտայն արքունի՝ հասանէր ի գաւառն Բագրևանդ ի գիւղն Բագաւանս։ Անդ ի վերայ հասանէր նոցա Մուշեղ և ընդ նմա արք իբրև Մ. և մարտուցեալք ընդ միմեանս՝ օգնութիւն ի տեառնէ վաղվաղակի հասանէր ի թիկունս գնդին Մուշեղայ. և բազում հարուածս հարեալ սատակէին ի զօրացն Իսմայելի, և զմնացեալսն ի փախուստ դարձուցեալ՝ հետամուտ լինէին մինչև յաւանն Արուճ, և զբաղումս ճռաքաղ առնէին, մինչև զնոյն ինքն զզօրագլուխն հարեալ սատակէին։ Եւ մեծաւ յաղթութեամբ դարձեալ ի հետոց նոցա՝ լնուին բազում աւարաւ յաւարէ թշնամեացն» (տես «Պատմութիւն Ղևոնդեայ մեծի վարդապետի Հայոց», Ս.-Պետերբ. 1889, գլ. ԼԴ, էջ 140—141)։

Այս Արուճը, անշուշտ, վոչ թե Արագածոտն, այլ Կոգովիտ գավառի Արուճն է, վորը գտնվել է Դվին-Բագավան «արքունի պողոտայ»-ի մոտ։ Միանգամայն անհավանական կըլինի ըստ իս յենթադրել, վոր Մուշեղ Մամիկոնյանը, հալածելով փախստականներին, կարող եր հասած լինել մինչև մյուս Արուճ, վորը գտնվում եր վերոհիշյալ ճանապարհից հեռու՝ Արաքս գետի հյուսիսային կողմերում։

Արուճ գյուղի հին անունը յեղել է, ըստ յերևույթին, ինչպես կարելի յե հետևցնել Պեվտինգերյան քարտեզի համապատասխան Hariza անունից, Հառիճ։

Այդ յերկու անունների նույնացումը հաստատվում է նրանով, վոր Hariza կայարանի հեռավորությունը Բագավանից ցույց է տրված Պևտինգերյան քարտեզում 24 հռոմեական մղոն կամ մոտ 36 կիլոմետր։ Յեվ ուշագրավ է, վոր հենց այս տարածության վրա յե գտնվում այժմյան Ուչքի-

լիսե-Բագավանից և «արքունի պողոտայի» մոտ վերոհիշյալ Արուճը։

Ուրեմն՝ Hariza կայարանը ոչ միայն ըստ իր անվան, այլ նաև ըստ այդ տարածության՝ ճշտիվ համապատասխանում է *Հառիճ—Արուճին։

7. Hariza-յի անվան և տեղի այս լուսաբանությունը կարևոր մի կռվան է նաև Coloceia (=*Zolocerta) կայարանի տեղադրության վորոշման համար։

Պետինգերյան քարտեզից հայտնի յե, վոր Բագավանից Արտաշատ տանող ճանապարհի վրա Coloceia կայարանը գտնվել է Hariza-յից 24 հռոմեական մղոն կամ մոտ 36 կիլոմետր հեռավորության վրա։ Արդ՝ ռուսական հին շտաբի տասը վերստանոց քարտեզի վրա Արուճը գտնվում է Կարվանսարայի կամ Կուջաղի լեռնանցքից մոտ 10 կիլոմետր դեպի հարավ։ Պարզ, է, ուրեմն, վոր Պեյտինգերյան քարտեզում մատնանշված տարածության համաձայն Coloceia կայարանի կամ հին Զոլկերտ-Ցոլակերտի տեղը յենթադրվելու յե Կարվանսարայի կամ Կուջաղի լեռնանցքից մոտ 26 կիլոմետր դեպի հյուսիս։

Դժվար չէ նաև յեզրակացնել, վոր ըստ այդ հեռավորության Coloceia—*Zolocerta-յի տեղը պետք է յենթադրել ոչ թե այժմյան Կարակալեյի ավերակների վայրում, այլ Կարվանսարայի կամ Կուջաղի լեռնանցքից Ն. Չարուխչի կամ Խոշ-Խաբար իջնող ճանապարհների վրա (տես Ռուսական հին շտաբի տասը վերստանոց քարտեզի վրա՝ Н. Чарухчи և Хош-Хабар)։

Վոր այս հետևությունը ևս հիմնավոր է ու հավանական՝ այդ, ինչպես կտեսնենք, յերևում է նաև Խորենացու կարևոր մի վկայությունից Ցոլակերտի մասին։

8. Զոլկերտ-Ցոլակերտի և Coloceia-Zotozeta-յի նույնացումը, ինչպես այդ կայարանի տեղադրությունը, աշխարհագրական այնքան կարևոր խնդիրներ են, վոր ավելորդ չեմ համարում մանրամասն մեջ բերել այստեղ Խորենացու և Եղիշեյի վկայությունները Ցոլակերտի և Զոլկերտի մասին։

*Խորենացին, հիշելով Ամասիայի որդիներին՝ Փառոխին և Ցոլակին՝ մեջ է բերում Փառախոտի ու Ցոլակերտի մասին հետևյալ ավանդությունը՝*

*«Ամասիա բնակիալ յԱրմաւիր՝ յետ ամաց ծնանի զԳեղամ, և յետ Գեղամայ զՓառոխ արի և զՑոլակ։ Եւ յետ ծնանելոյ զսոսա՝ անցանէ զգետովն մերձ ի լեառնն հարաւոյ, և շինէ անդ առ խորշիւք լեռնոտինն մեծապէս ծախիւք երկուս տունս, զմին յարևելս կոյս, մօտ յակունս աղբերցն, որ առ ստորոտով լերինն ելանեն. իսկ զմիւսն յարևմուտս կոյս նորին տանն, բացագոյն իբր մեծօր հասարակ աւուր միոյ հետևակագնացի առն ճանապարհի։ Եւ ետ զնոսա ի ժառանգութիւն երկուց որդւոց իւրոց, արւոյն Փառոխի և կայտառին Ցոլակայ. յորս բնակեալ՝ յիւրեանց անուն զտեղիսն կոչեցին, ի Փառոխայ՝ Փառախոտ, և ի Ցոլակայ՝ Ցոլակերտ։ Բայց զլեառնն Ամասիա անուանէ իւրով անուամբ Մասիս. և ինքն դարձեալ յԱրմաւիր՝ եկաց ամս սակաւս, և մեռանի» (տես «Մովսեսի Խորենացւոյ, Պատմութիւն Հայոց», Տփղիս 1913, I, ԺԲ, եջ 40)։*

*Իսկ Եղիշեն հիշում է Ջողկերտը, թվելով այն տեղերը, վոր ավերել էր Վասակ Սյունին.*

*«և աւերեալ բազում տեղիս Հայոց աշխարհին, մանաւանդ զձմերոցս արքունի, որ կայեանք զօրացն էին, զԴառնին և զԵրամօնս և զԴրսհանակերտն՝ զմեծ դաստակերտն, զՎարդանաշատն և զամուրն Օշական, զՓառախոտն, զԱրգեանսն, զՋողկերտն աւան և զբերդն Արմաւիր, զԿուաշն աւան, զԱրուճն, զԱշնակն և զամենայն ոստն Արագածու, և զնահանգն Արտաշատու և զԱրտաշատն ինքնին գլխովին, և զամենայն գեօղս և զաւանս, որ շուրջ զնովաւ էին, առեալ աւերեալ և հրձիգ արարեալ» («Եղիշէի վարդապետի, Վասն Վարդանաց և Հայոց պատերազմին», Վենետիկ 1864, եջ 135)։*

*9. Ի նկատի ունենալով, վոր Եղիշեի պատմության Մոսկվայի տպագրությունը, վոր հրատարակված է ըստ*

«Անձևացեաց» օրինակի, Զողկերտի փոխարեն ունի Ցոլակերտ (տե՛ս «Եղիշէի պատմութիւն Վարդանանց ըստ Անձևացեաց օրինակի», հրատ. Խ. Հովհաննիսյանցի, Մոսկվա 1892, էջ 72), նաև ուշադրության առնելով, որ Զողկերտը, ինչպես և Ցոլակերտը, գտնվել են հին կենտրոնավայր Արմավիրի շրջանում՝ կարելի չէ, անշուշտ, չեզրակացնել, որ Զողկերտը և Ցոլակերտը միևնույն ավանի անուններ են։ Այս ուղիղ հետևությունն արել են Հյուբշմանը և Բելքը (տե՛ս Հ. Հյուբշման, «Հին Հայոց տեղւոյ անունները», թարգմ. Բ. Պիլէզիկճեանի, Վիեննա 1907, էջ 373, 418 և Belck, Beiträge, II, էջ 86)։

Հիմնվելով վերոհիշյալ վկայությունների վրա՝ անհավանական չի լինի նաև ենթադրել, որ վերոհիշյալ ավանի իսկական անունը պետք է եղած լինի Զողկերտ կամ *Զողակերտ, իսկ Խորենացու Ցոլակերան արդյունք է, հավանորեն, նրա ստուգաբանական մեկնության՝ Զողկերտ=Ցոլակի կերտ=Ցոլակերտ։

Խորենացու վերև առաջ բերված վկայությունն առանձնապես կարևոր է, որովհետև այդ վկայության մեջ մատնանշված է Ցոլակերտի հեռավորությունը Փառախոտից՝ «իբր մեծօր հասարակ աւուր միոյ հետևակագնացի առն ճանապարհի»։

Խորենացու այս նախադասությունը Մ. Եմինը թարգմանել է՝ «на расстоянии полудневной ходьбы мужа пешехода» (տե՛ս «История Армении Моисея Хоренского», Москва 1893, էջ 21), իսկ Խորեն Ստեփանեն՝ «հետևակ մարդի մեկ օրվան ճանապարհի չափ հեռու» (տե՛ս նրա աշխարհաբար թարգմանությունը, Ս. Պետերբ. 1889, էջ 36)[1]։

---

[1] Հատուկ ծանոթության մեջ (էջ 39) Ստեփանեն Վենետիկի տպագրության բնագիրը՝ «բացագոյն իբր մեծօր հասարակօրոյ միոյ հետևակագնացի առն ճանապարհի» համարում է աղավաղված։ Ինքը թարգմանել է Ներսես Լամբրոնացու օրինակից, որի բնագիրը տարբեր է՝ «իբր մեծ հասարակ աւուր միոյ հետևակագնացի առն ճանապարհորդի»։

Վ. Բելքը, որ Խորենացու այս հատվածը հասկացել է համապատասխան Եմինի թարգմանության՝ Ցոլակերտի տեղը որոշել է Դաշբուռուն գյուղից մոտ 7 կիլոմետր դեպի հարավ-արևմուտք և Բուլաղ-Բաշից (=Փառախոտ) 12—14 կիլոմետր դեպի արևմուտք (տե՛ս Beiträge, II, էջ 87 և 91)։ Բելքի այս եզրակացությունը մեջ է բերված նաև Հյուբշմանի «Հին Հայոց տեղւոյ անունները» աշխատության մեջ (տե՛ս թրգմ. Պիլեղիկճյանի, Վիեննա 1907, էջ 418)։

Իմ կարծիքով, վերոհիշյալ թարգմանությունները, ինչպես և Բելքի ենթադրությունը, ճիշտ չեն։

Պետինգերյան քարտեզի Hariza կայարանի տեղադրության վերոհիշյալ որոշումը, ինչպես և նույն քարտեզում մատնանշված հեռավորությունը Փառախոտից (=Paracata) Ցոլակերտ (=Coloceia), որոշակի ցույց են տալիս, որ Խորենացու վկայությունը կարելի է և պետք է մեկնել այլ կերպ։ «Իբր մեծոր հասարակ աւուր միոյ հետևակագնացի առն ճանապարհի» նշանակում է պարզապես՝ «իբր մեծոր [եւ] հասարակ աւուր միոյ հետևակագնացի առն ճանապարհի», այսինքն՝ «հետևակ մարդու մեկ մեծ օրվա և կես օրվա ճանապարհի չափ»։

Խորենացու վկայության այս նոր լուսաբանությամբ, ինչպես տեսնում ենք, հաստատվում է Պետինգերյան քարտեզում մատնանշված հեռավորությունը, իսկ քարտեզի հեռավորությունը (33 հռոմեական մղոն կամ մոտ 49 կիլոմետր) կռվան է ծառայում իր հերթին Խորենացու վկայության ճշտության։

Պարզվում է, ուրեմն, որ Զողկերտ-Ցոլակերտը գտնվել է, իրոք, Փառախոտից մոտ 49 կիլոմետր հեռավորության վրա՝ ո՛չ շատ հեռու Կարվանսարայի այժմյան ավերակների վայրից։

10. Այս եզրակացության դեմ կարող են սակայն լինել առարկություններ[1]։

---

[1] Ա. Խաչատրյանը Կուլտուրայի Պատմության Ինստիտուտում Հայաստանի առևտրական ու ռազմական ճանապարհների մասին կարդացած

Ինչպես վերև տեսանք, Խորենացու նույն վկայության մեջ ոչ միայն մատնանշված է Ցոլակերտի հեռավորությունը Փառախոտից, այլև նրա տեղադրությունը «մերձ ի լեառն հարաւոյ... առ խորշիւք լեռնոտինն»։

Հիմնվելով հենց այս վերջին վկայության վրա՝ Ցոլակերտի տեղը որոշել են Բելքը և Հյուբշմանը Մեծ Մասիսի «հյուսիսային զառիթափին վրա»։

Արդ ճի՞շտ է արդյոք, որ Խորենացու մոտ Մասիսը, որին անվանված է «լեառն հարաւոյ», պետք է լինի անպայման Մեծ Մասիսը, ինչպես սովորաբար ենթադրում են։

Ինձ թվում է, որ տիրող ու ընդհանրացած այս կարծիքը ոչ միայն վիճելի է, այլ և անհավանական։ Ինչպես դժվար չէ հետևցնել համապատասխան վկայություններից, Խորենացին և հայ մատենագիրները «Մասիս» են անվանել ոչ միայն Մեծ Մասիս»-ը, այլև երբեմն նաև Աղրի-դաղ լեռնաշղթայի մի մասը։

Ի նկատի ունենալով այս խնդրի կարևորությունը՝ մեջ ենք բերում մատենագրական բոլոր ուշագրավ վկայությունները՝

1. Ագաթանգեղոս, Տփղիս 1909, ճՁ, էջ 398՝

   «Եւ եկն Թագաւորն [Տրդատ], խնդրեաց հրաժեշտ ի սրբոյն Գրիգորէ եօթնօրեայ ճանապարհ կալեալ ի վեր ի բարձր լեառն ի Մասիս»։

2. Սեբեոս (Անանուն), Ս.-Պետերբ., 1879, I, էջ 6—7՝

   «Ի Դամասկոսէ ասեն գնացեալ զՄարսեակն զընդոծինն Աբրահամու փախստական լեալ յԻսահակայ, և

---

իր զեկուցման մեջ փորձում էր, ի միջի այլոց, հիմնավորել իր հետևյալ թեզիսը՝ «Արտաշատ-Բագավան գծի վրա ընկ. Մանանդյանի՝ Ցոլակերտի զետեղումը նախ Կարակալայում և ապա Խոշ-Խոբաքի մոտ՝ բոլորովին հակասում է Ցոլակերտի համար Խորենացու նշանակած տեղին, ուստի և չի կարող ընդունվել»։ Վոր Խորենացու վկայության նրա ավանդական հին մեկնությունը հաստատուն ու հիմնավոր չէ՝ այդ կըտեսնենք մենք ներքև։

*եկեալ բնակեցաւ առ ոտամբ երկուց լերանցն որ հային հանդէպ մեծի դաշտին Արայի, յԱրագած կատար և ի Գեղ լեառն։ Եւ անուանէ զլերինս յանուն իւր. որում Ազատն կոչեն լեառն».*

3. *Խորենացի, Տփղիս 1913,* I, *ԼԱ, էջ 84՝*

*«Եւ արդ՝ ոչ արդեօք առաւել աստանօր զարմասցիս ի վերայ մերոյ ճշմարտապատմութեանս, թէ որպէս յայտնեցաք զանհայտ իրս վիշապաց, որք են յԱզատն ի վեր ի Մասիս».*

4. *Նոյնը,* II, *ԽԸ, էջ 175՝*

*«Ցայնժամ Սմբատայ զծառայսն Երուազայ, զոր գերեացն ի Բագարանէ, տարեալ բնակեցուցանէ ի թիկանց Մասեաց, ի նոյն անուն Բագարան կոչելով զձեռակերտն».*

5. *Նոյնը,* II, *ԽԹ, էջ 176՝*

*«Եւ իբր տրփանք Սաթինկան ընդ Վիշապազունսն՝ առասպելաբար, այս ինքն ընդ զարմս Աժդահակայ, որ ունին զամենայն առ ստորոտովն Մասեաց».*

6. *Նոյնը,* II, *ԾԲ, էջ 182՝*

*«Եւ հրամայեալ Արտաշիսի բնակեցուցանել զնոսա ի հարաւոյ յարեւելից կուսէ Մասեաց, որ կոչէր Շաւարշական գաւառ, ի վերայ պահելով զընիկ անունն Արտազ».*

7. *Նոյնը,* II, *ԿԱ, էջ 192՝*

*«Վասն որոյ անիծեալ զնա Արտաշիսի՝ ասաց այսպէս. «Եթե դու յորս յեծցիս յԱզատն ի վեր ի Մասիս. զքեզ կալցին քաջք, տարցին յԱզատն ի վեր ի Մասիս. անդ կայցես, և զլոյս մի տեսցես».*

8. *Նոյնը,* III, *ԻԳ, էջ 283՝*

*«Ապա ելանէ արքայ զթիկամբք Մասեաց առնել որսս յիւրում սիրեցեալ գաւառին ի Կոգայովտի».*

9. *Նոյնը,* III *ԻԷ, էջ 288՝*

*«Ի թիկանց կուսէ լերինն Մասեաց շինեաց [Արշակ] ձեռակերտ [Արշակաւան]».*

10. Նույնը, I, Լ, էջ 83՝

«բնակեցուցանէ [զԱնոյշ] յարեւելեայ ուսոյ մեծի լերինն մինչև ի սահմանս Գողթանն»։

11. Նույնը, I, ԺԲ, էջ 39՝

«այլ հարաւայինն արեգակնաճեմ լեառն, սպիտակափառ ունելով գագաթն, ուղղորդ յերկրէ բուսեալ... ծեր ումն արդարև լեառն ի մէջ երիտասարդացեալ լերանցն»։

12. «Աշխարհացոյց Մովսեսի Խորենացւոյ», հրատ. Սուքրյանի, Վենետիկ 1881, էջ 32՝

«զԴառնի մինչև ցգաւառն Կոգովիտ՝ որ յոտինն Ազատ Մասեացն»։

13. Նույնը, էջ 34՝

«զինքն իսկ լեռնագագաթ Մասիս ի հարաւ թողու Երասխ. յորոյ թիկանց տարածեալ Կոգովիտ գաւառ»։

14. Թովմա Արծրունի, Ս. Պետերբ. 1887, I, Ը, էջ 52՝

«Ընդդէմ նայեցածն ունելով զմեծ լեառնն Մասիք կոչելով բարձրագագաթն ձիւնալիր սպիտակափառ, իբր զթագաւոր մեծավայելուչ պատուական ալեօք զուարճացեալ ի մէջ հոյս նախարարութեանց»։

15. Նույնը, III, ԻԹ, էջ 254՝

«Ընդդէմ նայելով լերանցն Այրարատեան Ազատն Մասեաց, ուր Արտաւազդն Արտաշէսեան քարավիժեալ խոհանայր ի կոշտն կոհակինն»։

Այս վկայություններից հինգը (1, 10, 11, 13 և 14), վորոնց մեջ Մասիսն անվանված է «բարձր», «մեծ», «բարձրագագաթ», «լեռնագագաթ», «ծեր»՝ վերաբերվում են, անշուշտ, Մեծ Մասիսին։ Երկու (5 և 6) վկայություններից կարելի յե հետեցնել, վոր Մասիսն այդ վկայություններում կարող է դարձյալ լինել Մեծ Մասիսը։ Սակայն մյուս վկայությունները պարզ չեն և կարոտ են հատուկ քննության։

Բացատրության կարոտ է հատկապես՝ թե ինչպես պետք է հասկանալ Մասիսի Ազատ անունը։

Խորենացու պատմության թարգմանիչներն «Ազատ»-ը

թարգմանել են «ազատ» (Ստեփանե), «свободный» (Էմին), «noble, ազնիվ» (Ֆլորիվալ)։ Նույն այս բառը մանրամասն քննված է Ֆր. Մուրադի «Ararat und Masis» ուսումնասիրության մեջ (Heidelberg 1901, էջ 52—54) և մեկնված է իբր «վեհ, պաշտելի, սրբազան»։

Սակայն միանգամայն տարբեր է այս բացատրություններից Ֆետտերի լուսաբանությունը (տես «Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Պ. Ֆէթթէրի», թրգմ. Հ. Տաշյանի, Վիեննա 1895, էջ 141)։

Հիմնվելով վերև մեջ բերված Կեղծ-Սեբեոսի վկայության վրա՝ Ֆետտերը յենթադրում է, վոր «Ազատ»-ը վերադիր ածական չէ, այլ «Ազատ» է անվանվել նախագույն ժամանակներում «Մասեաց մէկ մասն, անշուշտ հիւսիսային, Երասխահովտին մերձակայ յառաջալերինքը»։

Վոր Ֆետտերի այս մեկնությունը հաջող է ու հարմար՝ այդ ապացուցանում են ըստ իս վոչ միայն Կեղծ-Սեբեոսի, այլ նաև Թովմա Արծրունու և «Աշխարհացոյց»-ի վերոհիշյալ 12-րդ և 15-րդ վկայությունները։

Կեղծ-Սեբեոսի մոտ (տես վերև վկ. 2) պարզ ասված է, վոր Մաքսյակը «անուանէ գլերինս յանուն իւր, որում Ազատն կոչեն լեառն»։ Թովմա Արծրունին ևս վկայում է (վկ. 15), վոր Գագիկ Արծրունին «ի Ծուաշռոտ ի Գետսուան շինէ ... զվայելչական տեղի խրախից» «ընդդէմ լերանցն Այրարատեան Ազատն Մասեաց»։ Այս վկայություններում, ինչպես տեսնում ենք, «Ազատ» կամ «Ազատ Մասիս» կոչվում են, իրոք, Այրարատյան լեռները։ Ցեվ հետևաբար՝ «Աշխարհացոյց»-ի վկայության մեջ ևս (վկ. 12) «յոտինն Ազատ Մասեաց» հավանական է մեկնել այն իմաստով, վոր Կոգովիտ գավառը գտնվել է «Ազատ Մասիս»-ի, այսինքն՝ «Այրարատեան լերանց» թիկունքում։

Նույն այս մեկնության ապացույց կարող է լինել նաև վերոհիշյալ չորրորդ վկայությունը։ Բագավան ձեռակերտը, ուր բնակեցրել եր Սմբատը «զծառայսն Երուազայ», գտնվել է իսկապես վոչ թե անմիջապես Մեծ Մասիսի, այլ «Ազատ

Մասիս»-ի կամ «Այրարատեան լերանց» Թիկունքում։ Խորենացու այս վկայության մեջ «Մասիս» է անվանված պարզապես «Ազատ Մասիս»-ը։

Բոլոր այս դիտողությունները ցույց են տալիս, որ նաև «լեառն հարաւոյ», որին Ամասիան յուր անվամբ կոչել էր «Մասիս»՝ կարող է հասկացվել համապատասխան Կեղծ-Սեբեոսի վկայության «Ազատ Մասիս» լեռնաշղթայի իմաստով։

Որ մեր այս յեզրակացությունը միանգամայն ուղիղ է և հավանական՝ այդ ապացուցվում է այժմ Պետինգերյան քարտեզի Բագավան-Ծոլակերտ գծի լուսաբանությամբ։

Ծոլակերտը, որի հեռավորությունը Բագավանից ցույց է տրված քարտեզում 48 հռոմեական մղոն կամ մոտ 72 կիլոմետր, իսկ Hariza-Արուճից 24 հռոմեական մղոն կամ մոտ 36 կիլոմետր, գտնվել է պարզապես «առ խորշիւք լեռնոտինն» ոչ Թե Մեծ Մասիսի, այլ Մասիս լեռնաշղթայի։ Յեվ կարևոր այս փաստը զորավոր մի ապացույց է, անշուշտ, որ Խորենացու վկայությունը Ծոլակերտի մասին սխալ է յեղել մեկնված նախորդ ուսումնասիրություններում։

Խորենացու վկայության նոր լուսաբանությունը, ինչպես և Hariza կայարանի նույնացումն այժմյան Արուճի հետ, պարզ ու հաստատուն ցուցումներ են, որ հնարավորություն են ընձեռում գիտական արշավախմբերին հետախուզումներ կատարելու վերև մատնանշված շրջանում և վերջնականապես ճշտելու Զողկերտ-Ծոլակերտի տեղը։

11. Ծոլակերտի տեղադրության նոր մեկնությամբ և Hariza-յի նույնացմամբ այժմյան Արուճի հետ վերջնականապես որոշվում է այն լեռնանցքը և այն մեծ ճանապարհը, որով շարժվել են դեպի Արտաշատ հռոմեական, բյուզանդական և այլ օտար զորքերը։ Պարզվում է, ուրեմն, որ հռոմեական լեգեոնները Պոմպեյոսի, Կորբուլոնի և Ստատիուս Պրիսկոսի առաջնորդությամբ իջել են Արարատյան դաշտ, հավանորեն, Կարվանսարայի կամ Կուջաղի լեռնանցքով։

Նույն պատմական գծով և Կարվանսարայի լեռնանցքի վրայով պետք է յենթադրել նաև խալդական շրջանում հին Արմավիրի կապը Արածանի գետի հովիտների և խալդական Տուշպա-Տոսպ մայրաքաղաքի հետ։ Ուշագրավ է այդ տեսակետից, վոր Hariza կայարանի անունը (=*Հառիճ) համարվում է խալդական (համեմատե Markwart, Südarmenien und die Tigrisquellen, Wien 1930, եջ 51*, ծանոթ. 1), ուստի և այժմյան Առուճը, հավանորեն, դեռևս հնագույն շրջանում կարող եր գոյություն ունեցած լինել իբրև խալդական բնակավայր։ Աճառյանն իր «Հայերէն արմատական բառարանի» մեջ յենթադրում է, վոր «-առիճ», «-առինճ» կամ Հառիճ նշանակում է «գյուղ», սակայն նրա մոտ այդ բառը ստուգաբանված չէ և նշանակության կռահումը վիճելի յե և կարոտ ստուգաբանական հիմնավորման [1]։

Ռուսերեն իմ աշխատության մեջ («О торговле и городах Армении», Эривань 1930) մանրամասն յես քննել եյի Հայաստանի առևտրական հին ճանապարհների ուղղությունը զանազան դարաշրջաններում և հանգել եյի այն յեզրակացության, վոր հռոմեական շրջանի կարավանների մեծ ճանապարհը, վոր գալիս եր Չինաստանից ու Միջին Ասիայից Եկբատանա և այստեղից Արտաշատ, անցել է Բագավանի և այժմյան Քեոփրիքեոյի վրայով դեպի Սև ծովի նավահանգիստները։ Hariza-յի տեղադրության վորոշմամբ պարզվում է այժմ, վոր միջազգային նշանակություն ունեցող այդ ճանապարհն էլ իջել է Բագավան Կարվանսարայի կամ Կուջաղի լեռնանցքով։

Նույն աշխատության մեջ մենք մատնացույց եյինք արել, վոր Հին Հայաստանի մեծ ու նշանավոր քաղաքները

---

[1] Ներքև մենք կտեսնենք, վոր Ստրաբոնի հիշած Βασγοιδα'ριζα անունը Մարկվարտը համապատասխան է համարում մատենագրական հայ աղբյուրների «Բագայառիճ»-ին։ Մարկվարտի այս յենթադրությունից, վոր ինձ հավանական է թվում, կարելի յե հետևցնել, վոր «հառիճ» կամ «յառիճ»-ի նշանակությունը կարող եր լինել վոչ թե «գյուղ», այլ «ամրություն» կամ «բերդ»։

հիմնված են յեղել առևտրական ճանապարհների մոտ։ Հին Բագավանի մոտ, ինչպես հայտնի յե Փավստոսի վկայությունից (V, ԽԳ), գտնվել ե Զարեհավան քաղաքը, *Tsumbo—Ծումբ կայարանից հարավ՝ Արճեշ տանող ճանապարհի մոտ՝ Զարիշատը, իսկ Բագավանից Սատաղ գնացող գծի մոտ՝ հին Թեոդոսուպոլիսը։ Այս քաղաքների առևտրական հաղորդակցությունն Արարատյան դաշտի և Արտաշատի հետ վորոշվում ե, գլխավորապես, վերոհիշյալ մեծ ճանապարհով։

*Zolocerta-Hariza գծի հետ միանում եր, հավանորեն, նաև Ցերվանդաշատից Բագավան տանող ճանապարհը։ Կամսարականի կարծիքով՝ վոր ծանոթ ե այժմյան Սուրմալուի տեղագրական պայմաններին՝ այս ճանապարհը Կարակալեյի ու Կարվանսարայի վրայով ավելի հարմար ե, քան մյուս ճանապարհներն Աբասգյոլի և Ասլանլուի լեռնանցքներով։ Հավանական ե ըստ այսմ, վոր Ցերվանդաշատի ճանապարհը ևս անցել ե Զողկերտ-Ծոլակերտի վրայով Hariza և այստեղից Բագավան։ Ցերվանդաշատից կա և մի ուրիշ ճանապարհ, վոր գալիս ե Կողբ և այժմյան Ղաթրլու գյուղի վրայով բարձրանում Կարվանսարայի լեռնանցքը։ Սակայն խիստ կասկածելի յե, վոր այս դժվարամատչելի գիծը լիներ կարավանների մշտական ու բանուկ ճանապարհ։

12. Բագավանից Ծոլակերտ գնացող ճանապարհի ճըշտումը, ինչպես մանրամասն ցույց ենք տալու մի ուրիշ աշխատության մեջ, հնարավորություն ե տալիս լուսաբանելու նաև Քսենոֆոնի ու նահանջող հույների ուղեգիծը։

Մինչև այժմ, ինչպես հայտնի յե, Քսենոֆոնի ու նրա հետ նահանջող հույն զորքերի ճանապարհը վիճաբանության առարկա յե և վերջնականապես դեռ չե պարզված։

Ըստ Քսենոֆոնի՝ նահանջող հելլեն զորքը մտել եր Արմենիա՝ անցնելով Կենտրիտես գետը (այժմյան Բոհտանսու)։ Այստեղից նրանք գնացել են վեց որ, 30 փարսախ, և Տավրոսյան լեռներով իջել են Մշո դաշտն ու հասել մինչև Տելեբոաս գետը (ըստ Մարկվարտի՝ = Մեղ, այժմ՝ Կարասու, տես Untersuchungen zur Geschichte von Eran, Philo-

logus X, erstes Heft, էջ 237, հմմտե նաև «Հանդէս Ամսօրեայ» 1906, փետր., էջ 43)։ Շարունակելով իրանց ճանապարհը Տելեբոաս գետի մոտից, նրանք գնացել են դարձյալ վեց օրվա ճանապարհ, 30 փարսախ, և հասել Յեփրատ գետը, վորն անցել են թրջվելով մինչև պորտ։ Հույները լսած են յեղել, վոր հեռու չեն այդ տեղից Յեփրատի ակունքները։

Գերմանական գիտնականները, վոր մանրամասն ուսումնասիրել են հույն զորքի նահանջի ճանապարհը, յենթադրել են վոր Քսենոֆոնի մոտ հիշատակված Յեփրատն (Anabasis, IV, 5, 2) Արևելյան Յեփրատն է՝ հին Արածանին։ Գիտնականների մի մասի կարծիքով, Մշո դաշտից հույները շարունակել են իրանց ճանապարհը դեպի հյուսիս կամ հյուսիս-արևելք և, անցնելով Յեփրատ-Արածանին, ուղղվել են դեպի Խնուսի դաշտը, իսկ մյուս մասի կարծիքով՝ հույները Մշո դաշտից մտել են Մանազկերտի շրջանը, գնացել այստեղից դեպի հյուսիս և Յեփրատ-Արածանին անցել են այժմյան Ղարաքիլիսեյի մոտ ու դուրս յեկել Ալաշկերտի դաշտը։

Պետինգերյան քարտեզի ուսումնասիրությունը, ինձ թվում է, կարող է հիմք ծառայել Տասը հազարի նահանջի ճանապարհը յենթադրելու մի նոր ուղղությամբ, վորն ուշադրության չի առնված գիտական նախորդ աշխատություններում։

Ի նկատի առնելով Քսենոֆոնի վերոհիշյալ վկայությունը, վոր հույները Յեփրատն անցել են նրա ակունքների մոտ, նաև նրա այն կարևոր տեղեկությունը, վոր Յեփրատն անցնելուց հետո նրանք շարունակել են ճանապարհը հանքային ջրի մոտով (Anabasis, IV, 5, 15)՝ կարելի յե հավանական համարել, վոր նահանջող զորքը դուրս է յեկել դաշտ Բագավան-Գիադինի շրջանում, ըստ յերևույթին, այն հին ճանապարհով, վորը մատնանշված է Պետինգերյան քարտեզում Տիգրանակերտից Բագավան տանող ճանապարհագծում (տես սույն ուսումնասիրության հաջորդ գլուխը)։ Ուշագրավ է, վոր հենց այս ուղղությամբ հույներին կարող եր իրոք հանդիպել հանքային ջրի այն աղբյուրը, վոր հի-

շատակված է Քսենոֆոնի մոտ։ Այդ աղբյուրը, հավանորեն, հին Ծաղկոտն գավառում՝ այժմյան Դիադինի մոտ գտնվող այն հռչակավոր ջերմուկն է, վորը Փարպեցու մոտ անվանված է «Վարշակի ջերմուկ» (տես III, ՀԳ, Տփղիս, 1904, էջ 132)։

Վոր Նահանջի ճանապարհի այս նոր լուսաբանությունն ավելի ընդունելի յե քան նախորդ յենթադրությունները՝ այդ յերևում է նաև Քսենոֆոնի հետագա վկայություններից։ Քսենոֆոնի պատմելով՝ հանքային ջրի մոտ գտնվող գյուղերից հույները գյուղապետի առաջնորդությամբ գնացել են յերեք որվա ճանապարհ (մոտ 15 փարսախ կամ 80 կիլոմետր) և հասել Ֆազիս գետի մոտ և ապա յոթը որ շարունակել են իրանց ճանապարհն այդ գետի յերկարությամբ և անցել 35 փարսախ կամ մոտ 185 կիլոմետր (Anabasis, IV, 6, 1—5)։

Արդ՝ այս վերջին վկայությունները միանգամայն հասկանալի յեն դառնում, յեթե Նահանջի ճանապարհն ընդունենք Պետինգերյան քարտեզի Բագավան-Ցոլակերտ գծով մինչև Արաքս գետը և այնուհետև Արաքս գետի ափերով դեպի արևմուտք։ Քսենոֆոնի հիշած Ֆազիս գետը, ինչպես շատ ճիշտ վորոշել են գերմանական գիտնականները (տես H. Kiepert, Lehrbuch der alten Geographie, Berlin, 1878, էջ 81, նաև Fr. Segl, Vom Kentrites bis Trapezus. Eine Bestimmung des Weges der Zehntausend durch Armenien, Erlangen, էջ 35), Ռիոնը չէ, այլ այժմյան Արաքսը։

Հ. Կիպերտը մատնանիշ է անում, վոր Արաքսի վերին հոսանքը (Հին Հայաստանի Մուրցը, Լինչի քարտեզի վրա՝ Եգրի կամ Արազ) այժմ էլ կոչվում է Պասին-սու։ Նրա, Սեգլի ու մի քանի ուրիշ գիտնականների յենթադրությամբ՝ հույները Խնուսի դաշտից բարձրացել են Կուլլի (Кулли, Кюлли) և այդտեղից Արաքսի յերկարությամբ գնացել են Մժնկերտ։

Վերոհիշյալ նոր լուսաբանությամբ՝ Քսենոֆոնյան ճանապարհը վորոշվում է դարձյալ Արաքս գետի ափերով,

սակայն այժմյան Կուլջաղի լեռնանցքով ու Խոշ-Խաբարի մոտով դեպի Արաքս և այնուհետև Ֆազիս-Արաքսի յերկարությամբ դեպի արևմուտք։ Իմ նախկին յենթադրությունը[1], վոր հույները Բագավան-Դիադինի շրջանից գնացած պիտի լինեն դեպի Արաքս այժմյան Կողբի մոտով՝ թվում ե ինձ այժմ անհավանական, վորովհետև Bagauna-*Zolocerta գիծը ճշտիվ վորոշվում ե, ինչպես տեսանք, նոր ուղղությամբ՝ Կարվանսարայի կամ Կուլջաղի լեռնանցքով։

Քսենոֆոնի վկայության մեջ առանձնապես կարևոր ե, վոր Յեփրատ-Արածանիի դաշտային մասում գտնվող գյուղերից մինչև Ֆազիս-Արաքս գետը հեռավորությունը ցույց ե տրված յերեք որվա ճանապարհ, վոր անում ե մոտ 15 փարսախ կամ 80 կիլոմետր։ Այդ հեռավորությունը համապատասխանում ե իրապես այժմյան տարածությանը Bagauna-Hariza-*Zolocerta գծով մինչև Խոշ-Խաբարի մոտ և այստեղից մինչև Արաքս։

13. Գայլատու լճի արևելյան կողմում գտնվող լեռնաստանը, ինչպես պարզ յերևում ե Պետինգերյան քարտեզի մեր ուսումնասիրությունից, պատմական առաջնակարգ նշանակություն ունեցող մի շրջան ե, վորն Արարատյան դաշտի պաշտպանության համար յեղել ե, ըստ յերևույթին, բնական մի պատվար։ Այս շրջանի ռազմական ու ստրատեգական բացառիկ կարևորությանը պետք ե վերագրել, վոր այստեղ գրեթե յուրաքանչյուր քայլափոխում հանդիպում են բերդերի ու այլ կառուցվածքների բազմաթիվ ավերակներ, վորոնք սակայն կարոտ են դեռ պատմական ու հնագիտական լուրջ ուսումնասիրության։

Թե վո՛րքան հետաքրքիր են ու կարևոր այս կողմերում գտնվող հնությունները՝ այդ յերևում ե Ս. Հայկունու մի քանի համառոտ ու թռուցիկ տեղեկություններից նրա «Բագրևանդ Ջրաբաշխ գավառ» աշխատության մեջ, վոր ներքև

[1] Տես «Հայաստանի հին ճանապարհները», Տեղեկագիր Գիտ. և Արվ. Ինստիտուտի № 5 (1930), եջ 73։

բերում ենք ամբողջությամբ (Վաղարշապատ 1894, էջ 363—364)՝

«Կուլաբ գիւղին ½ քիլոմէթր հիւսիսն կայ Նորեկուկ ուխտատեղին. նաև 1 ժամ յարևելս Ղաթրլու գիւղն և որոյ մօտ գտնուած մի ողի վերան Թուխ Մանուկ, ուր միշտ ուխտի կըգնան, իսկ համբարձման մեծ բազմութեամբ։ Այս ուխտատեղիէն քիչ բարձր կայ հինաւուրց մի բերդ հսկայ և կոշտ քարերէ շինուած. որ ունի մէջը մօտ 200 տան աւերակ, իւրաքանչիւր տան մօտ հորեր, միջավայրն մի տափարակ սալայատակուած վայր։ Սորա կողերու վերան գտնուած են քանի տեսակ նետի սլաք և հին դրամ։

Այս գիւղի ½ ժամ հարաւն ևս կայ Աշխհիւսէին անունով Եղտի բնակ գիւղն, որոյ մօտ գտնուած բլուրի գագաթն ևս աւելի մեծ բերդ և աւերակներ կան. բերդի յարևելս՝ ստորոտին մօտ մի արտի մէջ գտնուած էր բազմաթիւ պղնձեայ հին դրամներ, տեսակ տեսակ, որոց ոմանք կլայեկուած էին։ Այս դրամներն որպէս այլ դրամներ ամփոփած էի, և մտադիր էի այստեղ որոց պատկերն ներկայացնել, դժբախտաբար այս ամբան կողոպտեցին։

Այս կողմերն այս տեսակ հին բերդօրայք շատ կան, մանաւանդ երկու Գանձակներու, Ագարակի և Ղուրու-Ազանի միջավայրն, Սինէկայ Ջրի աջ բարձրութեան վերայ եղած Փարչինիս գիւղն, որոյ վերևն կայ մի անհպելի հին և կոշտ քարերէ շինուած բերդ, ուր կապատանէին, կասեն, Կողբայ և շրջակայ գիւղօրայքն դրտնուած Թուրք և հայ հասարակութիւնը՝ երբ լեզկիներու յարձակումը կրկինէր այս երկրի վերան»։

14. Հայկունու նկարագրած բերդերի այս շրջանում՝ Կուջաղի լեռնային ճանապարհի շրջապատում՝ կարելի յե յենթադրել ըստ իս Տակիտոսի հիշատակած Volandum ամրոցի տեղը։

Այս յենթադրությունը հավանական է դառնում այժմ,

վորովհետև Կորբուլոնի 58 թվի արշավանքը դեպի Արտաշատ վորոշվում ե համաձայն Պետինգերյան քարտեզի մեր նոր լուսաբանության վոչ թե «Դիադինի և Բայազիդի կիրճերէն», ինչպես մինչ այժմ յենթադրել են (համմտե Դր. Վերներ Շուր, «Ներոն կայսեր արևելյան քաղաքականությունը», թրգմ. Հ. Մ. Հապոզյանի, Վիեննա 1930, եջ 27), այլ Bagauna—Hariza—*Zolocerta գծով և Կարվանսարայի կամ Կուջագի լեռնանցքով։

Վոլանդ ամրոցը (castellum Volandum), ինչպես կարծում են[1], նույն այն վայրն ե, վորը Ստրաբոնի մոտ (XI,14,6) անվանված ե Ոլանե ('Ολανη')։

Ավելորդ չեմ համարում մանրամասն մեջ բերել այս ամրության մասին Տակիտոսի և Ստրաբոնի կարևոր վկայությունները, վոր սխալ են հաճախ հասկացված պատմագիտական յերկերում[2]։

1. Tacitus, Annales, XIII, 39՝

«Ցեվ Կորբուլոնը, վորպես զի կռիվը իզուր չձգձգվի և վորպես զի հարկադրե հայերին պաշտպանելու այն, ինչ վոր իրանցն եր՝ վորոշում ե վոչնչացնել նրանց ամրությունները։ Ինքը վերապահում ե իրան ամրություններից ամենազորեղն այս շրջանում, վոր անվանվում եր Վոլանդ. իսկ ավելի փոքրերը հանձնարարում ե վոր գրավեն լեգատ Կոռնելիուս Ֆլակկուսը և բանակատեղիի պրեֆեկտ Ինստեյուս Կապիտոնը։ ..... Ցերեք ամրությունները միևնույն օրը նվաճելուց հետո՝ մյուսներն անձնատուր են լինում բնակչության ահաբեկման պատճառով և վոմանք հոժարակամ։ Այնուհետև Կորբուլոնը լիահույս եր, վոր կարողանալու յե հարձակվել Ար-

[1] Համմտե Адонц, Армения в эпоху Юстиниана, СПБ. 1908, եջ 16, Վ. Շուր, «Ներոն կայսեր արևելյան քաղաքականությունը», եջ 28 և այլք։

[2] Տես, որինակ, Dolens et Khatch, Histoire des anciens Arméniens, Genève 1907, եջ 171, վորի մեջ մատնանշված ե, վոր Կորբուլոնն Արաքս գետն անցել ե Արտաշատ քաղաքի պարիսպների մոտ (?!)։

տաշատի վրա, վորը յերկրի մայրաքաղաքն եր։ Բայց սակայն նա լեգեոնները չի տանում ամենամոտ ճանապարհով. վորովհետև՝ յեթե նրանք Արաքս գետը, վորը վողողում եր քաղաքի պարիսպները, անցնելու լինեյին կամուրջով՝ կընկնեյին թշնամու հարվածի տակ. ուստի և անցնում են գետը հեռվում՝ լայն ու ընդարձակ ծանծաղուտով»։

2. Strabo, Geographica, XI,14,6՝

«և վոչ շատ հեռու քաղաքից [Արտաշատից] գտնվում են Տիգրանի և Արտավազդի գանձերի պահեստատեղերը, վոր բնական ամրություններ եյին՝ Բաբիւրսան (Βάβυρσα)[1] և Ոլանեն ('Ολανη')։ Կային և ուրիշ նման տեղեր Յեփրատ գետի վրա»։

Այս վկայությունից պարզ յերևում է, վոր Վոլանդ-ամրության տեղը պետք է յենթադրել «վոչ շատ հեռու» Արտաշատ քաղաքից և այնպիսի մի շրջանում, վորտեղ իրար մոտ են գտնվել մի շարք ամրություններ։

Վոլանդի այս տեղադրությանը պարզապես հակասում են Գաթըրճյանի և Ադոնցի յենթադրությունները։ Գաթըրճյանը, ինչպես հայտնի յե, Volandum-ը նույնացրել եր Վանանդի հետ (տես «Տիեզերական պատմութիւն», հատոր Բ, Վիեննա 1852, եջ 113), իսկ Ադոնցը՝ Մամիկոնյանների Ողական բերդի հետ, վորը գտնվում եր Տարոնում Յեփրատ-Արածանու վրա (տես Армения в эпоху Юстиниана, եջ 16, ծանոթ. 2)[2]։ Նրանք ի նկատի յեն ունեցել, ըստ յերևույթին, Վանանդ, Ողական և Վոլանդ, Ոլանե տեղանունների հնչյունական նմանությունները, վոր միանգամայն կասկածելի յեն և, անշուշտ, պատահական։

---

[1] Ստրաբոնի այս Βα'βυρσα-ն կարող է համապատասխանել Պտոլեմեյոսի Βαβιλα-յին, վորը նրա մոտ գտնվում է վոչ շատ հեռու Σαγαυα'-να-յից (= Բագավան) և Σογοκα'ρα-յից (= Զողկերտ), տես Z. Khanzadian, Atlas historique, Paris 1920, carte № 8։

[2] Ադոնցից առաջ նույն այս կարծիքը հայտնել են նույնպես Դոլենսը և Խաչը «Histoire des anciens Arméniens» աշխատության մեջ (տես եջ 170, ծան. 3)։

Վերոհիշյալ կարծիքներն անընդունելի յեն նաև այն պատճառով, վոր Կորբուլոնի արշավանքի ճանապարհը հավանական ե յենթադրել վոչ թե Վանանդի կամ Տարոնի միջով, այլ Բարձր Հայքից դեպի Ալաշկերտի դաշտը (տես Վ. Շուր, «Ներոն կայսեր արևելյան քաղաքականությունը», եջ 27 և, մասնավորապես, ծան. 22) և այնուհետև Bagauna—*Zolocerta ուղեգծով[1]։

Արդ՝ ի նկատի ունենալով նրա ճանապարհի այս ուղղությունը՝ կարելի յե, բնականաբար, յենթադրել, վոր Կորբուլոնը՝ առաջ քան Արտաշատի վրա հարձակվելը՝ պետք ե նախապես նվաճեր Գայլատու լճի արևելյան կողմերում գտնվող այն ամրությունները, վորոնք ստրատեգական և պաշտպանողական կարևոր դիրքեր եյին Արարատյան դաշտի և Արտաշատի թիկունքում։ Վ. Շուրի յենթադրությունը, վոր Volandum-ը և մյուս «յառաջաբերդերը գտնվել են Իգտիրի մոտ» (տես եջ 28)՝ ըստ իս վիճելի յե ու անհավանական։ Հռոմայեցիների գրաված ամրոցների տեղերը, վորոնք գտնվել են իրար մոտ և յեղել են բնական ամրություններ, կարելի յե յենթադրել, ամենայն հավանականությամբ, Կարվանսարայի կամ Կուջաղի լեռնային դժվարամատչելի շրջանում, վորտեղ այժմ ևս կան բերդերի բազմաթիվ ավերակներ։

Հենց այստեղ, հավանորեն, այս ամրացրած փակ ու ապահով լեռնաստանում կարող եյին լինել և Ստրաբոնի

---

[1] Սխալ ե ըստ այսմ նմանապես Ա. Խաչատրյանի վերոհիշյալ դեկուցման հետևյալ թեզիսը։ «Կորբուլոնը մտել ե Հայաստան — գրում ե Խաչատրյանն իր 9-րդ թեզիսում — ամենայն հավանականությամբ Մելիտենեյից, վորը կայանն եր հռոմեական լեգեոնի։ Նա Արածանիա հովտով բարձրացավ Տարոն, ուր գրավեց Վոլանդ (Ողական) բերդը և առաջացավ Բագավան—Դիադին, վորտեղից նա կարող եր Ղուջաղի լեռնանցքով կամ Արծափ-Որգովի վրայով, վորով 7-րդ դարում անցան արաբները, իջնել Այրարատ և դիմել Արտաշատի վրա Արաքսի աջ կողմից»։ Այս թեզիսի մեջ վոչ միայն սխալ ե Վոլանդի նույնացումը Ողականի հետ, այլ և Կորբուլոնի հարձակումը Արտաշատի վրա «Արաքսի աջ կողմից»։

հիշատակած Արշակունիների գանձապահ ամրությունները (γαζοφυλακια)։

Վոլանդը և մյուս ամրոցները նվաճելուց հետո՝ Կորբուլոնի առջև բաց եր «արքունի պողոտայն» մինչև Արտաշատ։

Սակայն նա, ինչպես վկայում ե Տակիտոսը, վտանգավոր եր համարում անցնել Արաքսը Արտաշատի մոտ գտնվող կամուրջով. ուստի և՝ փոխանակ ուղիղ ճանապարհով գնալու Արտաշատ՝ անցնում ե գետը «հեռվում լայն ու ընդարձակ ծանծաղուտով» և Արտաշատի վրա հարձակվում ե վոչ թե Արաքսի աջ կողմից, ինչպես վոմանք յենթադրել են, այլ պարզապես ձախ կողմից։

Արաքսի անցանելի այս հունը չպետք ե, իհարկե, յենթադրել Արտաշատի պարիսպների մոտ, ինչպես Տակիտոսի վկայությունից սխալ յեզրակացրել են Դոլենսը և Խաչը (տես վերև եջ 42, ծան. 2), այլ այդ հունը, հավանորեն, Վարդանակերտ ավանի մոտ գտնվող այն ծանծաղուտն ե, վոր հիշատակված ե նաև հայկական աղբյուրների վկայություններում։

Այդ հիշատակություններից կարևոր են, մանավանդ, Սեբեոսի և Ղևոնդի հետևյալ տեղեկությունները՝

1. Սեբեոս, Ս. Պետերբուրգ 1879, Գլ. ԻԶ, եջ 94՝

«Յայնժամ առեալ Երակլի զզաւրս իւր՝ դարձաւ յերկիրն Հայոց, անցեալ ընդ Շիրակ հասանէ ի հուն գետոյն Երասխայ, և անց ընդ գետաւն առ Վարդանակերտաւն աւանաւ, երթեալ թափեցաւ ի Գոգովիտ գաւառ»։

2. Ղևոնդ, Ս. Պետերբուրգ 1887, գլ. Ը, եջ 24՝

«Եւ նոքա [նախարարք Հայոց] գնացեալ ընդ եզր գետոյն Երասխայ՝ անցանէին ընդ սահմանս Ուղայէոյ և հասանէին ի մեծ աւանն Ակոռի։ Իսկ զօրքն Իսմայելի, որ էին ի Նախջաւան քաղաքի՝ յարձակեցան զկնի նոցա և ոչ մեկնեցան ի հետոց նոցա. քանզի էին աւելի քան ԵՌ, և կամէին կենդանւոյն կլանել զնոսա։ Եւ իբրև ազդ եղև զօրուն Հայոց վասն հինին, որ զարթուցեալ գայր ի վերայ նոցա՝ յարուցեալ անցին ընդ

գետն Երասխ, և բանակեցան ի Վարդանակերտն աւանի. և զօրն Տաճկաց պնդեալ գայր զկնի նոցա»։

Հմմտե նաև Հովհաննես Դրասխանակերտցի, Թիֆլիս 1912, եջ 95. Ասողիկ, Ս. Պետերբուրգ 1885, II, գլ. Բ, եջ 101 և գլ. Դ. 123—124. Վարդան, Վենետիկ 1862, եջ 71 և Կիրակոս Գանձակեցի, Թիֆլիս 1910, եջ 62։

Կորբուլոնի 58 թվի արշավանքի մատնանշած այս ճանապարհը, ինչպես և Վոլանդ ամրոցի վերոհիշյալ տեղադրությունը, թվում են ինձ ավելի հիմնավոր ու հավանական, քան մինչ այժմ առաջարկված մյուս բացատրությունները։

15. Պևտինգերյան քարտեզի մանրախույզ քննությամբ ճշտվում են, ինչպես տեսնում ենք, Artaxata—Bagauna գծի վրա գտնվող բոլոր կայարանները՝ Artaxata=Արտաշատ, Paracata=Փառախոտ, Coloceia (Ռավեննացու մոտ՝ Zotozeta)=Զողկերտ, Ցոլակերտ, Hariza=Արուճ, *Հառիճ և Raugonia (Ռավեննացու մոտ՝ Ragauna)=Բագաւան։

Մեր քննությունից յերևում ե նույնպես, վոր ճիշտ պիտի լինեն, ընդհանուր առմամբ, նաև քարտեզում մատնանշված տարածությունները։

Մութ ե մնում սակայն Զողկերտ-Ցոլակերտի տեղադրության խնդիրը Կուջաղի լեռնանցքի ճանապարհում, ուստի անհրաժեշտ ե հետագայում ուղարկել մեր մատնանշած շրջանը գիտական հատուկ արշավախումբ և ուսումնասիրել ու ճշտել տեղում թե այս խնդիրը և թե, ընդհանրապես, այն վայրերն ու ճանապարհները, վորոնք կարող են վերջնականապես պարզել այս հին ճանապարհի ուղղությունը։

Անցնենք այժմ այս գծի շարունակությանը։

16. Bagauna-Բագավան հանգուցային կայարանից, ինչպես վերև ասվեց, մի առանձին գիծ գնում եր Սատաղ։

Այդ գծի ուղղությունը, ինչպես տեսանք, Կոնրադ Միլլերը յենթադրել ե Սուսուկ-սու գետի մոտից այժմյան Ադիլջեվազ—Խլաթ—Աղվերան—Սընկառիջ—Աշկալայի վրայով, Իսկ Ռ. Կիպերտը՝ այժմյան Պարնաուտից Կաղզվան—


Երուանդաշատ
Արմավիր
Կողբ
Ա ր ա ք ս
Կարակալա
Արդաշար (Դվին)
Զարուխչի
Artaxata
Բուլաղ-բաշ
Paracata Փառակատա
*Zolocerta
Զողկերտ
Խոշ-խաբար
Կարվանսարա
Արասգյոլ
Ասլանլու
Կուջաղ
Կարվանսարայի կամ Կոչաղի լեռնանցք
Արուճ
Hariza
Միսուն
Ա Գ Ր Ի Դ Ա Ղ
Ուչ-քիլիսե
Bagauna
Դիդիմ
Didyma
Դիադին
ARTAXATA-BAGAUNA
ՈՒՂԵԳԻԾԸ
Դեպի Սատաղ և
Տիգրանակերտ

Սարիղամիշ — Կարաուրգան — Քեոփրիքեոյ — Իլիջա — Բագառիճի վրայով։

Այդ յերկու ուղղությունն էլ չեն կարող, բնականաբար, ճիշտ լինել, վորովհետև Միլլերի ու Կիպերտի մոտ սխալ է վորոշված Bagauna-Բագավանի տեղը։

Bagauna հանգուցային կայարանը, ինչպես վերև տեսանք, գտնվել է այժմյան Ուչ-քիլիսեյում, ուստի այս ճանապարհի ուղղությունը վորոշվում է Բագավանից դեպի արևմուտք Հայկական Պար կամ Աղրի-դաղ լեռնաշղթայի հարավային կողմով։ Ինչպես հայտնի յե, այժմ էլ հենց այդ ուղղությամբ՝ Բագավանի ու Դիադինի վրայով անցնում է կարավանների մեծ ճանապարհը, վոր Տրապիզոնից ու Երզրումից գնում է Պարսկաստան։

Բացի Bagauna-Բագավանից և Satala-Սատաղից վերև հիշված կայարաններից մինչև այժմ վորոշված է յեղել այս գծի վրա միմիայն Adconfluentes կայարանը, վորի հեռավորությունը Սատաղից յեղել է ըստ Պևտինգերյան քարտեզի 169 հռոմեական մղոն կամ մոտ 250 կիլոմետր, իսկ Բագավանից՝ 133 հռոմեական մղոն կամ մոտ 197 կիլոմետր։

Ավելորդ չի լինի այստեղ մատնանշել, վոր Adconfluentes լատիներեն բառը նշանակում է «դեպի գետախառնուրդ» կամ «գետախառնուրդի մոտ», և վոր Պևտինգերյան քարտեզում Adconfluentes և Barantea կայարանների միջև նկարված է իրոք մի գետ, վորը գալիս է հյուսիսից և անցնում Barantea-յի մոտով դեպի հարավ։

Ռ. Կիպերտի կարծիքով՝ Adconfluentes կայարանը գտնվել է այժմյան Քեոփրիքեոյում, ուր իրար են խառնվում հին Մուրցը և Արաքսը։ Յեվ իրոք՝ յեթե ի նկատի առնենք վերև առաջ բերված տարածությունները Սատաղից և Բագավանից մինչև Adconfluentes՝ այս կայարանի տեղը համաձայն Պևտինգերյան քարտեզի նկարի կընկնի թեև վոչ Քեոփրիքեոյում, սակայն մոտավորապես Երզրումի և Քեոփրիքեոյի միջև։ Վոր Ռ. Կիպերտի յենթադրությունը մոտավորապես ճիշտ է՝ այդ պարզ ցույց են տալիս, ինչպես

ներքև կըտեսնենք, նաև մեր դիտողությունները, որ վե-րաբերվում են Calcidava (Ռավեննացու մոտ՝ Chalchidara) և Armanas կայարանների տեղադրության։

17. Արտաշատից Սատաղ տանող ճանապարհին Բագավանից մինչև Adconfluentes նշանակված են Պևտինգերյան քարտեզում հետևյալ կայարանները՝ RAUGONIA (Ռավեննացու մոտ՝ Ragauna=Բագավան) 24 Colchion 24 CHADAS 17 Armanas 12 ANDAGA 26 Barantea 30 Adconfluentes:

Այս կայաններից Chadas-ը, որի մոտ նկարված են զույգ աշտարակներ, գտնվել է, ինչպես տեսնում ենք, Բագավանից 48 հռոմեական մղոն կամ մոտ 71 կիլոմետրի վրա։ Ուրեմն՝ միանգամայն պարզ է, որ Ուչ-քիլիսեյից Քեոփրի-քեոյ գնացող ճանապարհի վրա Chadas-ի տեղը լինելու յեր այժմյան Ալաշկերտի դաշտում։ Իսկ նրա մոտ նկարված զույգ աշտարակները ցույց են տալիս պարզապես, որ Chadas-ը յեղել է այս դաշտում կենտրոնական ու կարևոր մի վայր։

Պևտինգերյան քարտեզի հենց այս ցուցումները կարող են, իմ կարծիքով, կռվան ծառայել որոշելու Chadas-ի տեղադրությունը համոզիչ հավանականությամբ։

Աշխարհագրական հարևանցի իսկ քննությամբ դժվար չէ պարզել որ պատմական հնագույն շրջանում նշանավոր կենտրոնատեղի յէ յեղել Ալաշկերտի դաշտում այժմյան Խաստուր գյուղը, որը ռուսական տասը վերստանոց քարտեզի վրա անվանված է Ханзыр, իսկ Լեման-Հաուպտի մոտ՝ Chazdar (տես «Armenien einst und jetzt», Bd. II, 2, Berlin 1931, եջ 742)։

Լեման-Հաուպտի կարծիքով՝ Chazdar գյուղը, որի մոտ գտնված է Մենուասի խալդական արձանագրությունը, համարվելու յէ Ալաշկերտի շրջանի հնագույն քաղաքը։ Որ նրա այս յենթադրությունն ավելի քան հավանական է՝ այդ յերևում է Խաստուր գյուղի մասին Հայկունու հաղորդած տեղեկություններից։

Կարևոր այս վկայություններից ավելորդ չեմ համա-

րում քաղվածորեն մեջ բերել մի քանի հատվածներ, վորոնք հաստատում են Լեման-Հաուպտի կարծիքը.

Տես «Բագրևանդ Ջրաբաշխ գաւառ», Վաղարշապատ, 1894.

1. «Ալաշկերտի դաշտային մասն, որ մօտ 100 գիւղերէ կը բաղկանայ ոչ մի վայր բերդի հետք չերևիր, բաց ի Խաստուր գիւղէ, որ դաշտիս արևմտեան կողմն բարձր դաշտային վայր մի գրաւած է, ուր կերևին հին բերդի հետքեր և մէջը գտնուած է բևեռագրով քառակուսի մի քար» (եջ 17).
2. «Գիւղիս շրջականերն տասնի չափ ջրաղացքներ կան, որոց շուրջն նաև առուներու եզրն ուռի և բարտի ծառեր բարձրացած են, բազմաթիւ պարտէզներ և բանջարանոցներ գիւղիս շուրջն կան՝ ցանկով պատած։ Մի մեծ ջրուղի հանուած է Շեռեանայ գլխից, որով արտօրայք կոռոգուին։ Այս ջրուղին շատ հին է, $2^1/_2$ ժամ գիւղէս բարձր Շեռեանայ ձախ ափէն ջուրը հանուած է դէպի արևելք» (եջ 179).
3. «Ըստ աւանդութեան գիւղս ի հնումն քաղաքի մի տարածութիւն ունէր, վորպէս տեղ տեղ նշաններ կերևին» (եջ 180).
4. «Նաև ծերք կըպատմեն թէ եկեղեցւոյ խորանից [Ս. Աստուածածին] դէպի հիւսիսային յարևելս մի կամար կար և թէ այս կամարը 150 մեթր երկայնք ունէր, որոյ վերայէն ևս ճանապարհ կար՝ գիւղացիք իրենց գործին գնալու համար. կամարի տակ ևս երկաթեայ դռներ կային զինուորաց երթևեկութեան համար։ Այս կամարը բռնած էր իր պարիսպներու շարունակութիւնով գիւղիս հիւսիսն։

Այս կամարի հարաւ արևմուտք, այժմեան գիւղի միջավայրը 5—6 տարի առաջ կըտեսնուէր մի աշտարակ «Խանըմի քօշք» անուամբ. նաև սորա շուրջն գըտնուած են ներկարարի կարասներ, ամբարներ և կըպակի հետքեր. շուկայն Խանըմի քօշքից մինչև երկաթեայ դռներում մօտ տարածուած էր։

*Նաև այս քօշքի մօտ այվան (դահլիճ) մի կար, որ 6—700 մարդ կըպարունակէր, և դեռ 1880—85 թուականներուն կիսականգուն էր։ Նոյն աշտարակն հայ կաթոլիկք քանդեցին ու տեղը եկեղեցի շինեցին, որուն արդէն ականատես եղած եմ։*

*Այս աշտարակի տեղն գտնուած է մի բևեռագիր արձանագրութիւն, մի հատ ևս Թուխ Մանուկից[1] բերուած էր, որոնց մէկն անյայտացած էր, միւսն Թ. գալէի վարժարանի որմի մէջ հիւսել տուած եմ» (եջ 184—185)։*

*Բոլոր այս վկայությունները ապացուցում են, անշուշտ, վոր Խաստուրը կամ* Chazdar-*ը, վորը գտնվում ե կարավանների այժմյան մեծ ճանապարհի մոտ, նշանավոր հին կենտրոնավայր ե և բնակելի յե յեղել, ըստ յերևույթին, անգամ խալդական շրջանում։*

Chadas *կայարանի տեղադրությունն այժմյան Խաստուրում ապացուցվում ե, բացի այդ, նրանով, վոր Պևտինգերյան քարտեզում մատնանշված հեռավորությունը* Bagauna *կայարանից մինչև* Chadas *ճշտիվ համապատասխանում ե այժմյան տարածությանն Ուչ-քիլիսեյից մինչև Խաստուր։*

*Միակ առարկությունը մեր նույնացման դեմ կարող ե, իհարկե, այն լինել, վոր* Chadas *տեղանունը դժվար ե լեզվաբանորեն համապատասխան ընդունել այժմյան Խաստուր,* Ханзыр, Chazdar *նոր անուններին։ Սակայն այս հանգամանքն առանձին մի խոչընդոտ չե, վորովհետև մատնանշված տեղերի նույնացման համար միանգամայն բավարար են վերոհիշյալ ապացույցները։*

Chadas *կայարանի անվան նկատմամբ անհրաժեշտ ե նաև մատնանշել, վոր Մարկվարտի նորերս լույս տեսած ուսումնասիրության մեջ (*«Die Entstehung der armenischen Bistümer», hrsgg. von Joseph Messina, *Հռոմ 1932, տես* P.

---

[1] *Թուխ-Մանուկը գտնվում ե Խասաուր գյուղի հարավում՝ Աբաս գյուղի մոտ և Խաստուրից մոտ 4—5 կիլոմետր հեռավորության վրա։*

Peeters-ի գրախոսականն Analecta Bollandiana-յում, T. LI, Fasc. 1 և 2. Bruxelles 1933, էջ 149—151) հետաքրքիր մի կարծիք է հայտնված, վոր Պևտինգերյան քարտեզի Chadas տեղանունը կապ ունի Փավստոսի մոտ հիշատակված «Բագրևանդայ և Արշարունեաց» Խադ յեպիսկոպոսի անվան հետ[1]։

Մարկվարտի այս լուսաբանությունը, վոր միանգամայն հավանական է՝ ցույց է տալիս, վոր Chadas ընթերցվածը կարող է Պևտինգերյան քարտեզում աղավաղված չլինել և հայերենում նույն տեղի անունը կարող է յեղած լինել «Խադայ» (տես ներքև՝ Armanas=Արամանայ)։

Ավելորդ չի լինի նմանապես մատնանշել, վոր Խորենացու պատմության մեջ Խադ անունը բազմաթիվ ձեռագրերում գըրված է «Խադդ» (տես Խորենացու պատմության Աբեղյանի և Հարությունյանի հրատարակությունը, Տփղիս 1913, էջ 279, 294 և 296՝ «Խադդայ» և «Խադդեայ»)։ Յեթե ճիշտ լինեն այս ընթերցվածները՝ այդ դեպքում Chadas-ի հին անունը կարելի յե յենթադրել հայերենում նաև «Խադդայ»։

Մեր նոր դիտողությունները Chadas-ի տեղադրության մասին ուշագրավ են առանձնապես այն տեսակետից, վոր Պևտինգերյան քարտեզում մատնանշված կայարանները, ինչպես կըտեսնենք այդ նաև այս ուսումնասիրության շարունակության մեջ, վորոշվում են հաճախ այնպիսի տեղերում, վորոնք պատմական հին վայրեր են և բնակելի յեն յեղել, հավանորեն, խալդական տիրապետության հնագույն շրջանում։

18. Chadas-ից 17 հռոմեական մղոն կամ մոտ 25 կիլոմետր հեռավորության վրա Պևտինգերյան քարտեզում նշանակված է Armanas կայարանը։

Աներկբայելի յե, իհարկե, վոր Armanas կայարանը կա-

---

[1] Ա. Խաչատրյանը Կուլտուրայի Պատմության Ինստիտուտում կարդացված իր զեկուցման մեջ (Թեզիս 14) Chadas-ը նույնացրել է այժմյան Զադ գյուղի հետ։ Սակայն այս յենթադրությունը հիմնավորված չէ տեղագրական և լեզվական ապացույցներով, ուստի և չի կարող ընդունվել։

տարելապես համապատասխանում է Հին Հայաստանի «Արամանայ» գյուղին, որը հիշվում է Ղազար Փարպեցու պատմության մեջ[1]։

Ղազար Փարպեցին պատմում է, որ Վարդան Մամիկոնյանն ուզեցել է ապստամբությունից առաջ անցնել Բյուզանդական կայսրության կողմերը։

> «Եւ եկեալ հասանէին — ասում է նա — ի գիւղ մի, որոյ անունն էր Արամանայ, ի նահանգին Բագրաւանդայ, մերձակայ սահմանակից Բասենոյ և Տուարծատափու. ուր և սակաւ ինչ աւուրս կամեցեալ հանգչել, և դուշ եգեալ ճանապարհն գնալ պատրաստէին ստիպով» (տես «Ղազարայ Փարպեցւոյ, Պատմութիւն Հայոց», Տփղիս 1904, II, գլ. Լ, էջ 57)։

Փարպեցու այս վկայությունից պարզ չերևում է, որ «Արամանայ» գյուղը գտնվել է այն հին ճանապարհի վրա, որը Հայկական Պար կամ Աղրի-դաղ լեռների հարավային կողմերով գնում էր Հունահայաստան։ Փարպեցու վկայության մեջ կարևոր է նաև այն, որ «Արամանայ» գյուղի տեղը ցույց է տրված Բագրեանդ գավառի արևմտյան ծայրում՝ Բասենի ու Տուարածատափի սահմանների մոտ։

Արդ՝ ի նկատի առնելով Փարպեցու, ինչպես և Պետինգերյան քարտեզի ցուցումները՝ դժվար չէ չեզրակացնել, որ Armanas—Արամանայի տեղը լինելու յեր այժմյան Խալյազում և Շեռյան գետի ձախ կողմում՝ Chadas—Խաստուրից դեպի հյուսիս-արևմուտք գնացող մեծ ճանապարհի շրջակայքում։

Բացի այդ, նույն աղբյուրների վկայություններից պարզ ու վորոշ հետևում է, որ հին Տուարածատափը գտնվել է

---

[1] Որ Armanas կայարանը համապատասխանում է «Արամանայ գիւղ»-ին՝ այդ ակնարկված է նաև պրոֆ. Մարկվարտի «Le berceau des Arméniens» հոդվածում (տես Revue des études arméniennes, Paris 1928, VIII, facs. 2, էջ 227), որը ստացվել էր Երևանում իմ «Հայաստանի հին ճանապարհները» տպագրության հանձնվելուց հետո (տես ընդարձակ իմ ծանոթությունը Գիտ. և Արվ. Ինստիտուտի Տեղեկագրում, № 5, էջ 83)։

վոչ թե այժմյան Անգափում, ինչպես ենթադրել է Հայկունին (տես «Բագրևանդ Ջրաբաշխ գաւառ», էջ 303), այլ այժմյան Շեռյան լեռների և Մերգեմիրի լեռնանցքի հարավային կողմերում (տես Լինչի և Ռուսական հին շտաբի տասը վերստանոց քարտեզները)։

Տուարածատափ գավառի նույն այս տեղադրությունը հաստատվում է նաև Արիստակես Լաստիվերտցու ուշագրավ մի վկայությամբ։

Նկարագրելով Տուղրուլ սուլտանի արշավանքը Մանազկերտից դեպի Բասեն՝ Լաստիվերտցին ևս վկայում է, որ Տուարածատափի տեղը գտնվել է Բասենից և «Անիկ» ամրոցից դեպի հարավ-արևելք, այսինքն՝ վերոհիշյալ Շեռյան լեռների հարավային կողմերում։

> «Յետ երից աւուրց—պատմում է Լաստիվերտցին—շարժեալ [Սուլտանն] ամենայն բանակաւն, խաղայ իջանէ ի Տուարածոյ տափ, և անտի իջանէ յընդարձակ դաշտն Բասենոյ առ անառ ամրոցաւն որ կոչի Անիկ» (տես «Պատմութիւն Արիստակեայ վարդապետի Լաստիվերտցւոյ», Թիֆլիս 1912, էջ 100)։

Վերև մատնանշված մեր նոր եզրակացությունները, ինձ թվում է, հնարավորություն են ընձեռելու գիտական արշավախմբերին ճշտելու տեղում թե Armanas—«Արամանայի» և թե Տուարածատափի տեղադրությունը։

19. Armanas կայարանից 12 հռոմեական մղոն կամ մոտ 18 կիլոմետր հեռավորության վրա գտնվել է ըստ Պևտինգերյան քարտեզի Andaga (Ռավեննացու մոտ՝ Andacas) կայարանը, որի մոտ նկարված են զույգ աշտարակներ։

Այս կայարանի որոշման համար հետաքրքիր է և ուշադրության արժանի, որ ռուսական հին շտաբի տասը վերստանոց քարտեզում այժմյան Կարադերբենտի լեռնանցքից մոտ 10 կիլոմետր հեռավորության վրա նշանակված է Эндек գյուղը, որի անունը նման է Andaga կամ Andacas կայարանի անվան։

Նույն այս գյուղն Ալիշանն իր «Այրարատ»-ում անվա-



Արաքս
Կաղզվան
Երուանդաշատ
Պարնաուտ
Կողբ
Անտաք
Andaga
Աղրի դաղ (Հայկական Պար)
Զրաբաշի լեռներ
Արամանայ
Armanas
Ալաշկերտ
Խասսուր (Chazdar)
Chadas
Ղարաքիլիսե
Colchion
Bagauna
Ուչ-քիլիսե
Դիդեմ
Դիադին
BAGAUNA-ANDAGA
ՈՒՂԵԳԻԾԸ
Դեպի Սատաղ և
Տիգրանակերտ

նում է Անդուկ (էջ 30 և 31), իսկ նրա հին անունը համարում է «Անտաք» (էջ 52)։

«Նախ Սամուէլ Կամրջաձորեցի—ասում է Ալիշանը—ի սմին գաւառէ ի սկիզբն ԺԱ դարու, յիշէ [զԾաւարաձորն] առանց նշանակելոյ զվիճակն, բայց զի աստ բնակեցան առ ժամանակ մի մեծ վարդապետքն Պետրոս և Անանիա, և յետո գնացին ի Նարեկ, իսկ առաջին տեղի բնակութեան նոցա Անտաք, զոր մարթ էր և զԱնտիոք քաղաք կարծել, ճահագոյն թուի ինձ Անդուկն գեօղ յիշեալ ի Հաւնունիս» («Այրարատ», էջ 52)։

Andaga կամ Andacas և վերոհիշյալ Эндек, Անդուկ, Անտաք անունների ակներև նմանությունը պարզ ու վորոշ մի ակնարկ է, անշուշտ, վոր Բասենի աբեղեկյան այս շրջանում կարող եր, երապես, յեղած լինել հնագույն ժամանակներում «Անդակ» անունով մի մեծ կենտրոնավայր կամ զինվորական պահակատեղի։

Սակայն հնագույն այդ «Անդակ»-ի տեղագրությունը դժվար է ըստ իս յենթադրել այժմյան Эндек գյուղում, վորովհետև Պևտինգերյան քարտեզում նշանակված տարածությունների համաձայն Andaga կամ Andacas կայարանն ավելի մոտ եր լինելու Արամանային, ինչպես և Բագավանին, քան այժմյան Эндек-ը։

Քարտեզի համապատասխան տարածությունը, ինձ թվում է, անհավանական կըլինի մերժել կամ սրբագրել, վորովհետև վերոհիշյալ մղոնաթվերի ուշադիր քննությունը ցույց է տալիս, վոր Պևտինգերյան քարտեզի մեջ նշանակված տարածությունները, հատկապես Artaxata—Satala ճանապարհագծում, համապատասխանում են գրեթե ճշտիվ այժմյան իրական տարածություններին։

Սույն ուսումնասիրության ընթացքում մենք ստացել ենք նույնիսկ այն տպավորությունը, վոր Հին Հայաստանի այս ճանապարհը, հավանորեն, չափված է յեղել և ունեցել է մղոնաքարեր։

**20.** Andaga (Ռավեննացու մոտ՝ Andacas) կայարանից

հետո Պևտինգերյան քարտեզում նշանակված է Barantea կայարանը, վորի հեռավորությունն Andaga-յից ցույց է տրված 26 հռոմեական մղոն կամ մոտ 38 կիլոմետր։

Barantea-յի անվան մեր նոր մեկնությունը խիստ կարևոր է, ինչպես կըտեսնենք, Հին Հայաստանի պատմական աշխարհագրության համար, ուստի և այս խնդիրը անհրաժեշտ է լուսաբանել մանրամասն ու ընդարձակ քննությամբ։

Barantea կայարանի անունը յես առաջարկում եմ սրբագրել և կարդալ *Banantea։ Այս պարզ ու ընդունելի ուղղումից հետո Պևտինգերյան քարտեզի Barantea-յին համապատասխան կըլինի, անշուշտ, հայկական Վանանդը կամ «Վանանտեա»-ն[1]։

Այս լուսաբանությանը չի կարող արգելք լինել *Banantea-յի ea կամ եա վերջավորությունը, վորովհետև Պևտինգերյան քարտեզը հայկական տեղանունները տալիս է գրեթե միշտ հին գրաբարի թեք հոլովների վերջավորությամբ, որինակ՝ Artaxata = Արտաշատա(յ), Bagauna = Բագաունա(յ), *Tsumbo = Ծումբո(յ) ևն։ Պարզ է ուրեմն, թե ինչու հին Վանանդի անունը ևս հիշատակված է քարտեզում իբրև *Banantea կամ «Վանանտեա(յ)»։

Լեզվական այս հետաքրքիր փաստը, վորի վրա հրավիրում եմ մասնագետ լեզվաբանների ուշադրությունը, կարոտ է, իհարկե, հատուկ քննության։

*Banantea և Վանանդ տեղանունների նույնացումը կարող է, ինչպես կըտեսնենք, յելակետ ծառայել նաև պատմական-աշխարհագրական կարևորագույն պրոբլեմների լուսաբանության։

21. Խորենացին իր պատմության մեջ ունի, ինչպես հայտնի յե, Վանանդ գավառի հնագույն տեղադրության, նաև «Վանանդ» տեղանվան ծագման մասին, հետևյալ վկայությունը՝

[1] Ինճիճյանի վկայությամբ Վանանդ գավառի անունը «ուրեք ուրեք գրի Վանանտ, որպէս առ Յովհաննու կաթողիկոսի», (տես «Ստորագրութիւն Հին Հայաստանեայց», Վենետիկ 1822, եջ 431)։

«Եւ ինքն [Վաղարշակ] արձակեալ զարևմտեայ բազմութիւնն՝ իջանէ ի տեղիս խոտաւէտս մերձ ի սահմանն Շարայի. զոր հինքն Անփայտ և վերին Բասեան կոչէին. իսկ յետոյ վասն հատուածի Վղընդուր Բուլղարայ Վնդայ, բնակելոյ ի տեղիսն՝ յանուն նորա անուանեցաւ Վանանդ. և անուանք շինիցն յանուն եղբարց և զարմից նորա անուանեալ կոչին մինչև ցայժմ» (տես II, Ձ, եջ 109)։

Խորենացու այս վկայության մեջ միանգամայն անհավանական ե, անշուշտ, վոր իբր թե վերոհիշյալ գավառն անվանվել ե Վանանդ բուլղարների առաջնորդ Վունդի անունով։ Պատմագիտական նորագույն ուսումնասիրություններից հայտնի յե, վոր բուլղար գաղթականներ կարող եյին բնակեցված լինել Լազիկայում կամ թերևս նաև Բարձր Հայքում միայն վեցերորդ դարում, մինչդեռ Վանանդ գավառի անունը հիշատակված ե հայ աղբյուրների մեջ հինգերորդ դարում (հմմտե Халатьянц, Армянские Аршакиды, Москва 1903, եջ 29—33 և 376)։

Նույն վկայության մեջ ուշագրավ ե սակայն Վանանդի մասին Խորենացու մյուս կարևոր տեղեկությունը։

Խորենացին, ինչպես վերև տեսանք, վկայում ե միաժամանակ, վոր հնագույն ժամանակներում Վանանդ ե անվանվել «անփայտ և վերին Բասենը», այսինքն՝ Բասենի հենց այն շրջանը, վորի միջով անցել ե Արտաշատից Սատաղ տանող հին ճանապարհը։ Իսկ այս վերջին վկայությունից, վորը վոչ մի հիմք չունենք համարելու անստույգ կամ անարժանահավատ՝ ինքնին արդեն հետևում ե, վոր Պևտինգերյան քարտեզի *Banantea կամ «Վանանտեա» կայարանը գտնվել ե վերին այս Բասենում, վորը հնագույն ժամանակներում կարող եր անվանված լինել Վանանդ հենց նույն այս «Վանանտեա»-ի անունով։

22. Ուշագավ ե վոր Խորենացու հիշած նույն այս շրջանը վերին Բասեն ե անվանվում հայ և ոտար մատենագրության նաև հետնագույն ժամանակի յերկերում։

Հակոբ Կարնեցին վկայում ե, որինակ, վոր

«ունի սինօռ Բասենս այս վերին մինչև ի Զարափխանան և ի Կաղզուան և ի Թարգմանն» (տես «Տեղագիր վերին Հայոց», հրատր. Կ. Կոստանյանցի, Վաղարշապատ 1903, էջ 20)։

Նմանապես և քուրդ պատմիչ Շերեֆեդդինը (տես «Այրարատ», էջ 16) հիշում ե նույն վերին Բասենում Ճիճագրակ գյուղի վիճակը (տես Ռուսական հին շտաբի տասը վերստանոց քարտեզում՝ Чиджарек), վորը գտնվում ե Ալաշկերտի դաշտից Երզրում գնացող արքունի այժմյան ճանապարհի վրա՝ Խորասանից դեպի հարավ։

Հենց այս Ճիճագրակ գյուղից վոչ շատ հեռու կարելի յե յենթադրել *Banantea կամ «Վանանտեա» կայարանի տեղը, վորի հեռավորությունը Adconfluentes կայարանից Պևտինգերյան քարտեզում ցույց ե տրված 30 հռոմեական մղոն կամ մոտ 44 կիլոմետր, իսկ Andaga-յից՝ 26 հռոմեական մղոն կամ մոտ 38 կիլոմետր։

23. Վերին Բասենի սահմանները յեղել են, ըստ յերևույթին, տարբեր զանազան դարաշրջաններում։

Արիստակես Լաստիվերտցու վկայություններից յերևում ե, վոր 11-րդ դարում նրա սահմանները համարվել են հյուսիսում վոչ թե վերոհիշյալ «Զարափխանան, Կաղզուանը և Թարգմանը», այլ Սալքորան։ Իսկ այս Սալքորայի մոտ գտնվող հարևան գավառն անվանվել ե Վանանդ կամ Փորակ։

Ուշագրավ են այդ մասին Լաստիվերտցու հետևյալ վկայությունները.

1. «Պատմութիւն Արիստակեայ վարդապետի Լաստիվերտցւոյ», Թիֆլիս 1912, գլ. Բ, էջ 12՝

«Իսկ թագաւորն [Վասիլ] անցեալ ի Բասեան, երկոււ և երիս պատգամաւորս առաքէ, .....և ինքն դէմ եդեալ անցանէ ընդ Բասեանն, և հասանէ ի Վանանդ կամ ի Փորակ»։

2. Նույնը, գլ. Գ, էջ 21—22՝

«Յետ այսորիկ իջանէ թագաւորն [Վասիլ] զօրօք

յընդարձակ դաշտն Բասենոյ, և առաքէ հեծեալս ի հ–ե թանուսական զօրացն կալանաւորս ապստամբին Փերսի. և ինքն խաղացեալ հասանէ ի սպառուածն Բասենոյ, ի տեղւոջն որ կոչի Սալքորա, և խոր փոսիւ պատնէշ արարեալ շուրջ զբանակաւն՝ դադարէ անդ ամսական աւուրբք կամ ևս առաւելագունիւք»։

Այս վկայություններից յերկրորդի մեջ հիշատակված Սալքորան պարզապես այժմյան Սալքորին է, վորը գտնվում է Արաքսի ափի մոտ՝ Խորասանից դեպի հյուսիս-արևելք և Մժնկերտից դեպի հարավ-արևմուտք[1] (տես Ռուսական հին շտաբի տասը վերստանոց քարտեզի վրա՝ Салькори)։ Իսկ առաջին վկայության մեջ մատնանշված Վանանդը կամ Փորակը մոտ եր լինելու, անշուշտ, վերոհիշյալ Սալքորային։

Յեթե Լաստիվերտցու հիշած Փորակը հնարավոր լինի նույնացնել այժմյան Փուրիկի հետ, վորը գտնվում է Դելիբաբայի հյուսիս-արևելյան կողմերում (տես տասը վերստանոց քարտեզում՝ Пурик), այդ դեպքում՝ Վանանդ-Փորակը, վորը նույնացվում է հաճախ հայ մատենագրության մեջ հիշատակված Փոքր Վանանդի հետ[2], կընկնի այժմյան Պեոփրիքեոյ գնացող արքունի ճանապարհից դեպի հյուսիս-արևելք, այսինքն՝ այն շրջանի մոտ, վորտեղ գտնվելու յեր *Banantea կամ «Վանանտեա» կայարանը։

Համեմատելով միմյանց հետ Լաստիվերտցու և Խորենացու վերոհիշյալ վկայությունները՝ դժվար չե նաև յեզրակացնել, վոր հին ժամանակներում Վանանդ գավառն ունեցել է, ըստ յերևույթին, ընդարձակ սահմաններ և նրա մեջ է յեղել, հավանորեն, բացի Վանանդ—Փորակից նաև «անփայտ և վերին Բասենի» հարևան շրջանը։

24. Barantea-յից հետո Պևտինգերյան քարտեզում նշանակված է Adconfluentes կայարանը, վորի հեռավորությունը

---

[1] Համառ Ալիշան, Այրարատ, եջ 36։

[2] Տես Ինճիճյան, «Ստորագրութիւն Հին Հայաստանեայց», եջ 432, Ալիշան, «Այրարատ», եջ 75—76 և Հյուբշման, «Հին Հայոց տեղւոյ անունները», Թրգմ. Պիլեզիկճյանի, եջ 419։

Calcidava-յից (Ռավեննացու մոտ՝ Chalchidara=Գաղտառիճ) ցույց է տրված 57 հռոմեական մղոն կամ մոտ 84—85 կիլոմետր։

Յելակետ ունենալով այս տարածությունը, ինձ թվում է, կարող ենք Adconfluentes կայարանի տեղը վորոշել ավելի հիմնավոր կերպով, քան այդ արել է Ռ. Կիպերտը։

Adconfluentes-ի տեղադրությունը վորոշելիս պետք է, իմ կարծիքով, ուշադրության առնել նաև Պեյտինգերյան քարտեզի նկարը, վորին Արաքս գետը նշանակել է Barantea և Adconfluentes կայարանների միջև և վերջին այս կայարանը մատնանշել է իբրև գետի արևմտյան կողմում գտնվող նախընթաց կայարան՝ Barantea-յից 30 հռոմեական մղոն կամ մոտ 44 կիլոմետր հեռավորության վրա։

Արդ՝ խիստ ուշագրավ է ու հետաքրքիր, վոր վերոհիշյալ 84—85 կիլոմետր տարածության համեմատ, այժմյան Գաղտառիճից Քեոփրիքեոյ գնացող ճանապարհի վրա, Adconfluentes կայարանի տեղը վորոշվում է իրոք վոչ թե գետախառնուրդի մոտ, ինչպես յենթադրել է Ռ. Կիպերտը, այլ քարտեզի նկարի համաձայն՝ իբրև նախընթաց կայարան։

Ի նկատի ունենալով, բացի այդ, վոր վերոհիշյալ տարածությունը Calcidava-յից մինչև Adconfluentes (=57 հռոմ. մղոն կամ մոտ 84—85 կիլոմետր) համապատասխանում է այժմյան իրական տարածությանը Գաղտառիճից մինչև Հասանղալա՝ անհավանական չի լինի ըստ իս յենթադրել, վոր Adconfluentes կայարանի տեղը կարող եր լինել այժմյան Հասանղալայում։

Տարածությունների վերաբերյալ իմ հաշիվը անհրաժեշտ եմ համարում մեջ բերել ընդարձակորեն։

Այժմյան տարածությունը Աշկալայից մինչև Երզրում Լինչի մոտ ցույց է տրված (տես «Армения», Тифлис 1910, եջ 287) 49¾ վերստ կամ մոտ 53 կիլոմետր։ Վորովհետև այժմյան հեռավորությունը Գաղտառիճի ու Աշկալայի միջև մոտավորապես 7 կիլոմետր է, ուստի և այժմյան տարածությունը Գաղտառիճից մինչև Երզրում լինելու յե 46 կիլո-

մետր։ Հայտնի է նույնպես, որ այժմյան տարածությունը Երզրումից մինչև Հասանղալա 37 վերստ է, այսինքն՝ մոտ 39 կիլոմետր (տես Ելիզե Ռեկլյու, «Ռուսական Հայաստան կամ Արաքսի ավազանը», թրգմ. Մխարանի, Վաղարշապատ 1891, էջ 82)։ Պարզ է, ուրեմն, որ այժմյան հեռավորությունը Գաղտառիճից մինչև Հասանղալա, որ ընդամենը մոտ 85 կիլոմետր է, համապատասխանում է վերոհիշյալ հեռավորության Calcidava-յից մինչև Adconfluentes (=57 հռոմ. մղոն կամ մոտ 84—85 կիլոմետր)։

25. Adconfluentes կայարանից մինչև Calcidava Պևտինգերյան քարտեզում նշանակված են հետևյալ կայարանները՝ Adconfluentes 10 Datamisa 20 Tharsidarate 15 Antisparate 12 Calcidava (Ռավեննացու մոտ՝ Chalchidara)։

Այս կայարաններից ճշտիվ վորոշվում է բացի Adconfluentes-ից նաև Calcidava կայարանը[1]։

Սատաղից Բագավան տանող ճանապարհին Պևտինգերյան քարտեզում նշանակված են յերկու գետ՝ մեկն Արաքս գետն է — Adconfluentes և Barantea կայարանների միջև— վորի ուղղությունը սխալ է ցույց տրված, իսկ մյուսը՝ Յեփրատ գետն է (այժմյան Կարա-սուն), վորն անցնում է Calcidava կայարանի մոտով։

Կոնրադ Միլլերը, անտես առնելով այդ գետերի դասավորությունը, վոր բավականաչափ պարզ է և վորոշ, Barantea-յի և Adconfluentes-ի միջև անցնող գետը համարում է Յեփրատ—Արածանին, իսկ Calcidava-յի մոտ հոսող գետը՝ հին Մուրցը, այժմյան Եգրի—Արադը (տես Itineraria Romana, էջ 745—746, նաև նրա բացատրական քարտեզը № 242)։

---

[1] Ա. Խաչատրյանը Կուլտուրայի Պատմության Ինստիտուտում կարդացած իր զեկուցման մեջ (Թեզիս 14) վերոհիշյալ Tharsidarate կայարանը համապատասխան է յենթադրում այժմյան «Թասմաձոր»-ին, վորը գտնվում է Երզրումից դեպի հյուսիս-արևելք։ Նման համեմատությունները, վոր հիմնավորված չեն լեզվաբանորեն և հակասում են միաժամանակ Պևտինգերյան քարտեզում մատնանշված տարածություններին, չեն կարող, իհարկե, ճիշտ լինել, ուստի և ակներևաբար անընդունելի յեն։

Սակայն Պևտինգերյան քարտեզի նկարից յերևում է, վոր Յեփրատ (Կարա-սու) գետն անցնելիս են յեղել Calcidava կայարանի մոտ, վորը գտնվել է այդ գետի աջ ափին, իսկ Արաքսը Barantea և Adconfluentes կայարանների միջև, վորոնք նշանակված են Արաքսի աջ և ձախ կողմերում։

Calcidava-յի տեղագրության վերաբերյալ քարտեզի արժեքավոր այս ցուցումը Միլլերը և Կիպերտը միանգամայն աչքաթող են արել, մինչդեռ այդ ցուցման ոգնությամբ պարզ վորոշվում է Calcidava-յի թե անունը և թե տեղը։

Սատաղից Քեոփրիքեոյ տանող ճանապարհի վրա՝ Արևմտյան Յեփրատի աջ ափին և հենց գետի անցքի մոտ, ինչպես մատնացույց է արված Պևտինգերյան քարտեզում, այժմ իսկ գտնվում է Գաղտաուրճ գյուղը[1], վորը համապատասխանում է Calcidava կամ Chalchidara կայարանին։ Ռավեննայի Անանուն աշխարհագրի մոտ այս կայարանի անունն ավելի քիչ է աղավաղված, քան Պևտինգերյան քարտեզում։

Calcidava և Chalchidara սխալ ընթերցումները յես առաջարկում եմ ուղղել *Chalchdiara կամ *Chalchdiaris և այս պարզ ու հավանական սրբագրությունից հետո՝ *Chalchdiaris-ը[2], ինչպես տեսնում ենք, թե անունով և թե իր տեղագրությամբ կատարելապես համապատասխան կլինի Հին Հայաստանի Խաղտոյ առիճին, այժմյան Գաղտաուրճ գյուղին։

Պետք է ասել, վոր այժմյան ընդարձակ քարտեզների վրա կան նշանակված իրարից վոչ շատ հեռու յերկու Գաղտաուրճ գյուղ (Լինչի քարտեզի վրա՝ Kagdarich, ռուսական հին շտաբի տասը վերստանոց քարտեզի վրա՝ Кягдарич Н. և Кягдарич В.)։ *Chalchdiaris կայարանը մեր կարծիքով, արևմտյան Գաղտաուրճն է, վորը գտնվում է Յեփրատ գետի,

---

[1] Տես Ինճիճյան Հ. Ղ., «Աշխարհագրութիւն չորից մասանց աշխարհի», Մասն Ա, Վենետիկ, 1806, էջ 79։

[2] Ուշագրավ է, վոր *Chalchdiaris-ի մեջ դ բաղաձայնը տառադարձվել է lch։ Ռավեննացու Chalchidara կարևոր ու հետաքրքիր ընթերցվածի վրա հրավիրում ենք մասնագետ լեզվաբանների ուշադրությունը։

այժմյան Կարա-սույի, հյուսիսակողմը և Սերչեմեսո-ի արևմտակողմը՝ այժմյան Աշկալայից մոտ 7 կիլոմետր դեպի հյուսիս-արևելք։ Նույն տեղում գտնվել ե, անշուշտ, և հին Խաղտոյ առիճը, վորը յեղել ե նշանավոր բերդ։

Խաղտոյ առիճի մասին կարևոր են, գլխավորապես, մատենագրական հայ աղբյուրների հետևյալ վկայությունները.

1. «Պատմութիւն Արիստակեայ վարդապետի Լաստիվերտցւոյ», Թիֆլիս 1912, գլ. Գ, եջ 22՝

   «Իսկ առաքեալքն ի Թագաւորէն [Վասլէ] կալեալ զՓերս և զԱնդրոնիկէ զնորուն փեսայն, որ էր համախորհ նորին, և ածեալ մինչև յամուրն որ կոչի Խաղտոյ առիճ ի սպառուածն Կարնոյ, և հասեալ յագարակն՝ որ հայի ընդդէմ ամրոցին. իջևանս արարեալ, և յառաջ ածեալ զՓերսն և զԱնդրոնիկոսն՝ հատին զգլուխս նոցա»։

2. Նույնը, գլ. Ժ, եջ 64՝

   «Քանզի մինչդեռ ճաշաժամուն ի սեղանն էին, հասին կալանաւորք և առին զնա [զհայրապետն Պետրոս], տարան եդին ի բերդն՝ որ կոչի Խաղտոյ առիճ»։

3. «Ստեփաննոսի Տարօնեցւոյ Ասողկան, Պատմութիւն տիեզերական», Ս. Պետերբուրգ 1885, III. ԺԵ, եջ 192՝

   «և խոստանայ տալ նմա [կիւրոպաղատին Դաւթի] զԽաղտոյ-առիճ Կղէսուրաւն, զՉորմայրի և զԿարին, զԲասեան և զՍեւուկ բերդակ, որ է Մարդաղի, զՀարք և զԱպահունիս, (զորս և ետ իսկ), որպէս զի զօր առաքեսցէ յօգնականութիւն նմա»։

4. Նույնը, III. ԽԳ, եջ 278՝

   «Եւ դարձաւ նա [Թագաւորն Վասիլ] ընդ Կարին ընդ Խաղտոյառիճ ի Կոստանդնուպօլիս»։

Մեջ բերված վկայություններից առաջինում պարզ ասված ե, վոր «ամուրն որ կոչի Խաղտոյ առիճ» գտնվում էր «ի սպառուածն Կարնոյ», այսինքն՝ Կարին գավառի սահմանում։ Հիմնվելով այս վկայության վրա՝ Ն. Ադոնցը միանգամայն ճիշտ վորոշել ե, վոր հին Խաղտոյ առիճի մոտով անցել ե Կարին և Դերջան գավառների սահմանը (տես «Ар·


ANDAGA - CHALCHDIARA
ՈՒՂԵԳԻԾԸ
Դեպի Սատաղ
Andaga
Adconfluentes
(Datamisa)
(Tharsidarate)
Elegeia
(Autisparate)
Chalchdiara

мения в эпоху Юстиниана», էջ 52)։ Իսկ որ Խաղտոյ առիճը գտնվել է Երզրումից դեպի Պոնտոս և Փոքր Ասիա գնացող ճանապարհի վրա՝ այդ ևս պարզ ու որոշ վկայում է Ասողիկ պատմիչը վերոհիշյալ չորրորդ վկայության մեջ։ Նրա ասելով՝ բյուզանդական Վասիլ Բ. կայսրը Տայքից վերադարձել է Պոլիս «ընդ Կարին» և «ընդ Խաղտոյառիճ»։

Քննության առնված *Chalchdiaris կայարանի անվան ու տեղի ճշտությամբ որոշվում է ոչ միայն Սատաղից Բագավան գնացող ճանապարհի ուղղությունը, այլև լուսաբանվում է, ինչպես կտեսնենք, պատմական նշանավոր վայրերի՝ Ելեգիայի և Սինորիայի տեղագրության կարևոր խնդիրը, որը մինչև այժմ համարվել է վիճելի ու անորոշ։

26. Պևտինգերյան քարտեզում Խաղտոյ առիճից Սատաղ գնացող ճանապարհի վրա մատնանշված են հետևյալ կայարանները՝ Calcidava 15 Sinara 22 Lucus Basaro 15 Aegea (Ռավեննացու մոտ՝ Egea) 20 Darucinte 20 Salmalasso 20 SATALA։

Կոնրադ Միլլերը մատնացույց է արել արդեն, որ հիշյալ կայարաններից Sinara-ն այն հայտնի Sinoria ամրությունն է, որը հիշատակված է Ստրաբոնի և ուրիշ հույն ու հռոմայեցի հեղինակների մոտ[1]։

Sinoria-ն կամ Sinara-ն, ինչպես վկայում են Ստրաբոնը և Պտղոմեոսը, գտնվել է Եփրատ (=Կարա-սու) գետի ափին։ Եվ իրավ, Պևտինգերյան քարտեզի Sinara կայարանը, որը գտնվել է *Chalchdiaris-ից 15 հռոմեական մղոն կամ մոտ 22 կիլոմետր հեռավորության վրա, ըստ այս տարածության, ընկնում է այժմյան Գաղտառիճից Սատաղ տանող ճանապարհի վրա՝ ճիշտ և ճիշտ Եփրատ գետի մոտ՝ Աշկալայից մոտ 15 կիլոմետր դեպի հյուսիս-արևմուտք։

Որոշվում է այսպիսով այն մոտավոր վայրը, որտեղ

---

[1] Համեմ. Σι'ναρα (Ptol.), Σι'νορα (Plut.), Σινορι'α (Strab.), Synhorium (Amm. Marc.) և ուրիշ. տես Itineraria Romana, էջ 677 և Th. Reinach, Mithridate Eupator, Paris 1890, էջ 387։

հնագետները պետք է հետախուզումներ կատարեն և վորոնեն հին Սինորիայի տեղը։

Պետք է ասել, վոր այս յեզրակացությունը ևս տարբեր է Կ. Միլլերի և Ռ. Կիպերտի յենթադրություններից։ Միլլերը Սինարայի տեղը յենթադրում է այժմյան Սընկառիճում, իսկ Կիպերտն այժմյան Ալաջայում։ Մեր առաջարկած բացատրությունը թվում է ավելի ստույգ ու հիմնավոր, վորովհետև այդ բացատրությանը յելակետ է ծառայել Calcidava (= *Chalchdiaris) կայարանի վերև ճշտված տեղադրությունը։

Sinara կայարանի նույնացումը հին հեղինակների Σι΄ναρα, Σι΄νορα, Σινορι΄α և Synhorium նշանավոր ամրության հետ, ինչպես և նրա տեղագրության մոտավոր վորոշումը, լուսաբանում են մի քանի մութ մնացած տեղագրական հարցեր, վոր վերաբերվում են Միհրդատի և Տիգրանի պատմական շրջանին։

Պլուտարքոսի վկայությունից (Pompeius XXXII) գիտենք, վոր Միհրդատը, պարտություն կրելով Պոմպեոսից, ապավինում է Σι΄νορα ամրությունը, ուր պահվում եյին նրա գանձերը, և այստեղից փախչում Կոլխիդա։ Միհրդատի փախուստի այս ճանապարհը, ինչպես տեսնում ենք, վորոշվում է վերոհիշեալ բացատրությամբ այժմյան Աշկալայի վրայով ու Երզրումի և Տայքի ուղղությամբ։

Սինորիայի մասին ավելի կարևոր է ու եական Ստրաբոնի վկայությունը։ Համաձայն Ստրաբոնի Սինորիան նշանավոր մի ամրություն է յեղել Միհրդատի թագավորության մեջ և գտնվել է Պոնտոսի և Մեծ Հայքի սահմանում (XII, 3, 28,)։ «Հենց այդ պատճառով ասում է Ստրաբոնը—Թեոֆանն անվանել է այդ ամրությունը Συνορι΄α»[1],

Հիմնվելով կարևոր այս տեղեկության վրա՝ կարող ենք, ուրեմն, հաստատ կերպով յեզրակացնել, վոր Տիգրան

---

[1] Σύνορος հունարեն նշանակում է «սահմանակից», իսկ συνορι΄α «սահմանակցություն»։ Ինչպես հայտնի յէ, հայերենում ևս «սահման» նշանակությամբ գործածական է այժմ «սինոռ» բառը։

Մեծի ժամանակ Հայաստանի հարավ-արևմտյան սահմանը հասնում էր մինչև այժմյան Կոպ-Դաղի լեռները, որոնց հարավ-արևելյան ստորոտներում, Եփրատ գետի մոտ, գտնվել է Սինորիա նշանավոր ամրությունը՝ Պևտինգերյան քարտեզի Sinara կայարանը։

27. Մեր այս եզրակացությունները Sinara կայարանի, ինչպես և Հայաստանի հարավ-արևմտեան սահմանի մասին Տիգրան Մեծի ժամանակ, կտրականապես ժխտում է սակայն Ա. Խաչատրյանը Կուլտուրայի Պատմության Ինստիտուտում կարդացած իր վերոհիշյալ զեկուցման մեջ («Առևտրական և ռազմական ճանապարհները Հին Հայաստանում»)։

Այս զեկուցման 18-րդ և 19-րդ թեզիսները, վոր արդեն հրապարակված են, մեջ եմ բերում անփոփոխ (տես զեկուցման մեքենագրված թեզիսները, էջ 4)՝

1. «Sinara կայարանի նույնացումը Ստրաբոնի հիշած Sinoria-յի հետ Փոքր-Հայքում հիմնված է մատենագրի տված նկարագրի սխալ բացատրության վրա, ուստի և կարելի չէ ընդունել».

2. «Նախընթաց անունների նույնացումից հետևցրած այն «պատմական խիստ կարևոր» արդյունքը, վոր իբր թե Տիգրան Մեծի ժամանակ Հայաստանի սահմանը հասնում էր մինչև Կոփ լեռան հարավային ստորոտը՝ Աշկալե-Շողանի ձոր, միանգամայն զուրկ է պատմական ու աշխարհագրական հիմունքներից»։

Վորովհետև Խաչատրյանի այս սխալ պնդումները կարող են թյուրիմացությունների առիթ ծառայել, մասնավորապես այն ընթերցողների շրջաններում, վորոնք ծանոթ չեն դասական հեղինակների հաղորդած տեղեկություններին՝ անհրաժեշտ է, անշուշտ, նույն այս խնդիրների վրա կանգ առնել հանգամանորեն և մեջ բերել Ստրաբոնի և Պլուտարքոսի համապատասխան վկայություններն ընդարձակ բովանդակությամբ։

Նպատակահարմար կլինի, իհարկե, տալ այդ վկա-

յունների բառացի թարգմանությունը հունարենից, վոր կարող ե տարբեր լինել ֆրանսերեն կամ գերմաներեն այն թարգմանություններից, վորոնցից ոգտվել ե Խաչատրյանը։

1. Strabo, Geographica, ed. A. Meineke, Vol. II, Lipsiae 1915, XII, 3, 28՝

«Յերբ զորեղացավ Միհրդատ Եվպատորը՝ նա տիրեց Կոլխիդային և այն բոլոր յերկիրներին, վոր նրան հանձնել եր Անտիպատորը՝ Սիսիդի վորդին։ Նա այնքան հոգս եր քաշում այդ տեղերի մասին, վոր կառուցել եր նրանց մեջ յոթանասուն և հինգ ամրություններ, վորոնց մեջ գրել եր իր գանձերի մեծագույն մասը։ Դրանցից ամենանշանավորներն եյին Հիդարան, Բասգոյդարիզան, նաև Սինորիան, վորը սահմանակից եր Մեծ Հայքին. և հենց այդ պատճառով Թեոֆանն անվանել ե այդ տեղը Սինորիա [Συνορια]։ Իսկ Պարիադրեսի ամբողջ լեռնային շրջանը, լինելով ջրառատ և անտառաշատ և անջատված լինելով զանազան կողմերից թեք ձորերով և սեպ լեռնագագաթներով՝ այնպիսի մեծ հարմարություններ ունի, վոր այնտեղ եր հենց շինել Միհրդատը գանձերի պահեստատեղերի մեծագույն մասը. և, իրապես, վերջ ի վերջո, ինքը ևս, յերբ նրան հետապնդում եր Պոմպեյոսը, ապավինեց Պոնտական թագավորության այս հեռավոր կողմերը. և գրավելով Դաստեյրայի մոտ Ակիլիսենեյի ջրառատ լեռը (մոտ եր նաև Եփրատը, վորը բաժանում եր Ակիլիսենեն Փոքր Հայքից)՝ մնաց այստեղ, մինչև վոր նա, պաշարված լինելով, հարկադրրված յեղավ փախչել լեռներով Կոլխիդա և այնտեղից Բոսփոր։ Իսկ Պոմպեյոսը այս տեղի մոտ հիմնեց Փոքր Հայքում Նիկոպոլիս քաղաքը, վորը մնում ե մինչև այժմ և շատ լաւ բնակված ե»։

2. Plut., Pompeius XXXII՝

«Վերջապես նրանք (փախչելիս) հասան Սինորա ամրությունը, որը լեփլեցուն եր թագավորական փողերով և թանգարժեք իրերով..... Այստեղից նա (Միհր-

դատը) շարժվեց Տիգրանի մոտ Հայաստան, սակայն յերբ սա մերժեց և Նրա գլխի համար հայտարարեց հարյուր տաղանդ վարձատրություն՝ Նա անցավ Յեփրատի ակունքների մոտով և փախավ Կոլխիդայի միջով»։

Անտես առնելով այս վկայություններից յերկրորդը և հիմնվելով առաջին միայն վկայության վրա՝ Խաչատրյանը կարծում ե, վոր Սինորիան պետք ե գտնվեր Դաստեյրայի ու Նիկոպոլիսի մոտ։ Նրա այս պնդումը, վորը չե հետևում բնավ Ստրաբոնի վկայությունից և հակասում ե դասական մյուս աղբյուրների հաղորդած տեղեկություններին՝ ակներև մի խեղաթյուրումն ե, անշուշտ, պատմական իրական փաստերի։

Դասական հեղինակների վկայություններից հայտնի յե, վոր Պոմպեյոսի 66 թվի (նախ քան Քր.) արշավանքը Միհրդատի դեմ ունեցել ե հետևյալ ընթացքը։ Միհրդատը պաշարված լինելով Դաստեյրայի մոտ, ստիպված ե յեղել թողնել Ստրաբոնի վերև հիշած շրջանը և նահանջել մի այլ շրջան։ Սակայն Պոմպեյոսը հետամտելով Նրան՝ հասնում ե յերրորդ որը հետևից և շրջապատում Նրան նորից մի նեղ կիրճում։ Յեվ հետևյալ գիշերը տեղի յե ունենում այդտեղ Միհրդատի արյունահեղ պարտությունը։ Վերջին այս կռվից հետո Միհրդատին հաջողվել եր, ինչպես մանրամասն հաղորդում ե Պլուտարքոսը, փախչել նախ Սինորիա և ապա Յեփրատի ակունքների մոտով Կոլխիդա և Կոլխիդայից Բոսփոր։

28. Մի կողմ թողնելով Խաչատրյանի բացատրությունը Սինորիայի մասին, վորն ակներև մի սխալ ե՝ Ստրաբոնի վերոհիշյալ վկայության մեջ վիճելի յե համարվում Դաստեյրայի տեղադրությունը։

Պրոֆ. Մարկվարտն իր վերջին աշխատություններից մեկում («Die Genealogie der Bagratiden und das Zeitalter des Mar Abas und Ps. Moses Chorenathsi», տես Caucasica, Fasc. 6, 2 Teil, Leipzig 1930, եջ 59—63) մի նոր կարծիք ե հայտնել, վոր Դաստեյրայի տեղը Ստրաբոնի վկայության

համաձայն կարելի է ենթադրել Նիկոպոլիսի մոտ, իսկ գիշերային կռիվը և Միհրդատի վերջնական պարտությունը՝ Եկեղեաց գավառում։

Մարկվարտը Ստրաբոնի տպագրված բնագրի tês Akilisênês ... oros ուղղումը կարդում է ձեռագրի համաձայն tês Aggolisênês... oros և Aggolisênê-ն համապատասխան է համարում Պտղոմեոսի հիշած (V, 6, 18) Aitulanê գավառին, որի մեջ, նրա կարծիքով, գտնվել է Նիկոպոլիսը։

Մարկվարտի այս ենթադրությունը հակասում է սակայն թե Ստրաբոնի և թե Կասսիուս Դիոնի վկայություններին։

Ստրաբոնը, ինչպես վերև տեսանք, պարզ վկայում է, որ Դաստեյրայի մոտ է գտնվել «Եփրատ գետը, որը Ակիլիսենեն բաժանում էր Փոքր-Հայքից», իսկ Կասսիուս Դիոնը հաղորդում է (36, 50, 3,), որ Նիկոպոլիս քաղաքը հիմնված է կռվի այն վայրում, ուր Պոմպեյոսը հաղթել էր Միհրդատին։

Դաստեյրայի տեղադրության մասին հավանական է թվում ինձ ոչ թե Մակվարտի, այլ Ադոնցի ենթադրությունը։

Ադոնցի կարծիքով (տես Армения в эпоху Юстиниана, էջ 54)՝ Ստրաբոնի հիշած Դաստեյրան համապատասխանում է այժմյան Դոստալին, որը գտնվում է Կամախի և Ակնի միջև. ուրեմն՝ հենց համաձայն Ստրաբոնի վկայության՝ թե Եփրատ գետի մոտ և թե Փոքր-Հայքի ու Ակիլիսենեյի սահմանում։ Պետք է ի նկատի ունենալ, որ Միհրդատի ժամանակ Ակիլիսենեն եղել է, ինչպես միանգամայն ճիշտ ենթադրում է Ադոնցը, խիստ ընդարձակ մի շրջան և բովանդակել է իր մեջ ոչ միայն հին Հայաստանի Եկեղեաց գավառը, այլ, հավանորեն, նաև Դարանաղին, Մանանաղին, Աղյուսը և Մզուրը (տես նույնը, էջ 54—55)։

Որ Դաստեյրայի ու այժմյան Դոստալի նույնացումը կարելի է հաջող և ընդունելի համարել՝ այդ ցույց են տա-

լիս նաև ներքև մեջ բերված մեր դիտողությունները Դաստեյրայի հեռավորության մասին Նիկոպոլիսից։

Կարևոր է նախ մատնանշել, որ այժմեան Դոստալը հիշատակված է նաև Տայլորի մոտ Զիմարայից մոտ 10—12 կիլոմետր հեռավորության վրա և այժմյան Պյուրկից (=Nicopolis) Զիմարա (=Zimara) տանող ճանապարհի վրա, որը մանրամասն նկարագրված է նրա «Journal of a tour in Armenia» աշխատության մեջ[1]։ Տայլորի նկարագրած այս ճանապարհը պարզապես Պևտինգերյան քարտեզի Nicopolis—Zimara ճանապարհագիծն է, որի ուղղությունը ճիշտ է որոշված թե Ադոնցի մոտ (տես Армения в зпоху Юстиниана, էջ 79—80) և թե Կոնրադ Միլլերի բացատրական քարտեզում (տես Itineraria Romana, 679—680)։

Պևտինգերյան քարտեզում Նիկոպոլիսի հեռավորությունը Զիմարայից ցույց է տրված 75 հռոմեական մղոն կամ մոտ 111 կիլոմետր։ Պարզ է, ուրեմն, որ տարածությունն այժմյան Դոստալից մինչև Նիկոպոլիս—Պյուրկ պետք է լինի մոտավորապես 100 կիլոմետր։

Այս տարածությունը մի նոր ապացույց է դարձյալ Դաստեյրայի ու Դոստալի նույնության։

Պոմպեյոսը, հետամտելով Միհրդատին, որը նահանջելու էր, բնականաբար, արագացրած յերթով, կարող էր հասնել Դոստալից Պյուրկ ճիշտ և ճիշտ միայն «յերրորդ որը», ինչպես այդ վկայում են հին հեղինակները։

Ճիշտ պետք է համարել ըստ այսմ և Կասսիուս Դիոնի հաղորդած տեղեկությունը, որ Նիկոպոլիսը հիմնված է յեղել ոչ թե Դաստեյրայում, ինչպես յենթադրում է Մարկվարտը, այլ Պոմպեյոսի հաղթության և Միհրդատի վերջնական պարտության վայրում, այսինքն Դաստեյրայից մոտ

[1] Տես Journal of the Royal Geographical Society, vol. 38, London 1868, նաև նույն աշխատության Астафьев-ի ռուսերեն թարգմանությունը՝ „Материалы для географии Азиятской Турции", Тифлис 1874, приложение II к тому II „Изв. Кавк. Отд. Рус. Геогр. Общества"։

100 կիլոմետր հեռավորության վրա գտնվող այժմյան Պյուրկում։

Միանգամայն հասկանալի յե նույնպես, վոր Ստրաբոնի հիշած Սինորիան, ուր Միհրդատը փախել եր Նիկոպոլիս—Պյուրկից, չեր կարող լինել վոչ Դաստեյրայի, վոչ էլ Նիկոպոլիսի մոտ, այլ պետք ե գտնվեր Մեծ Հայաստանի և Փոքր Հայքի սահմանում՝ վերև վորոշված տեղում։

Վոր մեր յեզրակացությունը Սինորիայի տեղագրության մասին ստույգ ե ու անվիճելի՝ այդ հաստատում են Մարկվարտի նոր դիտողությունները, վոր մեջ են բերված նրա վերոհիշյալ աշխատության մեջ (տես «Die Genealogie der Bagratiden», եջ 63)։

Մարկվարտը ևս հանգել ե այժմ նոր յեզրակացության, վոր Տիգրան Մեծի ժամանակ Դերջան գավառը պատկանել ե, հավանորեն, Միհրդատին, իսկ սրա վերջնական պարտությունից հետո, «Ակիլիսենեն և Դերջանը և թերևս նաև Կարենիտիսը» կցվել են Հայաստանին։

Նրա յենթադրությունը հավանական չե, ինչպես տեսնում ենք, Կարենիտիս գավառի նկատմամբ, վորն ըստ մեր յեզրակացության պատկանել ե Տիգրան Մեծին։

Հակառակ, ուրեմն, Խաչատրյանի պնդումներին՝ մեր խիստ կարևոր յեզրակացությունը, վոր Տիգրան Մեծի ժամանակ Հայաստանի հարավ-արևմտյան սահմանն անցնում եր Sinara — Սինորիայի մոտ և հասնում մինչև այժմյան Կոպ-Դաղի լեռները՝ զուրկ չե վոչ պատմական, վոչ էլ աշխարհագրական հիմունքներից։ Ընդհակառակը՝ այս յեզրակացությամբ պարզվում ե միաժամանակ և Միհրդատի փախուստի ամբողջ ճանապարհը։

20. Sinara կայարանից 22 հռոմեական մղոն կամ մոտ 33 կիլոմետր հեռավորության վրա Պևտինգերեան քարտեզում մատնացույց ե արված Lucus Basaro կայարանը։

Lucus լատիներեն նշանակում ե «պուրակ» կամ «անտառակ», ուրեմն՝ Lucus Basaro կարելի յե հասկանալ իբրև մի անտառակատեղի, վորն անվանվել ե Basaro։

Այս Basaro տեղանվան նկատմամբ յես առաջարկում եմ հավանական մի լուսաբանություն։ Basaro անվան ուղիղ ընթերցվածը հնարավոր է, իմ կարծիքով, յենթադրել *Bagara։ Իսկ այս սրբագրությունից յետո *Bagara-ն կարող է ըստ իս համապատասխան լինել հին «Բագաուիճ»-ին[1], վորը գտնվել է, ինչպես և Sinara-ն, միևնույն Դերջան գավառում։

Կոնրատ Միլլերն իր Itineraria Romana աշխատության մեջ առանձնապես մատնանշել է, վոր Պևտինգերեան քարտեզում սովորական են G և S տառերի շփոթումները (տես եջ LII)։ Նման աղճատումներ մատնացույց են արված նաև Մարկվարտի «Südarmenien und die Tigrisquellen» ուսումնասիրության մեջ. որինակ Պտոլեմեոսի ΑΡΤΑΓΙΓΑΡΤΑ-ն և Ռավեննացու ΕΤΑΓΙΓΑΡΤΑ-ն կարող են, նրա կարծիքով, աղավաղումն լինել *ΑΡΓΑϹΙΓΑΡΤΑ-յի (տես եջ 33-37)։

Վոր *Bagara-յի նաև ara վերջավորությունը համապատասխան է լինելու «առիճ»-ին՝ այդ ևս հավանական է, վորովհետև, ինչպես վերև տեսանք, հին «Խաղտոյառիճին» համապատասխանում են Պևտենգերեան քարտեզի և Ռավեննացու Calcidava (= *Calcid-ara) և Chalchidara ընթերցվածները։

Basaro տեղանվան նույնացումով Բագաուիճի հետ չե վորոշվում նրա տեղը համանուն այժմյան գյուղում։ Lucus Basaro-ն (=*Bagara) գտնվել է, ինչպես վերև ասացինք, վոչ թե Բագաուիճ գյուղում, այլ նույն այդ անունը կրող անտառակում և, հավանորեն, Յեփրատ գետի արևմտակողմը տարածվող «Բագառճոյ դաշտ»-ում, վորը հիշատակված է Ասողիկի մոտ։

Ասողիկ, Ս. Պետերբուրգը 1885, III, Իէ, եջ 251՝

---

[1]Տես Ագաթանգեղոս, Տփղիս, 1909 ծժ, եջ 412՝ «Բագայառիճ» (մի քանի ձեռագիրներում՝ «Բագաուիճ» և «Բագաուիջ»), Խորենացի, Տփղիս 1913, II, ժԴ, եջ 127՝ «Բագայառինջ» (մի քանի ձեռագիրներում նաև «Բագաուինջ»), Ասողիկ, 1885, III, Իէ եջ 251՝ «Բագաուիճ»։

> «Ցորոյ վերայ [Զորտուանելի]—վկայում է Ասողիկը—առաջէ Թագաւորն Վասիլ զծանն պատրիկ, որ և Պոռտեզ կոչիւր։ Որ եկեալ պատերազմեցաւ միանգամ. և յերկրորդումն սպան զնա ի դաշտին Բագառճոյ, ի Դերջան գաւառի, ի ՆԼԹ Թուականին»։

Ի նպաստ վերոհիշյալ յենթագրության վորոշ կռվան է ծառայում այն, վոր Sinara-Lucus Basaro ճանապարհի ուղղությունը, ինչպես կարելի է կռահել W. Stecker-ի տեղագրական նկարագրություններից[1], պետք է լիներ Շողանի ձորի և Յեփրատ գետի աջ կողմով և, հավանորեն, Յեփրատի նույն կողմում գտնվող Ասողիկի հիշած դաշտով։

Վոր հին այս ճանապարհը չե անցել այժմյան Մամախաթունի մոտով, ինչպես յենթադրել է Ռ. Կիպերտը, այդ պարզ յերևում է Շտրեկկերի հետևյալ կարևոր վկայություններից։

> «Երզրումից դեպի Յերզնկա—ասում է Շտրեկկերը—գոյություն ունի նույնպես և ուրիշ, մի փոքր ավելի կարճ ճանապարհ, վորը առաջ գործածվել է մեծ չափով, վորովհետև յեղել է մասամբ կարավանների առաջվա գլխավոր ճանապարհագծի վրա Երզրումից դեպի Պոլիս (այս վերջինի ու Տրապիզոնի միջև շոգենավային հաղորդակցություն կազմակերպելուց հետո նա այժմ անտեսված է)։ Այս ճանապարհը գնում է Իլիջայի վրայով Աշկալա ... Աշկալայից $1^1/_2$ ժամ հեռավորության վրա սկսվում են Շողանի խաները, վորոնք գտնվում են մոտ յերկու ժամ տարածության վրա Յեփրատի աջ ափի յերկարությամբ» (տես «Материалы», եջ 12-13)։

Հենց այս հին ճանապարհով և Յեփրատի աջ կողմով վո-

[1] Տես "Topographische Mittheilungen über Hoch-Armenien", Berlin 1861, ռուսերեն թարգմանությունը՝ „Материалы для географии Азиатской Турции", Тифлис 1874, приложение к тому III „Изв. Кавк. Отд. Рус. Геогр. Общества"։

*րոշվում է պարզապես նաև Պևտինգերյան քարտեզի ճանապարհը՝ սկսած* Calcidava*-ից մինչև* Lucus-Basaro[1]*։*

*Բագառիճ*-*Bagara*-յի մասին հետաքրքիր է Մարկվարտի կարևոր նոր դիտողությունը նրա* «Die Genealogie der Bagratiden» *ուսումնասիրության մեջ (էջ 63, ծանոթ. 2)։*

*Մարկվարտի կարծիքով՝ Ստրաբոնի հիշած (*XII*, 3, 28)* Βασγοιδα΄ριζα *նշանավոր ամրությունը, որը գտնվում էր Փոքր Հայքում և որի մեջ պահվում էին Միհրդատի գանձերը՝ համապատասխանում է Դերջան գավառի վերոհիշյալ «Բագայառիճ»-ին։ Ենթադրելով, որ* Βασγοιδα΄ριζα*-յի ուղիղ ընթերցվածը պետք է լինի* *Βασγοιδα΄ριζα*՝ Մարկվարտը մատնացույց է անում, որ այս խնդրի մանրամասն հիմնավորումը նա տալու յէ իր մյուս աշխատություններում։*

*Եթե ընդունելի համարվի Մարկվարտի այս ենթադրությունը՝ այդ դեպքում Պևտինգերյան քարտեզի* Basaro *աղավաղված ընթերցվածը կարող է առաջացած լինել վոչ միայն* G *և* S *տառերի շփոթումից, այսինքն՝* Basaro = *Bagara, *այլ նաև* Βασγοιδα΄ριζα*-յի* G *տառի հապավմամբ, այսինքն՝* Basaro = *Bas[g]ara*։*

*Այս վերջին դեպքում պետք է, բնականաբար, քննության առնել և վորոշել* Βασγοιδα΄ριζα*—Բագայառիճ-ի իսկական ըստույգ անունը։*

*30.* Lucus Basaro*-յից 15 հռոմեական մղոն կամ մոտ 22 կիլոմետր հեռավորության վրա Պևտինգերյան քարտեզում նշանակված է* Aegea *(Ռավեննացու մոտ՝* Egea*) կայարանը,*

---

[1]*Ա. Խաչատրյանը Կուլտուրայի Պատմության Ինստիտուտում կարդացած վերոհիշյալ իր զեկուցման 14-րդ թեզիսում* Lucus Basaro*-ն համապատասխան է համարում Երզնկայի մոտ գտնվող «Վագկերտ կամ Վասակակերտ» գյուղին։ Նրա այս համեմատությունը չի կարող ճիշտ լինել, վորովհետև հակասում է Պևտինգերյան քարտեզի տարածություններին և բռնագրոսիկ ու կամայական է նաև լեզվական տեսակետից։ Բացի այդ, քարտեզի ցուցումներից միանգամայն պարզ է, վոր* Artaxata-Satala *ճանապարհի ուղղությունն անհնարին է ենթադրել Երզնկայի ու Սիպիկորի լեռնանցքի վրայով։*

վորը Կոնրադ Միլլերի մոտ համեմատված է Պտոլեմեոսի Elegia-յի հետ (տե՛ս Ptol. V, 12, 5)։

Կասսիուս Դիոնի վկայություններից հայտնի է, վոր Elegeia-յում 115 թվին Հայաստանի Պարթամասիր թագավորը տեսակցություն եր ունեցել Տրայանոս կայսեր հետ, վորը լեկել եր Ելեգեյա Սատաղից (տե՛ս Kass. Dion. 68, 19, 2, Bd. III, ed. Boissevain)։ Նույն Ելեգեյայի մոտ, հռոմեական աղբյուրների վկայությամբ, 161 թվին ծանր պարտություն եյին կրել հռոմեական զորքերը և սպանել եր իրան Սեվերիանոս զորավարը։

Հայ պատմաբաններից շատերը՝ Գարագաշյանը, Սանտալճյանը և ուրիշները՝ այս Elegeia-ն համապատասխան են համարել Հին Հայաստանի «Եկեղեաց» գավառին[1]։ Հայտնի յե սակայն, վոր դասական մատենագիրները հին «Եկեղեաց» գավառն անվանում եյին վոչ թե Elegeia կամ Elegia, այլ 'Ακιλισηνή' (Strab., Ptol.) կամ հետագայում՝ 'Εκελεσηνή' (Procop.):

Պարզ է, ուրեմն, վոր Elegeia-յի նույնացումը «Եկեղեաց» գավառի հետ անհաջող մի յենթադրություն է, վորը պետք է, անտարակույս, մերժել։ Այդ յենթադրությունը չե կարող ճիշտ լինել, վորովհետև Elegeia-ն վո՛չ թե գավառի, այլ պարզապես կենտրոնավայրի անուն է, վորը գտնվել է Satala—Artaxata ճանապարհագծի վրա։

Մեր նախորդ «Հին Հայաստանի ճանապարհները» աշխատության մեջ (Տեղեկագիր Գիտ. և Արվ. Ինստիտուտի, Յերեվան 1930, № 5, էջ 85) Պտոլեմեոսի Elegia-յի և հռոմեական աղբյուրների Elegeia-յի հետ մենք հնարավոր եյինք համարել նույնացնելու Պևտինգերյան քարտեզի Aegea-ն (Ռավեննացու մոտ՝ Egea)։

Այս յենթադրությունը ևս, վոր մենք արել եյինք հա-

[1] Տե՛ս Ա. Մ. Գարագաշյան, «Քննական Պատմութիւն Հայոց», Բ., Թիֆլիս 1895, էջ 256. J, Sandalgian, Histoire documentaire de l'Arménie, II, Rome 1917, էջ 561 և ուրիշ.։

մաձայն Կոնրադ Միլլերի ցուցման, թվում է ինձ այժմ անհավանական։

Մանրամասն ծանոթանալով դասական աղբյուրների վկայություններին՝ դժվար չէ համոզվել, որ ճիշտ պետք է լինի Ֆ. Յուստիի և Գ. Խալաթյանցի կարծիքը, որը մենք մերժել էյինք նախորդ մեր աշխատության մեջ։

Ֆ. Յուստին և Գր. Խալաթյանը վերոհիշյալ Elegeia-ն նույնացրել են, ինչպես հայտնի յէ, Երզրումի մոտ գտնվող այժմյան Իլիջայի հետ[1], որը գտնվում է, ինչպես և Aegea-ն Սատաղից Արտաշատ գնացող ճանապարհի վրա։

Ուշագրավ այս հետևությունը ստացվում է, իրոք, Սեվերիանոսի արշավանքի վերաբերյալ դասական մատենագրության վկայություններից։ Այս վկայությունները պարզ ու որոշ մատնանշում են, որ Սեվերիանոս զորավարը, անցնելով Յեփրատ գետը, յեկել է Ելեգեյա և կռիվը պարթևների հետ տեղի յէ ունեցել այստեղ Յեփրատ գետի ակունքների մոտ (տես Tournebize, Histoire politique et religieuse de l'Arménie, Paris 1910, էջ 796, հմմտե Lucian, Hist. conscr. 21 և 25)։ Յեվ հենց տեղագրական այս մանրամասնություններից ինքնին հետևում է, որ հին Ելեգեյան, որի մոտ Սեվերիանոսի զորքերը կրել էյին ծանր պարտություն և ուր Տրայանոսն ընդունել էր Պարթամասիրին, պետք է գտնվեր Calcidava—Գազտաուիճի մոտ գտնըվող Յեփրատի գետանցքից դեպի արևելք՝ այժմյան Իլիջայում։

Արդ՝ ի նկատի ունենալով Ելեգեյայի հավանական այս տեղադրությունը՝ կարելի յէ, անշուշտ, յեզրակացնել, որ Aegea և Elegeia անունների նմանությունը պետք է համարել միանգամայն պատահական։ Ուրեմն և Պևտինգերյան քարտեզի Aegea (Ռավեննացու մոտ՝ Egea) կայարանի անունը, ինչպես և տեղը, մնում են դեռևս մութ և անորոշ։

---

[1] Ferd. Justi, Geschichte Irans, Grundriss der iranischen Philologie, Bd. II, Strassburg 1904, էջ 508, Г. А. Халатьянц, Очерк истории Армении, Москва 1910, էջ 302։


Ճորոխ
Բաբերդ
Լիկոս գետ
Սատաղ
Satala
(Salmalasso)
(Daracinte)
Aegea
Կոփ-դաղ
Sinara
Lucus Basaro
Բագառիճ
Մամախաթուն
Աշկալա
×Chalchdiara
(Autisparate)
Elegea
Իլիջա
CHALCHDIARIS – SATALA
ՈՒՂԵԳԻԾԸ
Դեպի Սատաղ

31. Aegea կայարանից մինչև Satala Պևտինգերյան քարտեզում նշանակված են հետևյալ կայարանները՝ Aegea (Ռավեննացու մոտ՝ Egea) 20 Darucinte 20 Salmalasso 20 SATALA։

Այս կայարաններից Darucinte-ի նկատմամբ յես թույլ եմ տալիս ինձ առաջարկելու հնարավոր մի լուսաբանություն, վորը կարոտ ե սակայն հատուկ քննության մասնագետ լեզվաբանների կողմից։

Ի նկատի ունենալով, վոր Պևտինգերյան քարտեզի այս ճանապարհագիծն անցել ե հին Դերջան գավառի միջով՝ կարելի յե յենթադրել, վորոշ իհարկե վերապահությամբ, վոր Darucinte-ն Դերջան տեղանվան աղճատումն ե, վորից ծագել ե, հավանորեն, գավառի անունը։

Դերջան գավառը, ինչպես հայտնի յե, Ստրաբոնի աշխարհագրության մեջ անվանվում ե Ξερξη'νη (տես Geographica XI, 14, 5), իսկ Պլինիուսի մոտ՝ Derxene (Nat. Hist. V, 20, 1, տես. ed. Littré, T. I, Paris 1883, եջ 123)։ Վերոհիշյալ Xerxene-ն կարդալու յե, անշուշտ, համաձայն Պլինիուսի Derxene;

Արդ՝ հնարավոր չե՞ արդյոք Darucinte-ն աղավաղումն համարել հենց այս Derxene անվան։

Ինձ թվում ե, վոր նման յենթադրությունը թեև առաջին հայացքից կարող ե թվալ համարձակ, սակայն անհնարին չե և արժանի յե վորոշ ուշադրության։

Կոնրադ Միլլերի աշխատության առաջաբանում (Itineraria Romana, եջ LII) մանրամասն մեջ են բերված Պևտինգերյան քարտեզի հին տառերի հատուկ նմուշները, վորոնց հարևանցի իսկ քննությամբ կարելի յե կռահել տեղանունների հավանական աղճատումներն այդ քարտեզում։ Այդ տառաձևերից յերևում ե ըստ իս, վոր Darucinte անվան UC տառերը կարող են աղճատված լինել նախնական X տառից։

Ուրեմն Darucinte-ն հնարավոր ե ուղղել *Darxinte, վորի te վերջավորությունը կամ լատիներեն բացառական հոլովն ե և կամ, ինչպես մատնացույց ե արել Մարկվարտը,

խալդական հատուկ ածանց է, որը դրվում էր տեղանուն-ների վերջում. օրինակ՝ Enzi—Enzite, Sareba—Sarbat, Mana—Μαντιανή (տե՛ս Südarmenien und die Tigrisquellen, էջ 336, 431 և 432)։ Նույն այս վերջավորությունն ուշադրության արժանի յէ ըստ իս նաև Պևտինգերյան քարտեզի վերոհիշյալ Tharsidarate և Antisparate տեղանունների վերջում։

Եթե մեր այս լուսաբանությունը ճիշտ համարվի՝ այդ դեպքում *Darxinte-ն կարող է, ինչպես տեսնում ենք, կապ ունենալ Derxene կամ Դերջան անվան հետ։

Այս խնդրի ավելի հաստատուն և ավելի հիմնավորված պարզաբանումը կտան թերևս լեզվաբան մասնագետները։

32. Պևտինգերյան քարտեզի մանրախույզ քննությամբ ճշտվում են, ինչպես տեսնում ենք, Artaxata—Satala գծի վրա գտնվող կայարանների մեծագույն մասը՝

Artaxata = Արտաշատ,
Paracata = Փառախոտ,
Coloceia (Ռավեննացու մոտ՝ Zotozeta) = *Zolocerta = Զողկերտ կամ Ծոլակերտ,
Hariza = *Հառիճ, Արուճ,
Raugonia (Ռավեննացու մոտ՝ Ragauna) = *Bagauna = Բագաւան,
Colchion- մնում է անորոշ,
Chadas = Խաստուր, Chazdar,
Armanas = Արամանայ,
Andaga (Ռավեննացու մոտ՝ Andacas) = Эндек, Անդուկ, Անտաք,
Barantea = *Banantea = «Վանանտեա», Վանանդ,
Adconfluentes = դետնախառնուրդն այժմյան Քեոփրի-քեոյի մոտ,
Datamisa- մնում է անորոշ,
Tharsidarate- մնում է անորոշ,
Autisparate- մնում է անորոշ,

Calcidava (Ռավեննացու մոտ՝ Chalchidara) = *Chalchdiara կամ *Chalchdiaris = Խաղտոյառիճ,

Sinara = Sinora (Ptol), Sinoria (Str.) և Synhorium (Amm.),

Lucus Basaro = Lucus *Bagara կամ Lucus *Basgara = Անտառակ Բագառիճ, Βαζγοιδα'ριζα,

Aegea (Ռավեննացու մոտ՝ Egea) - մնում է անորոշ,

Darucinte = *Darxinte = Derxene, Դերջան (?),

Salmalasso - մնում է անորոշ,

Satala — Սատաղ։

Վերոհիշյալ 21 կայարաններից անորոշ են մնում, գլխավորապես, վեցը՝ Colchion, Datamisa, Tharsidarate, Autisparate, Aegea և Salmalasso։ Այս կայարանների տեղադրությունը ևս հնարավոր կլինի, անշուշտ, վորոշել, ի նկատի առնելով մյուս կայարանների տեղերը և Պևտինգերյան քարտեզում մատնանշված տարածությունները։ Կարևոր այս աշխատանքը կարող են անել գիտական արշավախմբերը։

Անհրաժեշտ է, ուրեմն, ճշդել տեղում վոչ միայն բոլոր մութ ու վիճելի խնդիրները, այլ և վորոշել վերջնականապես հին այս ճանապարհի ուղղությունը տեղագրական իր բոլոր մանրամասնություններով։

---

## 2. ԱՐՏԱՇԱՏ—ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏ

*1. Արտաշատից Տիգրանակերտ գնացող ճանապարհն ունեցել է ըստ Պևտինգերյան քարտեզի հետևյալ կայարանները՝*

ARTAXATA 23 Paracata 33 Coloceia (*Ռավեննացու մոտ՝* Zotozeta) 24 Hariza 24 RAUGONIA (*Ռավեննացու մոտ՝* Ragauna) [39 Catispi 27 Sorue 24 Anteba 24 Nasabi 17] ISUMBO 15 Flegoana 15 Dagnevana (*Ռավեննացու մոտ՝* Dognavana) 26 Molchia 32 Vastauna (*Ռավեննացու մոտ՝* Bastavena) 26 Patansana (*Ռավեննացու մոտ՝* Patransana) 27 Dyzanas (*Ռավեննացու մոտ՝* Dizanas) 22 Cymiza 20 Zanserio (*Ռավեննացու մոտ՝* Zancerion) 30 TIGRANOCARTEN[1]։

*Մեծագիր տառերով են տպված վերև այն կայարանների անունները, վորոնց մոտ Պևտինգերյան քարտեզում նըկարված են զույգ աշտարակներ։ Կայարանների անունների մոտ դրված թվերը ցույց են տալիս տարածությունները մի կայարանից մյուս կայարան հռոմեական մղոններով (=1,4815 կիլոմետր)։ Ամբողջ տարածությունը Արտաշատից մինչև Տիգրանակերտ կազմում է ըստ վերոհիշյալ թվերի 448 հռոմեական մղոն կամ մոտ 663 կիլոմետր, սակայն տարածության այդ ընդհանուր գումարը սխալ է, վորովհետև անկյունավոր փակագծերի մեջ դրված կայարանները և թվերը վերաբերվում են, ինչպես ներքև կտեսնենք, Արտաշատից Եկբատանա տանող ճանապարհին և արտագրված են սխալմամբ հարևան գծից։ Ռավեննացին, վոր ոգտվել է, ըստ երևույթին,*

[1] *Տես* Itineraria Romana, *էջ 745-748։*

հռոմեական նույն քարտեզի մի այլ օրինակից, հիշում է իր աշխարհագրության մեջ Didyma, Indua և Arachia կայարանները, բայց տարածությունները մեկ կայարանից մյուս կայարան չի տալիս։

2. Տիգրանակերտից Արտաշատ տանող ճանապարհը, ինչպես վերև տեսանք, միանում էր Սատաղ—Արտաշատ ճանապարհագծին Բագավանում և այստեղից գնում Արտաշատ վերոհիշյալ Hariza— *Zolocerta — Paracata կայարաններով, վորոնց անունները և տեղերը վորոշված են արդեն սույն ուսումնասիրության նախորդ գլխում։

Անհրաժեշտ է, ուրեմն, լուսաբանել այժմ վերոհիշյալ հին կայարանների անունները Բագավանի ու Տիգրանակերտի միջև, վորոնց թիվը՝ չհաշվելով Ռավեննացու հիշած Didyma, Indua, Arachia տեղանունները՝ ընդամենը տասն է։

Այս տասը կայարանների անուններից վորոշ է յեղել միայն Տիգրանակերտը։

Գիտական մանրազնին հետախուզումներից հետո, վոր Լեմանը և Բելքը կատարել էյին այժմյան Սղերդի և Ֆարկինի շրջաններում, Տիգրանակերտի տեղը նրանք յենթադրել են, համաձայն Փավստոսի վկայության, Նփրկերտ-Մայաֆարկինում[1], վոր այժմ անվանվում է Ֆարկին։ Նոր այս յենթադրությունը համարում են հավանական յեվրոպական գրեթե բոլոր հայագետները։

Ներկա ուսումնասիրության մեջ մենք փորձել ենք վորոշել մնացած ինը կայարաններից յոթը, վորոնցից յերեքը՝ Isumbo, Flegoana և Dagnevana լուսաբանված էյին արդեն «Հին Հայաստանի ճանապարհները» նախորդ իմ աշխատության մեջ, իսկ չորսը Zanserio, Vastauna, Patansana և

[1] W. Beleck, Majafarkin und Tigranokerta, Zeitschrift für Ethnologie, 1899, էջ 263—275. C. Lehmann, Ueber Tigranokerta, Verhandl. der 45 Versammlung deutscher Schulmänner und Philologen in Strassburg Leipzig 1904, էջ 25-84, Klio VIII. 1908, էջ 497-520 և ուրիշ պարբերական հրատարակություններում, համեմատ նաև Lehmann-Haupt, Armenien einst und jetzt, Bd. I, էջ 381—429։

Cymiza՝ առաջին անգամ քննվելու յեն մեր այս ուսումնասիրության մեջ։

Մատնանշված այս յոթը կայարանների վորոշմամբ վերոհիշյալ ճանապարհի վերաբերյալ վիճելի խնդիրները ստանում են, ինչպես կըտեսնենք, նոր լուսաբանություն և գծի ուղղությունը պարզվում է ավելի հաստատուն ու ավելի ճշգրիտ կերպով, քան այդ արված է նախկին ուսումնասիրություններում։

3. Կոնրադ Միլլերը, վորը Raugonia կամ Ragauna կայարանի տեղը յենթադրում է այժմյան Սուսուկ-սու գետի ափին և կամ Պարնաուտում, իսկ Տիգրանակերտի տեղը՝ Արզնում, Tigranocerta—*Bagauna ճանապարհագիծը վորոշում է կամ Բիթլիս—Մուշ—Մանազկերտի և կամ Բիթլիս—Վոստան—Վանի ուղղությամբ և մատնանշում է նաև կայարանների տեղերը հետևյալ հաջորդականությամբ՝

Tigranocarten—այժմ. Արզն, Zanserio—այժմ Ridjlek ավերակները Բիթլիս-սուի մոտ, Cymiza— այժմյան ավերակները Բիթլիսի հարավակողմում, Dyzanas—այժմ. Erwan, այստեղից գիծը գնում էր ըստ Միլլերի կամ Վանա լճի հարավային կողմերով կամ Մուշի վրայով, ուստի նա մատնանիշ է անում տարբեր կայաններ՝ ձախ կամ աջ ուղղությամբ՝ Patansana—այժմ. Alti-Bajezid կամ Almaly, Vastauna—այժմ. Մուշ կամ Pingan, Molchia—Kjum-ից հյուսիս կամ Norkjng, Dagnevana—այժմ. Ondschalu կամ Wastan, Flegoana—Rustamgedlük-ի մոտ կամ Ischchani, Isumbo--այժմ. Melazgerd և Վան կամ շրջակայքը, մյուս կայարանները մինչև Raugonia անորոշ[1]։

Միլլերի այս յենթադրությունները չեն կարող, իհարկե, ընդունելի համարվել հենց այն պարզ պատճառով, վոր նրա աշխատության մեջ սխալ են լուսաբանված Raugonia և Tigranocerta կայարանների տեղերը։ Տիգրանակերտը, ինչպես

[1] Տես Itineraria Romana, էջ 745—748։

վերև ասվեց, գտնվել է վո՛չ թե հին Արզն քաղաքի, այլ այժմյան Ֆարկինի տեղում։ Եվ վորովհետև Կ. Միլլերի մոտ սխալ են վորոշված այս ճանապարհագծի թե սկզբի և թե ծայրի կետը՝ միանգամայն հասկանալի յե, վոր չեն կարող նրա մոտ ճիշտ լինել նաև մյուս կայարանների՝ ըստ համապատասխան հեռավորության ու հաջորդաբար նշանակված կետերը։

4. Գերմանական գիտնականների ուսումնասիրություններում կա, իմ կարծիքով, և մի ուրիշ սխալ յենթադրություն, վոր իբր թե Պևտինգերյան քարտեզի Dagnevana (Ռավեննացու մոտ՝ Dognavana) և Vastauna (Ռավեննացու մոտ՝ Bastavena) կայարանները համապատասխանում են Բզնունիք գավառի «Դատուան աւան»-ին և Ռշտունյաց գավառի «Ոստան աւան»-ին (տես K. Miller, Itineraria Romana, եջ 745 և Markwart, Südarmenien und die Tigrisquellen, եջ 61)։

Այդ նույնացումները, ինչպես շատ ուղիղ նկատել է Կ. Միլլերը, միանգամայն հակասում են Պևտինգերյան քարտեզի վկայություններին, վորովհետև չեն համարվում քարտեզում մատնանշված հեռավորություններին։

Տարածությունը Տիգրանակերտից մինչև Dagnevana ցույց է տրված քարտեզում 183 հռոմեական մղոն կամ մոտ 271 կիլոմետր, իսկ Տիգրանակերտից մինչև Vastauna՝ 125 հռոմեական մղոն կամ մոտ 185 կիլոմետր։ Սակայն, իրապես, մեզ հայտնի յե, վոր Dagnevana-յի հետ համադրվող Դատվանը, վոր գտնվում եր Վանա լճի հարավ-արևմտյան ափին, ավելի մոտ եր Տիգրանակերտին, քան Vastauna-յի հետ համադրվող Վոստանը, վորը գտնվում եր Վանա լճի հարավ-արևելյան ափին, Ախթամար կղզու դիմաց։

Կարելի յե, ուրեմն, վստահորեն յեզրակացնել, վոր Dagnevana—Դատվան և Vastauna—Վոստան անունների նմանությունը, վոր յենթադրել են գերմանական գիտնականները, միանգամայն պատահական է և Տիգրանակերտ-Բագավան

գծի ուղղության վորոշման համար չունի վորևէ նշանակություն։

Գիտնականների թե վերոհիշյալ և թե նման յենթադրություններն են յեղել ըստ իս գլխավոր պատճառը, վոր Պևտինգերյան քարտեզի քննադատներից վոմանք համարել են այս քարտեզը խեղաթյուրված ու աղավաղված և կայանների հաջորդականությունը յենթադրել են վեր-վայր շրջած։

Վոր այս չհիմնավորված գնահատականը խիստ չափազանցված է Հին Հայաստանի ճանապարհների նկատմամբ՝ այդ քայլ առ քայլ կըպարզենք մենք սույն ուսումնասիրության ընթացքում։

5. Բացի վերոհիշյալ չորս կայարաններից (Catispi, Sorue, Anteba և Nasabi), վորոնք սխալմամբ արտագրված են հարևան գծից, Պևտինգերյան քարտեզում, ինչպես տեսանք, Տիգրանակերտից մինչև Isumbo նշանակված են տասը կայան և ամբողջ տարածությունը մինչև Isumbo ցույց է տրված 213 հռոմեական մղոն կամ մոտ 316 կիլոմետր։

Այս հեռավորությունը կարելի է ըստ իս մոտավորապես ճիշտ համարել, ինչպես և վերոհիշյալ տարածությունն Արտաշատից Սատադ։ Յեթե Կ. Միլլերի մոտ[1] միջկայարանային հեռավորությունները չեն համապատասխանում այժմյան իրական տարածություններին՝ դրա պատճառն, անշուշտ, այն է, վոր նրա մոտ սխալ եր վորոշված թե Տիգրանակերտի տեղը և թե ճանապարհի ուղղությունը։

Տիգրանակերտի նույնացմամբ այժմյան Ֆարկինի հետ վորոշվում է, ինչպես ներքև ցույց կըտանք, Տիգրանակերտից Բագավան տանող այս գծի հավանական ուղղությունը, սակայն բոլորովին այլ ուղղությամբ, քան յենթադրել է Կ. Միլլերը։

«Հին Հայաստանի ճանապարհները» նախորդ մեր ուսումնասիրության մեջ (տես Տեղեկագիր Գիտ. և Արվ. Ինս-

[1] Տես Itineraria Romana, եջ 746։

*տիտուտի № 5, էջ 75) այս հին ճանապարհը մենք ևս չեյինք կարողացել ճշտիվ վորոշել և յենթադրել եյինք, վոր այս գիծն անցել ե, հավանորեն, կամ այժմյան Ներջիկ–Շենիկի վրայով և կամ այժմյան Իլիջայի և հռչակավոր հին Կլեսուրի*[1] *մոտով դեպի Ցեփրատ—Արածանի և այնտեղից հին հայկական Տարոն, Հարք և Ապահունիք գավառների միջով գընացել ե Բագավան։*

*Նույն ճանապարհը հաջողվում ե սակայն ճշտել այժմ ավելի հաստատուն կերպով, քան այդ արված եր նախորդ իմ ուսումնասիրության մեջ։*

*6. Պևտինգերյան քարտեզում Տիգրանակերտից 50 հռոմեական մղոն կամ մոտ 74 կիլոմետր հեռավորության վրա նշանակված ե* Cymiza *կայարանը՝* Tigranocarten 30 Zanserio *(Ռավեննացու մոտ՝* Zancerion*)* 20 Cymisa*։*

Cymiza *կայարանի անունը, վորն աղճատված ե, ըստ յերևույթին,* M *և* ΛΔ *տառերի շփոթման պատճառով, կարելի յե, իմ կարծիքով, ուղղել* *CΥΛΔIZA*։ Յեվ այս պարզ ու ընդունելի սրբագրությունից հետո* *Cyldiza*-ն, ինչպես տեսնում ենք, համապատասխան կըլինի այժմյան Կիլդիզին (տես Ռուսական հին շտաբի տասը վերստանոց քարտեզում՝* Кильдиз*), վորը գտնվում ե Ֆարկինից Շենիկ գնացող ճանապարհի վրա, այժմյան Ներջիկից դեպի հյուսիս՝ մոտավորապես այն հեռավորության վրա, վորը ցույց ե արված Պետինգերյան քարտեզում։*

*Ուրեմն՝ հավանական այս յենթադրությամբ Տիգրանակերտ—Բագավան ճանապարհը վորոշվում ե վոչ թե Իլիջայի ու հին Կլեսուրի մոտով, այլ Ներջիկ—Շենիկի*[2] *վրայով։*

---

[1] Κλεισουρα 'Ιλλυ'ρισις *կամ* Haldras, *Տես* «Südarmenien und die Tigrisquellen», *էջ 58, 74, 238, 269։*

[2] *Ավելորդ չի լինի այստեղ նկատել, վոր գերմանական գիտնական Կարբեն Տասը հազարի նահանջի ճանապարհը յենթադրել ե նույնպես այժմյան Ներջիկի վրայով դեպի Մշո դաշտը և այնտեղից Մանազկերտի մոտով դեպի հյուսիս (տես* H. Karbe, Der Marsch der Zehntausend von Zapates bis Phasis-Araxes, Wissen. Beilage zum Jahresbericht des Kö-

Նոր այս յեզրակացությանը նեցուկ կարող է ծառայել հենց Պևտինգերյան քարտեզում մատնանշված վերոհիշյալ տարածությունը, վորովհետև Իլիջայի և Կլեսուրի վրայով հեռավորությունը Տիգրանակերտից մինչև Isumbo, վորը, ինչպես կտեսնենք, Ասողիկի մոտ հիշատակված Ծումբն է, կլինեի վոչ թե 213 հռոմեական մղոն կամ մոտ 316 կիլոմետր, այլ անհամեմատ ավելի։

Ուշագրավ այս յեզրակացությունը կարևոր է առանձնապես այն տեսակետից, վոր Cymiza-յի ու Կիլգիզի նույնացմամբ պարզվում է վերջնականապես, վոր հին Տիգրանակերտի տեղը պետք է յեղած լինեի, իրապես, այժմյան Ֆարկինում, ինչպես այդ տեղագրական մանրամասն քննությամբ յեզրակացրել են Բելքը և Լեմանը։

7. Tigranocarten և *Cyldiza[1] կայարանների միջև, Տիգրանակերտից 30 հռոմեական մղոն կամ մոտ 44 կիլոմետր հեռավորության վրա, Պևտինգերյան քարտեզում նշանակված է Zanserio (Ռավեննացու մոտ՝ Zancerion) կայարանը։

Այս կայարանի անվան ու տեղադրության նկատմամբ ավելորդ չեմ համարում մի քանի դիտողություններ անել, վորոնք կարոտ են սակայն դրական հաստատուն ապացույցների։

Մարկվարտի «Südarmenien und die Tigrisquellen» ուսումնասիրության մեջ (էջ 100) բերված է Բարհեբրեուսի վկայությունը Zoniqart-ում գտնվող մի վանքի մասին, վորը վերանորոգել էր բժիշկ Շմավոնը։ Համաձայն այդ վկայության՝ Zoniqart-ը գտնվում էր Hesnâ de-Zâjid-ի յերկրամա-

---

nigsstädtischen Gymnasiums zu Berlin, Ostern 1898)։ Նահանջող հույների ճանապարհը Ներջիկ-Շենիկի վրայով մանրամասն նկարագրված է Լեմանի վերջերս լույս տեսած աշխատության մեջ (տես Lehmann-Haupt Armenien einst und jetzt, Bd. II, Erste Hälfte, Berlin, էջ 432)։

[1] Ա. Խաչատրյանը Կուլտուրայի Պատմության Ինստիտուտում կարդացած վերոհիշյալ զեկուցման մեջ (թեզ. 15-րդ) Cymiza կայարանը համապատասխան է յենթադրել այժմյան Չմշկածագին։ Այս նույնացումը, ինարկե, պարզապես սխալ է և միանգամայն անհնարին։

սում, ուր իրար են խառնվում Dêbâ և Arsinos գետերը (տես Chron. eccles., vol. II, էջ 615–616, ed. Abbeloos et Lamy)։

Մարկվարտը կարծում է, որ Zoniqart-ի տեղը լինելու էր այժմյան Պիստեկի հանդեպ Արածանի գետի մոտ։

Չի կարելի արդյոք ենթադրել, որ վերոհիշյալ Arsinos գետը վո՞չ թե Արածանին է, որն ասորերենում անվանվում էր Arsanâs, այլ Arzanene—Աղձնիքում (ասոր. Arzôn) գտնվող Խուլփ գետը, որի հին անունը՝ համաձայն Arzôn երկրանվան՝ կարող էր լինել Arsinos։

Եթե մատենագրական աղբյուրներում գտնվի համապատասխան մի վկայություն կամ ակնարկ՝ այդ դեպքում վերոհիշյալ Zonîqart-ը հնարավոր կլինի նույնացնել Պևտինգերյան քարտեզի Zanserio կամ Zancerion կայարանի հետ, որի անունը հավանական կլինի ուղղել *Zancerta կամ ասորերեն համապատասխան վերջավորությամբ՝ *Zancarten (հմմտ վերև Tigranocarten)։

Մարկվարտը ենթադրում է, որ ասորերեն Zonicart-ը համապատասխանում է, հավանորեն, հայերեն «Զիւնկերտ»ին, որը հիշատակված է Հովհան Մամիկոնյանի մոտ մի ուրիշ տեղ Տարոնում (տես «Պատմութիւն Տարօնոյ», Վենետիկ 1832, էջ 30, 58)։ Նույն այս ենթադրությունը հավանական է, անշուշտ, նաև Zanserio կամ Zancerion կայարանի նկատմամբ (*Zancerta=Զիւնկերտ, տես վերև՝ *Zolocerta=Զողկերտ)։

Վերջնական տեղադրության դժվար է սակայն հանգել, որովհետև Zonîqart-ի, «Զիւնկերտ»-ի և *Zancerta-յի տեղադրությունները որոշվում են, ինչպես տեսանք, տարբեր տեղերում։ Ուստի և Zanserio կամ Zancerion կայարանի խնդիրը մնում է դեռևս մութ ու անորոշ և կարոտ ավելի համոզիչ լուսաբանության։

8. Վերոհիշյալ Cymiza (=*Cyldiza) կայարանից հետո Պևտինգերյան քարտեզում նշանակված են հետևյալ կայարանները՝ Cymiza 22 Dyzanas (Ռավեննացու մոտ՝ Dizanas)

27 Patansana (Ռավեննացու մոտ՝ Patransana) 26 Vastauna (Ռավեննացու մոտ՝ Bastavena)։ Տարածությունը Cymiza-յից մինչև Vastauna ցույց է տրված 75 հռոմեական մղոն կամ մոտ 111 կիլոմետր։

Ելակետ ունենալով այս տարածությունը, ինձ թվում է, որ Vastauna կամ Bastavena կայարանի տեղը մենք կարող ենք որոշել Տարոնում գտնվող այժմյան Բոստաքենդում, որի հեռավորությունը Cymiza-Կիղիղից հավասար է մոտավորապես վերոհիշյալ տարածության։

Բոստաքենդ գյուղը (տես Ռուսական հին շտաբի տասը վերստանոց քարտեզի վրա՝ Бостакенд) գտնվում է հենց Տարոնից Հարք, Ապահունիք և Բագավան գնացող ճանապարհի վրա՝ այժմյան Ծրոնքից մոտ 25 կիլոմետր դեպի հյուսիս-արևելք։ Նրա հին անունը հավանական է ըստ իս յենթադրել Բաստավան, և այս հին անվանը համապատասխանում է պարզապես Vastauna կամ Bastavena կայարանի անունը, որի ուղիղ ընթերցվածը պետք է լինի, հավանորեն, *Bastauna կամ *Bastavana (համեմատե վերև Ragauna=*Bagauna=Բագավան)։

Դժվար չէ նաև կռահել, որ Vastauna-յից 26 հռոմեական մղոն կամ մոտ 39 կիլոմետր հեռավորության վրա գտնվող նախորդ Patansana կամ Patransana կայարանը (=*Patransauna) համապատասխանում է հայերեն «Պատրանս աւան» տեղանվան, որի մոտավոր տեղադրությունը պետք է լիներ ըստ վերոհիշյալ տարածության, հավանորեն, Մուշ քաղաքի մոտ, ըստ յերևույթին, սրանից դեպի հյուսիս-արևելք։

Որ մատնանշված այս յերկու կայարանների անունները համապատասխանում են, իրոք, Հին Հայաստանի «Բաստաւան» և «Պատրանս աւան» տեղանուններին՝ այդ միանգամայն հավանական է, որովհետև «Բաստ» և «Պատրանս» գյուղանուններն այժմ իսկ կան այժմյան Սպառկերտ գավառակում, որը գտնվում է Մոկսի ու Խիզանի միջև (տես Ա-Դո, «Վանի, Բիթլիսի և Էրզրումի վիլայեթները», Երևան 1912, էջ 94)։

Թե ինչու Տարոն գավառի հին «Բաստաւան»-ը և «Պատրանս աւան»-ը գտնվում են այժմ իրար մոտ նաև այժմյան Սպառկերտ գավառակում՝ այդ դժվար չե բացատրել։

Պևտինգերյան քարտեզում մատնանշված վերոհիշյալ գյուղերը, վորոնք գտնվում եյին ռազմական հին ճանապարհի վրա՝ յենթակա յեն յեղել, բնականաբար, մշտական հարձակումների և ավերածության։ Միանգամայն հավանական ե, ուրեմն, վոր Սպառկերտի այժմյան «Բաստ»-ը և «Պատրանս»-ը կարող եյին հիմնած լինել Տարոնի համանուն գյուղերից փախած հայերը, վորոնք հարկադրված են յեղել գաղթել լեռնային հարևան այս շրջանը։

9. Vastauna կամ Bastavena կայարանից հետո Պևտինգերյան քարտեզում նշանակված են հետևյալ կայարանները՝ Vastauna (Ռավեննացու մոտ՝ Bastavena) 32 Molchia 26 Dagnevana (Ռավեննացու մոտ՝ Dognavana) 15 Flegoana 15 Isumbo։ Տարածությունը Vastauna-յից մինչև Isumbo ցույց ե տրված 88 հռոմեական մղոն կամ մոտ 130 կիլոմետր։

Յենթադրելով Vastauna-յի տեղն այժմյան Բոստաքենդում՝ այս ճանապարհագիծը ևս, ինչպես կըտեսնենք, վորոշվում ե ճշտիվ առանց դժվարության։

Վոր այս գծի ուղղությունը պետք ե յենթադրել, ինչպես վերև ասացինք, Հին Հայաստանի Հարք և Ապահունիք գավառների միջով՝ այդ պարզ յերևում ե ներքև առաջ բերված մեր նոր լուսաբանություններից, վոր վերաբերվում են յերեք իրար հաջորդող կայարաններին՝ Dagnevana (Ռավեննացու մոտ՝ Dognavana) 15 Flegoana 15 Isumbo։

Ուշագրավ ե նախ, վոր այդ յերեք կետը՝ Պևտինգերյան քարտեզում նշանակված միջկայարանային հեռավորությունների համեմատ (Տիգրանակերտից մինչև Dagnevana = 183 հռոմեական մղոն կամ 271 կիլոմետր)՝ ընկնում են Տիգրանակերտ-Կիլդիգ-Բագավան գծի վրա ճիշտ և ճիշտ Հին Հայաստանի Հարք և սրան կից Ապահունիք գավառներում, ուր համաձայն հայ աղբյուրների գտնվում եյին «Դոնեվանք», «Եղեգական» և «Ծումբ» գյուղերը։

*Դոնեվանք գյուղը, ինչպես վկայում է Հ. Ղ. Ինճիճյանը, հիշատակված է ՁԿԵ (=1316) թվին դրված ավետարանի հիշատակարանի հետևյալ հատվածում՝*

> *«Արդ՝ գրեցաւ ի գաւառիս Հարքայ, ի գեղս որ կոչի Դոնեվանք՝ ընդ հովանեաւ սրբուհոյ Աստուածածնիս» (տես «Ստորագրութիւն Հին Հայաստանի», Վենետիկ 1822, էջ 120, նաև «Մայր Ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանց ի Վենետիկ», Հատոր Ա, Վենետիկ 1914, էջ 466. ձեռագիր ավետարանի թվահամարն է 104՝ հին թիվ 1626)։*

*Եղեգականի մասին կա վորոշ հիշատակություն Ասողիկի հետևյալ վկայության մեջ՝*

> *«Եւ յետ նորա [Տէր Մուշէի] Տէր Սահակ ի գաւառէն Հարքայ ի գեղջէն Եղեգականայ՝[1] ամս Ե» (տես «Ստեփանոսի Տարօնեցւոյ Ասողկան, Պատմութիւն տիեզերական», Ս.-Պետերբուրգ 1885, II, գլ. Բ, էջ 81)։*

*Իսկ յերրորդ գյուղը՝ Ծումբը հիշվում է նույնպես Ասողիկի պատմության մեջ։ Նկարագրելով Ատրպատականի Մամլան ամիրայի կռիվը ընդդեմ հայ-վրացական միացյալ զորքերի՝ Ասողիկը պատմում է, վոր այդ կռվի վայրն էր բարձրավանդակ ամուր մի տեղ Ապահունիք գավառում՝ Ծումբ գյուղի մոտ։*

> *«Առ որ միաբան հասանէին — վկայում է Ասողիկը — զօրքն հայոց և վրաց, և չուեալ երթան ի գաւառն Ապահունեաց. բանակին յանդիման բանակին Մամլանայ ի բարձրաւանդակ ամրագոյն տեղւոջ մի, ի սահմանս գեղջն Ծմբոյ, և բազում աւուրս ի նմին տեղւոջ օթևանս կալեալ։ Զի ի սաստկութենէ սպային Պարսից դարհուրեալք էին, ոչ իշխելով քան զանձաւ տեղի բանակին արտաքս ելանել. այլ միայն աղօթիւք պաղատանս առ*

---

[1] *Հովհաննես կաթողիկոսի պատմության մեջ Սահակ Բ-ի ծննդավայրն անվանվում է «Ցղուկ»։ «Եւ զկնի սորա—վկայում է Հովհաննես կաթողիկոսը—զՍահակ ի գաւառէն Հարքայ՝ Ցղկայ գեղջէ կացուցանեն ի հայրապետական աթոռն» (Թիֆլիս 1912, էջ 63)։*

Աստուած վերառաքէին» (Ս.-Պետերբուրգ 1885, III, գլ. ԽԱ, էջ 271)։

10. Վերոհիշյալ գյուղերից Դոնեվանքը համապատասխանում է, ինչպես տեսնում ենք, Պևտինգերյան քարտեզի Dagnevana (Ռավեննացու մոտ՝ Dognavana) կայարանին, ուստի և այդ կայարանի լատիներեն ուղիղ ընթերցվածը պետք է ենթադրել վոչ թե Dagnevana կամ Dognavana, այլ *Do[g]nevana։ Դոնեվանք անվան վանք վերջավորությունը նշանակում է, հավանորեն, վոչ թե վանք այժմյան իմաստով, այլ օթևան, իջևան, կայան կամ բնակարան, ինչպես այդ բառը գործ է ածված Հին և Նոր Կտակարանի գրաբար թարգմանություններում, նաև հին մատենագիրների յերկերում (տես «Նոր բառգիրք հայկազեան լեզուի», նաև Հյուբշման, «Հին հայոց տեղւոյ անունները», թարգմ. Հ. Բ. Պիլեզիկճյանի, Վիեննա 1907, էջ 285)։

*Dognevana կայարանը գտնվում էր ըստ Պևտինգերյան քարտեզի Vastauna կայարանից 58 հռոմեական մղոն կամ մոտ 86 կիլոմետր հեռավորության վրա։

Արդ՝ ի նկատի ունենալով, վոր Պևտինգերյան քարտեզի միջկայարանային հեռավորությունները ճշտվում ու հաստատվում էին վերև ինչպես Artaxata-Satala, նույնպես և այս ճանապարհագծում՝ կարելի յե հավանական համարել, վոր վերոհիշյալ հեռավորությունը ևս մոտավորապես ստույգ է և համապատասխան այժմյան իրական տարածության Բոստաքենդից մինչև Դոնեվանք։ Ըստ այսմ՝ *Dognevana-Դոնեվանքը, վորի տեղադրությունն ավետարանի վերոհիշյալ հիշատակարանում ցույց է տրված Հարք գավառում, պետք է գտնվեր Բոստաքենդից մոտ 86 կիլոմետր դեպի հյուսիս-արևելք, հավանորեն, այժմյան Մանազկերտի դաշտում։

Իսկ այս յեզրակացությունից ինքնին արդեն հետևում է, վոր Հարք գավառի արևելյան մի մասն է կազմել Մանազկերտի դաշտային շրջանը, վորը գտնվում էր Նեխ Մասիքի կամ Սիփանի հյուսիսակողմում։

11. Պետք է առանձնապես մատնանշել, որ Հին Հայաստանի Հարք և Ապահունիք գավառների տեղադրության խնդիրը Հայաստանի պատմական աշխարհագրության մութ ու վիճելի հարցերից մեկն է, որ կարոտ է գեռ հատուկ քննության։ Այս գավառներում են գտնվել, ինչպես վերև տեսանք, նաև հին «Եղեգական»-ը և «Ծումբ»-ը։ Այս տեղերի, ինչպես և համապատասխան գավառների ճշտումը՝ խիստ կարևոր է, ինչպես կըտեսնենք, նաև Ռավեննացու մոտ հիշատակված Arachia կայարանի որոշման համար։

Ուստի ավելորդ չենք համարում մեջ բերել այստեղ մատենագրական հին աղբյուրների կարևորագույն վկայությունները, որոնք վերաբերվում են Հարք և Ապահունիք գավառներին։

1. Փաւստոս, III, Ի, եջ 52 (Վենետիկ 1889)՝

«Այլ յերկրին Ապահունեաց, յոտին մեծի լերինն Մասեաց, տեղին զայն որսասցուք. տեղւոյն՝ որում անուն կոչի քաղաք Աղիորսք»։

2. Նույնը, III, Ի, եջ 53՝

«Եւ կալեալ կապեալ ղոտս և զձեռս նորա [Տիրանայ] ի կապս երկաթիս, և զրանակն՝ զոր գտանէր՝ աւար հարկանէր. և զգանձս և զստացուածս զկին և զորդիս թագաւորին, զոր գտին ի բանակին, խաղացուցին յերկրէն Ապահունեաց։ Իբրև եկին հասին ի գեւղ մի, որում անուն Դալարիս կոչէին, յորժամ եկն եմուտ զօրավարն Պարսից [Շապուհ Վարազն] ի ներքս ի գեւղն Դալարիս, ածէր կապեալ զարքայն Տիրան ընդ իւր»։

3. Կեղծ-Սեբէոս, Ս.-Պետերբուրգ 1879, I, եջ 2՝

«Եւ ինքն [Հայկ] չուեաց գնաց անտի ևս [յերկրէն Արարադայ Կադմեայ] ի հիւսիսակողմն և չոքաւ բնակեցաւ ի բարձրաւանդակ դաշտավայրի միոջ. և կոչեցաւ անուն դաշտին այնորիկ Հարք, յանուն Հարցն»։

Հմմտե Խորենացի, Տփղիս 1913, I, Ժ, եջ 33։

4. Սեբէոս, Ս.-Պետերբուրգ 1879, գլ. ԻԶ, եջ 93՝

«Հասանէ Երակլոս ի Բագրեւանդ և անցանէ յԱպահունիս, և բանակի ի գեւղն՝ որ կոչի Հրճմունք»։

Տես նույնը՝ Ասողիկ, II, գլ. Գ, էջ 116 [«որ կոչի Խրճտօնք»]։

5. Ղևոնդ, Ս.-Պետերբուրգ 1887, գլ. ԼԴ, էջ 147—148՝

«քանզի նոյնժամայն շունչ կլեալք՝ դարձեալ յարձակէին, ուշ եդեալ ելանել յառաջին պողոտայն արքունի ընդ գաւառն Ապահունիս։ Հասանէին ի գաւառն Բագրեւանդ ի գիւղն Արճնի»։

6. Խորենացի, Աշխարհացոյց, հրատ. Սուքրյանի, Վենետիկ 1881, էջ 31՝

«Յելից Մարդաղոյ է Գասառովոր գաւառ. և նորա յելից Տուարածատափ. նորա յելից Դալառ. և ի հարաւոյ նոցա Հարք և Վաժնունիք, մինչև ցԱրածանի, որ իջանէ յԱպահունեաց»։

7. Խորենացի, Պատմութիւն, I, ԺԲ, էջ 38՝

«Իսկ նորա [Արամենակայ] թողեալ զերկուս յեղբարց իւրոց, զԽոռ և զՄանաւազ, ամենայն աղխիւն իւրեանց ի կոչեցեալն Հարք, և զորդի Մանաւազայ զԲազ. յորոց Մանաւազ ժառանգէ զՀարք, իսկ որդի նորա Բազ՝ յարևմտից հիւսիսոյ զեզր ծովուն աղւոյ, և զգաւառն և զծովն անուանէ իւրով անուամբ»։

8. Նույնը, II, Ը, էջ 115—116՝

«Այլ և զնախարարութիւնն Ապահունեաց և զՄանաւազեանն և զԲզնունականն ի նոյն զաւակացն Հայկայ. ի բնակչացն գտեալ [Վաղարշակ] զպերճագոյնսն՝ տեարս կարգէ, յանուն շինից և գաւառաց կոչելով»։

9. Թովմա Արծրունի, Ս.-Պետերբուրգ 1887, III, Ի, էջ 224՝

«Եւ զի էր պաշարեալ նորա [Աշոտի] յայնժամ զքաղաքն Մանազկերտ Ապահունեաց աշխարհին»...։

10. Ասողիկ, Ս.-Պետերբուրգ 1885, II, գլ. Բ, էջ 80—81՝

«Յայսմ ժամանակի Մամբրէ եղբայր Մովսիսի, զորմէ ասեն երկրորդ գտեալ ի փիլիսոփայս՝ դառնայր ի Հայս՝

և Դաւիթ աշակերտ Մովսիսի ի Հարք գաւառէ ի Հերեան գեղջէ»։

11. Նոյնը, III, գլ. ԽԳ, եջ 277՝

«Եւ ինքն [Թագաւորն Վասիլ] չուեալ անցանէ ի գաւառն Հարք ի Մանազկերտ քաղաք, և անդուստ ի Բագրևանդ»։

12. Նոյնը, II, գլ. Ա, եջ 73՝

«Իսկ Պապ՝ կաթողիկոս կացոյց Հայոց զՇահակ ոմն ի գաւառէ Ապահունեաց[1] առանց հրամանի մետրապօլտին Կեսարու, ի Մանազկերտ գեղջէ»։

13. Նոյնը, III, գլ. Ը, եջ 183՝

«Եւ ի Նժէ Թուականին Վարդ եղբօրորդի Նիկիփոռայ զօրու ծանու գայ յԱպահունիս, պաշարէ զՄանազկերտ քաղաք»։

14. Գիրք Թղթոց, Թիֆլիս 1901, եջ 223 («Սակս ժողովոց ի Հայք»)՝

«Արդ՝ շնորհիւ կամաց բարձրելոյն և ամենաջողակ սիրոյ Հոգւոյն սրբոյ շնորհեցաւ ինձ Յովհաննէսի կաթուղիկոսի առնել Ե-րրորդ ժողով ի Մանազկերտ գեւաղ ի սահմանագլուխ վիճակին Հարքայ՝ բազմաւրեայ ժամանակաւ միատեղայք համաժողովք։ Այս եղև ի ՃՀԵ Թուականիս հայոց, յէ. Տրէ ամսոյ, որոյ ժողովեալ ի մի վայր յԱպահունեաց գաւառ ի գեղն Մանազկերտ...»։

Հմմտե նաև Ասողիկ, II, գլ. Բ, եջ 103։

15. Արիստակես Լաստիվերտցի, Թիֆլիս 1912, գլ. Ա, եջ 5՝

«և ինքն [Վասիլ] երթեալ անցանէ ընդ Հարք և ընդ Մանազկերտ»։

16. Նոյնը, գլ. ԺԷ, եջ 110՝

«Գիշերագնաց եղեալ զօրք անօրինացն և եկեալ ի քաղաքագիւղն Հարքայ որ կոչի Մանկան գոմ...»։

---

[1] Կիրակոս Գանձակեցին և Սամուել Անեցին Շահակ կաթողիկոսի ծննդավայրը դնում են, ինչպես հայտնի է, Հարքում՝ «ի Հարքայ ի Մանազկերտայ» (տես Կիրակոս Գանձակեցի, Թիֆլիս 1910, եջ 26 և Սամուել Անեցի, Վաղարշապատ 1893, եջ 67)։

17. Նույնը, գլ. ԻԲ, էջ 142՝

«Վասն չար աղանդին Թոնդրակեցւոց որ երևեցաւ ի գաւառն Հարքայ, և զբազումս խռովեաց»:

18. Նույնը, գլ. ԺՁ, էջ 93՝

«Զանց արարեալ զԱրճիշաւ և զԲերկրաւ՝ եկեալ [Սուլտան] բանակեցաւ շուրջ զքաղաքաւն, որ կոչի Մանազկերտ, ի գաւառին Ապահունեաց...»:

19. Նույնը, գլ. ԻԲ, էջ 150՝

«Եւ իբրև չյաջողեցաւ նմա այս, ելեալ գայ անցանէ ի գաւառն Ապահունեաց ի բնակարան սատանայի, յաստուածուրաց ժողովն և ի գազանաց գառագիղն, որ կոչի Թոնդրակս»:

12. Հարք և Ապահունիք գավառների մասին վերոհիշյալ աղբյուրների վկայությունները, ինչպես տեսնում ենք, բավական խառնաշփոթ են և չեն տալիս նրանց սահմանների մասին պարզ ու վորոշ գաղափար:

Առանձնապես կարևոր է, անշուշտ, Հովհան Ոձնեցու ցուցումը, վորը պարզ վկայում է (տես վերև վկ. 14), վոր Մանազկերտը գտնվել է «ի սահմանագլուխ վիճակին Հարքայ»: Յեվ համաձայն հենց այս տեղեկության Մանազկերտը դրված է՝ անգամ միևնույն հեղինակների վկայություններում՝ յերբեմն Ապահունիքում (տես վերև վկ. 9, 13, 14, 18) և յերբեմն Հարքում (տես վերև վկ. 11, 14, 15):

Ուշագրավ է նմանապես, վոր «Թոնդրակս» գյուղը, վորը գտնվում է և այժմ Մանազկերտից դեպի հարավ-արևմուտք՝ Արիստակես Լաստիվերտցին յենթադրում է Ապահունիքում (տես վերև վկ. 19), սակայն միաժամանակ վկայում է, վոր Թոնդրակեցոց աղանդը «երևեցաւ ի գաւառն Հարքայ» (տես վկ. 17):

Համաձայն թե այս և թե Խորենացու «Աշխարհացույց»-ի վկայության (տես վերև վկ. 6)՝ Հարք գավառի տեղը, ինչպես հայտնի յե, ցույց է տրվում սովորաբար Ապահունիք գավառի արևմտակողմում՝ կամ այժմյան Խնուսի և Խամուրի շրջանում (տես Լեո, Հայոց պատմություն, Թիֆլիս 1917,

եջ 176) և կամ, գլխավորապես, այժմյան Բուլանըղում (տես «Südarmenien und die Tigrisquellen», եջ 15)։

Վոր Հարք գավառի հյուսիս-արևմտյան սահմանը յենթադրվելու յե, իրոք, Մանազկերտից արևմուտք՝ Արածանի գետի աջ կողմում՝ այդ յերևում ե վերոհիշյալ 11-րդ և 15-րդ վկայություններից։ Այդ վկայությունների մեջ պարզ կերպով մատնանշված ե, վոր Վասիլ Բ. կայսրը, վորը յեկել եր Մանազկերտ հյուսիս-արևմուտքից,անցել եր նախապես Հարք գավառի միջով։

Պետք ե սակայն ի նկատի ունենալ, վոր քննության առնված բոլոր այս վկայությունները վերաբերվում են Հարք գավառի տեղագրության արաբական և Բագրատունյաց շըրջաններում։

Նույն գավառը, ինչպես մատնացույց ե արել Մարկվարտը, ունեցել եր իր մեջ հնագույն ժամանակներում Մանազկերտի ամբողջ շրջանը (տես Südarmenien und die Tigrisquellen, եջ 15)։ Յեվ իրավի, Կեղծ-Սեբեոսի և Խորենացու վերոհիշյալ վկայություններից (տես վերև վկ. 3, 7 և 8), ինչպես և Փավստոսի հաղորդած մանրամասն տեղեկություններից (տես III, գլ. Դ, եջ 10), պարզ յերևում ե, վոր «Մանաւազեան» նախարարական տոհմին, վորը ժառանգել եր Հարքը, պատկանել ե վոչ միայն Մանազկերտը, վորն այդ տոհմի «բուն գահոյից գեւղն» եր, այլ և Մանազկերտի շուրջը գտնվող յերկիրները։

Լուսաբանելով նույն այս հին վկայությունները՝ Ադոնցը յենթադրում ե նույնիսկ, վոր հնագույն Հարքը, վորի կենդրոնն եր Մանազկերտը, նախնական ժամանակներում բովանդակել ե իր մեջ նաև Ապահունիքը, Խորխոռունիքը և Բըզնունիքը, վորոնք հետագայում միայն անջատվել են նրանից՝ իբրև համանուն նախարարությունների գավառներ (տես «Армения в эпоху Юстиниана», եջ 312)։

Հարք գավառի հնագույն տեղագրության խնդիրը հետաքրքիր ե առանձնապես այն տեսակետից, վոր այդտեղ ե գտնվել ըստ հայկական ավանդության հին Հարքը, ուր Հայկ

նահապետը բնակություն եր հաստատել «բարձրավանդակ դաշտավայրում» (տես վերև վկ. 3, 7, 8)։ Մանրամասն քըննելով հին այս ավանդությունը, վորը մեջ ե բերված Մար Աբասի և Խորենացու պատմական յերկերում, Մարկվարտը հանգել ե միանգամայն ճիշտ յեզրակացության, վոր հայերի հնադույն գաղթավայրերը ցույց են տրված նրանց հին զրույցներում յերեք մեծ լեռների ստորոտներում, վորոնք համարվել են հին ժամանակներում Նոյի տապանի լեռներ։ Այս լեռներն են ըստ Մարկվարտի Կարդու-Արարադը, Նեխ Մասիսը և Մեծ Մասիսը (տես «Südarmenien und die Tigrisquellen», եջ 202—232)։

Ադոնցի և Մարկվարտի ուշագրավ վերոհիշյալ յենթադրությունները հաստատվում են, ինչպես կտեսնենք, նաև Պևտինգերյան քարտեզի մեր այս ուսումնասիրությամբ։

Մենք ցույց կտանք ներքև, վոր Նախնական Հարքը, վորը գտնվում եր, գլխավորապես, այժմյան Սիփանի, Նեխ Մասիսի շրջանում, մեծ ու ընդարձակ այս յերկրի աշխարհագրական հին անունն ե, վորը հիշատակված ե նաև Ռավեննացու աշխարհագրության մեջ։

13. *Dognevana—Դոնեվանք կայարանից հետո Պևտինգերյան քարտեզում նշանակված են, ինչպես վերև ասացինք, Flegoana և Isumbo կայարանները։

Flegoana կայարանի անունը Մարկվարտը կարդում ե Flegosana և առաջարկում ե Flegosan-ն[1] սրբագրել *Elegosine։ Այս վերջին անունը նա համեմատում ե հայերեն «եղէգնաշէն» կամ «եղեգնածին» բառերի հետ։

Վորովհետև Մարկվարտը Dagnevana կայարանը համապատասխան ե համարել այժմյան Դատվանին, ուստի և *Ele-

---

[1] Կ. Միլլերի վկայությամբ (Itineraria Romana, եջ 747, ծան. 2)՝ Flego-ana անվան o և a տառերի միջև Պևտինգերյան քարտեզի մագաղաթն ունի ճեղքվածք։ Կարելի յե յենթադրել, վոր o տառից հետո յեղել ե մի տառ ևս, վոր այժմ չի կարդացվում։ Ըստ յերևույթին, Մարկվարտն ի նկատի ունի այդ ճեղքվածքը և այդ նկատառումով ե, վոր նա Flego-ana անունը կարդում ե Flego[s]ana և ուղղում ե *Elegosine։

gosine-յի տեղը նա յենթադրել է Դատվանից 15 հռոմեական մղոն կամ մոտ 22 կիլոմետր հեռավորության վրա՝ Վանա լճի հյուսիսային կողմում (տե՛ս «Südarmenien und die Tigrisquellen», էջ 61)։

Flegoana անվան ուղիղ ընթերցվածը, ինձ թվում է, պետք է համարել վո՛չ թե *Elegosine, ինչպես յենթադրել է Մարկվարտը, այլ *Elegacana։ E և F լատինական տառերի շփոթությունները այնքան սովորական են, վոր Մարկվարտի սրբագրությունը միանգամայն համոզիչ է և ընդունելի։ Սակայն քարտեզի մագաղաթի ճեղքվածքի տեղում s տառի փոխարեն մենք կարդում ենք c։ Նախապատվությունը պետք է տալ, անշուշտ, *Elegacana ընթերցվածին, վորովհետև Հարք գավառում, ինչպես վերև տեսանք, իրոք վոր հիշվում է «Եղեգական» գյուղը, վորը կատարելապես համապատասխանում է Պևտինգերյան քարտեզի Flegoana=*Elegacana ընթերցվածին։

Պևտինգերյան քարտեզի մյուս Isumbo կայարանը, վոր ավելի մոտ եր Բագավանին քան Dagnevana-ն (=*Dognevana) և Flegoana-ն (=*Elegacana), իմ կարծիքով, վերև հիշված Ծումբն է, վորը գտնվում եր Ապահունիքում։ Isumbo-յի անվան ուղիղ ընթերցումը պետք է լինի *Tsumbo և միանգամայն պարզ է, վոր այդ կարևոր կայարանի անունն աղճատված է քարտեզում I և T տառերի շփոթման պատճառով։

Isumbo կայարանի տեղադրությունը վորոշելու համար կարևոր է, անշուշտ, Ասողիկի վերոհիշյալ վկայությունը։ Ասողիկը, ինչպես վերև տեսանք, վկայում է, վոր հայ-վրացական զորքերը կովից առաջ իջևանել եյին «յանդիման բանակին Մամլանայ ի բարձրաւանդակ ամրագոյն տեղւոջ մի, ի սահմանս Ծմբոյ»։ Կռվի մանրամասն նկարագրությունից ևս պարզ յերևում է, վոր Ծումբը գտնվել է բարձր ու դժվարամատչելի տեղում։

Ասողիկի այս վկայությունները ուշադրության արժանի յեն, վորովհետև Isumbo-յի մոտ Պևտինգերյան քարտեզում

*նշանակված են ուղղ աշտարակներ, վորոնք, հավանորեն, ցույց են տալիս, վոր այդ կայարանը յեղել ե կարևոր մի ամրություն և բերդապահ զորքի կայան։*

*Ուրեմն՝ ինչպես տեսնում ենք,* Isumbo-*ն* (=*Tsumbo) *վոչ միայն իր անվան նմանությամբ, այլ և տեղագրական տեսակետից կատարելապես համապատասխանում ե Ծումբ գյուղին։*

*14. Դոնեվանքի, Եղեգականի և Ծումբի տեղերը վորոշ չեն։ Պետինգերյան քարտեզի վկայությունից կարող ենք միայն հետևցնել, վոր Տիգրանակերտից Բագավան տանող ճանապարհի վրա նրանք դասավորված են յեղել հետևյալ հաջորդականությամբ՝ նախ Դոնեվանքը, նրանից 15 հռոմեական մղոն կամ մոտ 22 կիլոմետր հեռավորության վրա՝ Եղեգականը և ապա դարձյալ 15 հռոմեական մղոն հեռավորության վրա՝ Ծումբը։*

Tigranocerta—Bagauna *գծի ուղղությունը վորոշելու համար կարևոր ե միայն այն, վոր այդ գյուղերի տեղերը ցույց են տրված Հին Հայաստանի Հարք և Ապահունիք գավառներում։ Թեվ վորովհետև Դոնեվանքի տեղը լինելու յեր, ինչպես վերև ասացինք, այժմյան Մանազկերտի դաշտում՝ դժվար չե, ուրեմն, կռահել, վոր* Tigranocerta—Bagauna *ճանապարհն անցել ե Մանազկերտի շրջանով և «Եղեգական»ի ու «Ծումբ»ի տեղերը պետք ե վորոնել Մանազկերտի արևելակողմում։*

*Հենց նույն այս յեզրակացությունը ստացվում ե նաև Ասողիկի վկայություններից, վոր վերաբերվում են Ծումբ գյուղի մոտ տեղի ունեցած վերոհիշյալ կռվին։*

*Ասողիկը վկայում ե, վոր Ատրպատականի Մամլան ամիրայի զորքերը՝ Ծումբ գյուղի մոտ պարտվելուց հետո՝ փախչում են Արճեշի ուղղությամբ։*

> *«Որոց հետամուտ եղեալ—պատմում ե Ասողիկը—Հայոց և Վրաց զօրուն՝ սաստիկ հարուածովք հարկանէին, ի սուր սուսերի մաշելով գնոսա մինչև ի մուտս արևուն, մինչև ի դուռն Արճէշ քաղաքին» (տես «Պատմութիւն տիեզերական»,* III, *գլ. ԽԱ, եջ 273)։*

Արդ՝ ի նկատի առնելով, վոր թշնամուն հետապնդել է հեծելազորքը՝ կարելի յե յենթադրել, վոր մոտավոր տարածությունը Ծումբից մինչև Արճեշ[1] պետք է լիներ վոչ պակաս քան 50 կիլոմետր։ Այս հեռավորությունը Ծումբի և Արճեշի միջև կարևոր մի ցուցում է, վոր վորոշ չափով լուսաբանում է Isumbo=*Tsumbo կայարանի տեղադրությունը։

Ինձ թվում է, վոր հիմք ընդունելով այս ցուցումը, ինչպես և այն իրողությունը, վոր Ծումբը գտնվել է Հարք գավառի արևելյան սահմանի մոտակա շրջանում՝ ճշմարտության բավական մոտ կըլինենք, յեթե Tsumbo—Ծումբի տեղը յենթադրենք Մանազկերտից դեպի հյուսիս-արևելք՝ մոտավորապես այժմյան Բագնոց—Ձոմըկի շրջանում։

15. Տիգրանակերտ—Բագավան գծի և *Dognevana ու *Elegacana ու *Tsumbo կայարանների տեղադրության նոր այս լուսաբանությամբ վորոշվում է, իմ կարծիքով, հռոմեական զորավար Կորբուլոնի ճանապարհն Արտաշատից Տարոն (տես Tacit. Ann. XIV, 23 և 24), վոր մինչև այժմ համարվել է վիճելի ու անորոշ։

Գիտնականների մեծագույն մասը յենթադրել են, վոր Կորբուլոնը՝ Արտաշատի կողմերից Տարոն անցնելու ժամանակ՝ յենթարկվել է մարդերի հարձակման Մարդաստանում, վորը գտնվում եր Վանա լճից դեպի արևելք (հմմտե Հյուբշման, «Հին Հայոց տեղւոյ անունները», եջ 60, ծան. 1, նաև Адонц, Армения в эпоху Юстиниана, եջ 417)։

Այս ուղղությամբ՝ Կորբուլոնի ճանապարհն Արտաշատից Տարոն և այնտեղից Տիգրանակերտ պետք է յենթադրել Բերկրիի, Վոստանի վրայով և Վանա լճի հարավային ափերով, ուրեմն՝ մոտավորապես այն գծով, վոր բացատրական եր քարտեզում մատնանշել է Կոնրադ Միլլերը, վորպես հավանական ուղի Պևտինգերյան քարտեզի Արտաշատ—Տիգրանակերտ գծի (տես Itineraria Romana, եջ 745—746)։

---

[1] Հավանորեն, հենց այս ճանապարհի վրա, Աղիովիտ գավառում, գտնվել է հին Զարիշատ քաղաքը, վորն Արշակունյաց ժամանակ յեղել է առևտրական կենդրոն հարավային Հայաստանում։

Պրոֆ. Մարկվարտը Կորբուլոնի ճանապարհի այդ խիստ հեռավոր ու վոլորապտույտ ուղղությունը համարում է անհավանական ու անընդունելի և կարծում է ինքը, վոր մարդերի յերկիրը, վորի միջով անցել է Կորբուլոնը, գտնվել է Տարոնից դեպի հյուսիս-արևելք (տես «Die Entstehung und Wiederherstellung der armenischen Nation, եջ 23)։

Մարկվարտի այս յենթադրությունը[1] համապատասխանում է, ինչպես տեսնում ենք, մեր յեզրակացություններին Արտաշատ—Տիգրանակերտ գծի ուղղության մասին և կարելի յե իրոք հավաստի համարել, վոր Տակիտոսի մոտ հիշատակված մարդերի բնակության շրջանը պետք է վորոնել Պևտինգերյան քարտեզի Արտաշատից Տիգրանակերտ իջնող ճանապարհի վրա, հավանորեն, Արածանիի հովտի լեռնային վերին շրջաններում։ Պետք է ասել, վոր ըստ այս բացատրության մարդերի բնակության շրջանը չի կարող լինել հին Մարդաղի գավառը, վորովհետև այս գավառը, վորը գտնվում էր այժմյան Բինգյոլի հյուսիսակողմում՝ հեռու յեր շատ մեր վորոշած Արտաշատ—Տիգրանակերտ գծից։

*16.* Isumbo կայարանից հետո Պևտինգերյան քարտեզում մատնանշված են Nasabi, Anteba, Sorue և Catispi կայարանները, վորոնք նշանակված են նույնպես և Artaxata—Ecbatana ճանապարհագծում։

Պևտինգերյան քարտեզի այս պարզ ու անվիճելի սխալը ուղղվում է սակայն առանց դժվարության Ռավեննացու

[1] Ա. Խաչատրյանը վերոհիշյալ իր զեկուցման 10-րդ թեզիսում Կորբուլոնի այս ճանապարհը յենթադրում է հետևյալ ուղղությամբ՝ «Կորբուլոնի դարձուղին—ասում է նա—ամենայն հավանականությամբ յեղել է Ղուլջաղի լեռնանցքով դեպի Դիադին ու Յեփրատի ակունք. այս տեղից իջել է Արճեշ, Ախլաթ, Տարոն, Խարբերդ, ուր Քիարբեկ գյուղում գտնված իր արձանագրությունը միանգամայն հաստատում է նրա ներկայությունը, և այս տեղից Տիգրանակերտ»։ Հեռավոր այս ճանապարհը Դիադին—Արճեշով միանգամայն անհավանական է, իսկ նույն ճանապարհը Խարբերդի վրայով պարզապես սխալ է։ Խաչատրյանն ուշադրություն չի առել, վոր Կորբուլոնի վերադարձը Արտաշատից տեղի յեր ունեցել 58 թվին, իսկ Kăzrik-ի արձանագրությունը գրված է 64 թվին։

աշխարհագրության օգնությամբ, վորի մեջ հիշյալ կայարանների փոխարեն հիշատակված են Arachia, Indua և Didyma կայարանները։ Ինչպես վերև ասացինք, այս յերեք կայարանների անունները Ռավեննացին արտագրել է հռոմեական միևնույն քարտեզի հին և ավելի ընտիր մի օրինակից։

Պարզվում է, ուրեմն, վոր *Tsumbo-յից հետո մինչև *Bagauna հաջորդ կայարաններն են յեղել Arachia-ն, Indua-ն և Didyma-ն։

Այս կայարաններից Arachia-յի հիշատակությունը Ռավեննացու մոտ խիստ ուշագրավ մի վկայություն է, վորի լուսաբանությամբ լուծվում է, ինչպես կտեսնենք, Հայաստանի պատմական աշխարհագրության կարևորագույն խնդիրներից մեկը։

Arachia-ն վորոշ կապ ունի, իմ կարծիքով, Պլինիուսի մոտ հիշատակված Archeneյի հետ, վորից ծագել է, հավանորեն, հենց վերոհիշյալ Հարք գավառի անունը։

Մեր այս յենթադրությունը հիմնավորելուց առաջ անհրաժեշտ է նախ թարգմանաբար մեջ բերել Պլինիուսի վկայությունն Archene-յի մասին։

Plin., Hist. Nat. VI, 31, 1—3 (տես T. I, ed. Lictre, Paris 1883, եջ 260—261)՝

«Սակայն հարկավոր է խոսել և իրան Տիգրիսի մասին։ Սա սկիզբ է առնում Մեծ Հայաստանի յերկրում մի աղբյուրից, վորը նկատելի յե հարթավայրում։ Տեղի անունն է Ելեգոսինե [Elegosine, Elosine, Elegos]։ Այնտեղ ուր նա ավելի դանդաղ է հոսում՝ գետի անունն է Դիգլիտո [Diglito], իսկ ուր նրա ընթացքն արագանում է՝ նա անվանվում է արագության պատճառով Տիգրիս։ Այսպես են անվանում մեդերը նետը։

Նա թափվում է Արետիսսա լիճը [Aretissa, Arethusa[1]],

[1] Լիտտրեյի հրատարակության մեջ տպված է Arethusa, սակայն Mayhoff-ի 1906 թվի հրատարակությունն ունի Aretissa (տես «Südarmenien und die Tigrisquellen», եջ 20)։

*վորի մեջ վերև են բարձրանում բոլոր մեջը ձգվող ծանր իրերը և վորն արտաթորում է բորակային միացությունների գոլորշիներ։ Լճի մեջ կան միայն մի տեսակ ձըկներ, վորոնք չեն թափանցում նրա միջով հոսող գետի մեջ։ Նմանապես և Տիգրիսի ձկները չեն մտնում լճի մեջ։ Ասում են, վոր գետն իր հոսանքով ու գույնով տարբերվում է լճից։*

*Լիճն անցնելուց հետո՝ Տիգրիսը հանդիպում է Տավրոս լեռան, անհետանում է մի խորշի մեջ և, հոսելով գետնի տակ՝ դուրս է գալիս հանկարծ լեռան մյուս կողմում։ Ցելքի այս տեղն անվանվում է Զորոանդա* [Zoroanda, Zoroande, Zoaranda]*։ Վոր այս միևնույն գետն է, այդ պարզ երևում է նրանից, վոր նրա մեջն ընկած իրերը դուրս են գալիս լեռան մյուս կողմում։*

*Տիգրիսը հոսում է հետո մի ուրիշ լճի միջով, վորն անվանվում է Թոսպիտես* [Thospites, Thespites]*։ Ցեվ նորից նա մտնում է ստորյերկրյա խորշեր և մոտ* 25 *մըղոնից հետո յերևան է գալիս Նիմֆեումի մոտ* [Nympheum]*։*

*Կլավդիոս Կեսարը վկայում է, վոր* Archene[1] *յերկրում Տիգրիսն այնքան մոտ է հոսում Արսանիաս* [Arsanias] *գետից, վոր յերբ այդ գետերն ափերից դուրս են գալիս՝ նրանք միանում են, բայց չեն խառնվում իրար հետ։ Արսանիասը, վորն ավելի թեթև ջուր ունի՝ յերեսն է բարձրանում և հոսում վերևից մոտ* 4 *մղոն տարածություն։ Սակայն շուտով նա բաժանվում է Տիգրիսից և թափվում Ցեփրատ գետը։*

*Տիգրիսի արևելյան ճյուղի մասին նման տեղեկություններ, վոր հիմնված են, անշուշտ, տեղական հին զրույցների վրա, հաղորդում է մի փոքր տարբեր բովանդակությամբ և ավելի համառոտ խմբագրությամբ նաև Ստրաբոնը (տես* Ge-

---

[1] Littré-*ի հրատարակության մեջ տպված է* Arrhene, *վորը յենթադրական մի ուղղագրություն է* van Gelen-*ի (տես* «Südarmenien und die Tigrisquellen», *եջ 76)։*

ographica, XI, *14,8 և* XVI, *1, 21), վորը վկայում է սակայն վոր Տիգրիսը գալիս է Նպատ* [Νιφάτης] *լեռներից և անցնում այնուհետև Արսենե* [Ἀρσηνή] *լճի միջով, վորն անվանվում է նաև Թոպիտիս* [Θωπῖτις]*։*

*17. Պլինիուսի և Ստրաբոնի վերոհիշյալ վկայությունները մանրամասն քննված են վերջերս Մարկվարտի* «Süd-armenien und die Tigrisquellen» *աշխատության մեջ։ Այստեղ մեզ հետաքրքրում են, բնականաբար, միայն նրա այն դիտողությունները, վոր վերաբերվում են Պլինիուսի հիշատակած* Archene *յերկրին։*

*Այս* Archene-*ի նկատմամբ Մարկվարտն առաջարկել է յերկու տարբեր մեկնություններ։*

*Նա անհնարին չի համարում նախ, վոր Կլավդիոս Կեսարի վերոհիշյալ վկայությունը կարող է վերաբերվել Տիգրիս գետի արևմտյան ճյուղին։ Յեվ այս դեպքում, նրա կարծիքով,* Archene-*ն՝ իբրև աղճատումն* *Anthene *ընթերցվածի՝ կարող է թերևս համապատասխան լինել* Enzi-Anzit *գավառի անվան։*

*Սակայն իր ուսումնասիրության շարունակության մեջ Մարկվարտը հնարավոր է համարում նույնպես, վոր Կլավդիոս Կեսարի վկայությունը վերաբերվում է ավելի շուտ* Arsanias *Արածանի գետի ակունքներին, վորոնք գտնվել են Վանա լճից դեպի հյուսիս-արևելք՝ հին Ծաղկոտն գավառում։ Այստեղ հենց, ինչպես ուղիղ նկատում է Մարկվարտը, Արածանի գետը մոտ կլինի, իրապես, արևելյան Տիգրիս գետին, վորի ակունքը ևս յենթադրվել է հին ժամանակներում Նպատ կամ այժմյան Ալադաղ լեռան ստորոտներում։*

*Ինչպես մատնանշում է Մարկվարտը,* van Gelen-*ը՝ հիմնըվելով վերջին այս յենթադրության վրա՝* Archene-*ն ուղղել է* *Arrhene *և ընդունել, վոր այս տեղանունը համապատասխանում է Ստրաբոնի* 'Αρσηνή'-*յին և հին Արճեշին։ Համաձայն այս մեկնության* *Arrhene *կամ* 'Αρσηνή' *յե անվանվել վո՛չ միայն Արճեշի մոտակա լիճը, այլ և յերկիրը։*

Այս բացատրությունը Մարկվարտն առարկելի չի համարում, որովհետև Ստրաբոնի վկայության 'Αρσηνή'-ին (ըստ = Մարկվարտի *'Αρσησηνή') Պլինիուսի մոտ համապատասխանում է ո՛չ թե Archene-ն, այլ Aretissa-ն։

Մարկվարտի կարծիքով՝ եթե Կլավդիոս Կեսարի վկայությունը վերաբերվում է, իրոք, արևելյան Տիգրիսին՝ Archene-ն կարող է նույնացվել միմիայն Հարք գավառի անվան հետ, որը հիշատակված է Մար Աբասի մոտ իբրև հայերի հնագույն գաղթավայր։ «Այս վերջին դեպքում — ասում է Մարկվարտը — մենք հարկադրված կլինենք ընդունելու, որ հին ժամանակներում Archene երկիրն ունեցել է իր մեջ ո՛չ միայն բուն Հարք գավառը Բուլանըղի հարթավայրի հետ միասին, այլ և հետագայում ինքնուրույն Ապահունիք, Աղիովիտ և Ծաղկոտն գավառները և գուցե նաև Բագրևանդ գավառի արևելյան մասը» (էջ 77)։

Մեջ բերված երկու տարբեր մեկնություններից հավանական է, անշուշտ, երկրորդը։

Մարկվարտի և եվրոպական գիտնականների ուշադրությունից վրիպել է, դժբաղդաբար, Ռավեննացու աշխարհագրության մեջ հիշատակված Arachia կայարանի անունը, որը նոր ու կարևոր մի ապացույց է Archene-ի տեղադրության Վանա լճի հյուսիսակողմում։

Ռավեննացու այս Arachia-ն կարող է, իմ կարծիքով, համապատասխան լինել հենց Պլինիուսի վկայության վերոհիշյալ Archene-ին։

Այս երկու տեղանունների —ia և —ene տարբեր վերջավորությունները միանգամայն հասկանալի են դառնում, եթե ի նկատի ունենանք, որ հայոց Պապ թագավորին վերագրված Ցարկինի հունարեն արձանագրության մեջ հին Kommagene, Melitene և Matiene տեղանուններն անվանված են նաև Kommagia, Melitia, և Matia (տես Lehmann-Haupt, Armenien einst und jetzt, Bd. I, էջ 416)։ Ուրեմն Arachia և Archene տեղանունների արմատն է պարզապես Arach- (հուն. 'Αραχ-) կամ Arch- (հուն 'Αρχ-), որը կարող էր, իհարկե, հայերենում ստացած լինել «Հարք» ձևը։

Անհաղթահարելի մի դժվարություն չէ ըստ իս նաև այն հանգամանքը, վոր Archene-ն յերկրի անուն է, իսկ Arachia-ն կայարանի։ Վերև մենք տեսանք արդեն, վոր *Banantea — «Վանանտեա» կայարանի անունը համապատասխանում է Հին Հայաստանի Վանանդ գավառի անվան։ Կարելի յե, ուրեմն, յենթադրել, վոր Arachia-ն հին Archene յերկրի այն կենտրոնավայրն է, վորի անունով կոչվել է այդ յերկիրը ևս Archene կամ Հարք։

Մեր այս մանրամասն քննությամբ պարզվում է նույնպես, վոր Arachia կայարանը գտնվելու յեր այժմյան Բաղնոցի հյուսիսակողմում։ Իսկ այս յեզրակացությամբ հաստատվում է, ինչպես տեսնում ենք, Մարկվարտի վերոհիշեալ յենթադրությունը, վոր հին Archene-ն համարվելու յե ավելի մեծ ու ընդարձակ յերկիր, քան նախարարական Հայաստանի համանուն Հարք գավառը։ Հնագույն ժամանակներում, ըստ յերևույթին, հին Archene յերկրի մեջ են յեղել նաև Խորենացու աշխարհագրության հարևան գավառները, վորոնք հետագայում անջատվել են, հավանորեն, Archene-ից և դառել նախարարական ինքնուրույն շրջաններ։

Archene և Arachia տեղանունների այս նոր լուսաբանությամբ, վոր ինձ հավանական է թվում, պարզվում է, ինչպես տեսնում ենք, Հայաստանի պատմական աշխարհագրության մութ ու հետաքրքիր խնդիրներից մեկը, վորը վերաբերվում է հայերի հին գաղթավայր համարված Հարք գավառին։

Բացի Arachia յից Ռավեննացու աշխարհագրության մեջ հիշատակված են, ինչպես վերև ասացինք, նաև Indua և Didyma կայարանները։

Ա. Խաչատրյանը Կուլտուրայի Պատմության Ինստիտուտում կարդացած վերոհիշյալ իր զեկուցման մեջ Ռավեննացու Didyma-ն համապատասխան է յենթադրում այժմյան Դիդեմ գյուղին, վորը գտնվում է Արածանի գետի ձախ ափի մոտ՝ Բագավանից մոտ 15—20 կիլոմետր դեպի հյուսիս-արևմուտք։ Այս յենթադրությունը կարող է հավանական լի-

նել, վորովհետև Դիդեմը, վորն իր անվամբ նման է Didyma-յին, ընկնում է, իրոք, Բագավանից Տիգրանակերտ տանող ճանապարհի շրջանում։

18.— Մեր այս մանրախույզ ուսումնասիրությամբ ճշտվում են, ինչպես տեսնում ենք, վոչ միայն Tigranocarten-*Bagauna -Artaxata գծի ուղղությունը, այլ և նրա վրա գտնվող կայարանների մեծագույն մասը՝

Tigranocarten = Տիգրանակերտ, այժմյան Ֆարկինը.

Zanserio (Թավեննացու մոտ՝ Zancerion) = հավանորեն Zôniqart, Զընկերտ.

Cymiza = *Cyldiza = Կիլդիզ.

Dyzanas (Թավեննացու մոտ՝ Dizanas) = *Arzanas = Arzan, syr. Arzôn.

Patansana (Թավեննացու մոտ՝ Patransana) = *Patransauna = «Պատրանսաւան».

Vastauna (Թավեննացու մոտ՝ Bastavena) = *Bastauna կամ *Bastavana = «Բաստաւան», այժմ. Բոստաքենդ.

Molchia — մնում է անորոշ.

Daguevana (Թավեննացու մոտ՝ Dognavana) = * Dognevana = Դոնեվանք.

Flegoana = *Elegacana = Եղեգական.

Isumbo = *Tsumbo = Ծումբ.

Arachia (ըստ Թավեննացու), համեմատ Archene (Plin.) = Հարք.

Indua (ըստ Թավեննացու) — մնում է անորոշ.

Didyma (ըստ Թավեննացու) = Դիդեմ.

Raugonia (Թավեննացու մոտ՝ Ragauna) = *Bagauna = Բագաւան։

Մյուս կայարանները մինչև Արտաշատ մասնանշված և քննված են Artaxata—Satala նախորդ ճանապարհագծում։

Բոլոր այս կայարանների տեղագրությունը, ինչպես և ամբողջ ճանապարհագծի վերջնական ու ճշգրիտ ուղղությունը, պետք է հետագայում քննեն ու ստուգեն, անշուշտ, տեղում գիտական հատուկ արշավախմբերը։

### 3. ԱՐՏԱՇԱՏ — ՍԵԲԱՍՏՈՊՈԼԻՍ

*1. Արտաշատից Սեբաստոպոլիս գնացող ճանապարհն ունեցել է ըստ Պետինգերյան քարտեզի և Ռավեննացու աշխարհագրության հետևյալ կայարանները՝*

ARTAXATA 30 Strangira *(Ռավեննացու աշխարհագրությունն ունի* civitas Stranguriana *և* Stranguria, *վորից հետո հիշատակված է նրա մոտ նաև* Janio *կայարանը) 14* Condeso *(Ռավեննացին այս կայարանից հետո ունի նաև* Gavala*) 10* Misium *(Ռավեննացին* Misium*-ից հետո ունի* Savatinum*) 14* Gaulita *(Ռավեննացու մոտ՝* Gaulitia, *վորից հետո նա ունի նաև* Tendava*) 40* Pagas *7* Apulum *(Ռավեննացու մոտ՝* Apolum*) 5* CASPIAE *(Ռավեննացու մոտ՝ նաև* Caspi*) 45* Ad Mercurium *(Ռավեննացին ունի* Ermu*) 35* Ad fontem felicem *(Ռավեննացու մոտ՝* Fontfelice*) 60* SEBASTOPLIS *(Ռավեննացու մոտ՝* Sevantopoli *և* Sevastolis[1]*)։*

*Վերոհիշյալ թվերը ցույց են տալիս տարածությունները մի կայարանից մյուս կայարան հռոմեական մղոններով* (milia passus=*1.4815 կիլոմետր)։ Մեծագիր տառերով են տպված այն կայարանների անունները* (Artaxata, Caspiae *և* Sebastopolis*), վորոնց մոտ Պետինգերյան քարտեզն ունի նշած զույգ աշտարակներ։ Աշտարակները ցույց են տալիս, վոր այդ տեղերը յեղել են նշանավոր կենտրոնավայրեր կամ զինվորական պահակատեղիներ։*

*2. Կոնրադ Միլլերը իր* Itineraria Romana *աշխատության մեջ (եջ 653—654), նաև բացատրական հատուկ իր*

---

[1] *Տես* Itineraria Romana, *եջ 653—654։*

*քարտեզում (տես նույնը, էջ 649—650 և 651—652), ըստ այս ճանապարհի ուղղությունը յենթադրում է այժմյան Արդաշարից Արմավիրի, Ցերվանդաշատի և Ղարսի մոտով դեպի Արդահան և այնուհետև Կոբլիանի մոտով և Չեկարի լեռնանցքով դեպի Ռիոն և Ռիոնից Սեբաստոպոլիս, այսինքն՝ այժմյան Իսկուրիա։*

*Կայարանների տեղերը մանրամասն ցույց են տրված նրա մոտ հետևյալ հաջորդականությամբ՝*

Artaxata—*Արդաշար*, Strangira—*այժմյան Արմավիրում կամ նրա մոտ*, Condeso—*Կարակալայի մոտ գտնվող ավերակները*, Misium—*այժմ Ցերվանդաշատի և նրա մոտ գտնվող ավերակները*, Gaulita—*այժմ* Kjöroghlu Kalessi-*ի ավերակները*, Caspiae—*այժմ. Արդահան*, Ad Mercurium—*այժմ. Կոբլիան*, Ad fontem felicem—*այժմ. Ռիոն գետի մոտ*, Sebastopolis—*այժմ. Իսկուրիա։*

*Մենք կրտեսնենք ներքև, վոր Կոնրադ Միլլերի վորոշած ճանապարհի այս ուղղությունը և, բնականաբար, նաև կայարանների տեղերը* Artaxata-*ից մինչև* Ad fontem felicem, *վոչ միայն վիճելի յեն, այլ պարզապես անընդունելի։*

*Ավելի հաջող են, իմ կարծիքով, Ռ. Կիպերտի և Տոմաշեկի յենթադրությունները* Condeso, Pagas, Apulum *և* Caspiae *կայարանների տեղադրության մասին (տես* R. Kiepert, Atlas von Kleinasien in 24 Blättern, 1902—1906 *և* Tomaschek, Pauly—Wissowa Realencykl. «Caspiae» *տեղանունը)։*

*Ուշադիր քննությամբ, ինչպես կրտեսնենք, վոչ միայն հաստատվում են Կիպերտի ու Տոմաշեկի կռահումները, այլ և հաստատուն կերպով վորոշվում են թե ճանապարհի ամբողջ ուղղությունը և թե կարևորագույն մյուս կայարանները։*

*3. Արտաշատից 30 հռոմեական մղոն կամ 45 կիլոմետր հեռավորության վրա մատնանշված է Պևտինգերյան քարտեզում* Strangira *կայարանը։*

*Նույն կայարանը Ռավեննացու աշխարհագրության մեջ*

անվանված է Stranguria, իսկ յերկիրը՝ civitas Strangurianа, այսինքն՝ «տերություն Strangurianа»։ Յեվ վորովհետև Պևտինգերյան քարտեզը կազմված է չորրորդ դարի յերրորդ քառորդում հայ Արշակունիների տիրապետության ժամանակ՝ դժվար չէ կռահել, վոր Strangira կամ Stranguria կայարանը կենդրոն է յեղել հատուկ մի նախարարության, վորը Ռավեննացին անվանում է civitas, այսինքն՝ «տերություն»։

Կոնրադ Միլլերի կարծիքը, վոր այս կայարանի տեղը կարելի յե յենթադրել Արմավիրում՝ հակասում է, ինչպես կտեսնենք, Artaxata—Sebastopolis ճանապարհի այն նոր ուղղության, վոր վորոշվում է ճշգրիտ կերպով այժմյան Աբարանի ճանապարհով դեպի Մարմաշեն-Ղանլիճա (=Gaulita)։

Արդ՝ ուշագրավ է ու հետաքրքիր, վոր հենց այս ճանապարհի վրա և Արտաշատից մոտ 45 կիլոմետր հեռավորության վրա գտնվում է այժմ Աշտարակ դյուղը, վորն, ինչպես կարծում են, նշանավոր կենդրոնավայր է յեղել հնագույն ժամանակներում։ Յեվ ինձ թվում է, վոր անհավանական չի լինի յենթադրել, վոր Strangira կամ Stranguria տեղանվան մեջ կարող է պահպանված լինել, գուցե և աղճատված ձևով, այժմյան Աշտարակ գյուղի հին անունը, վորը, դժբախտաբար, հիշատակված չէ մատենագրական հնագույն յերկերում։

Առաջին անգամ Աշտարակ գյուղը, ինչպես հայտնի յե, հիշված է ութերորդ դարից հետո, իբրև հայրենիք Գևորգ Ա. կաթողիկոսի (տես Ասողիկ, III, 2, եջ 106)։

> «Թէպէտ և առ մնացեալ պատմիչս մեր—ասում է Ալիշանը—ոչ յառաջ քան զիններորդ դար յիշի Աշտարակ, իբրև հայրենիք Գէորգայ Ա. կաթողիկոսի, այլ հարկ է ամենայնիւ՝ եթէ ոչ միայն իբրև զայլս ոմանս ի գիւղից և աւանաց Արագածոտան բարգաւաճ եղեալ իցէ՝ կանխագոյն ևս ժամանակօք, այլ և քան զյոգունն՝ թէ ոչ քան զբնաւս՝ երևելի և շինաշատ» (տես «Այրարատ», Վենետիկ 1890, եջ 185)։

Ն. Մառը կարծում է նույնիսկ, որ նախաքրիստոնեական շրջանում Աշտարակը յեղել է վիշապների պաշտաման վայր և որ այստեղ բասիլիկ ձևի հին յեկեղեցին կառուցված է վիշապների հեթանոսական սրբավայրի ավերակների տեղում (տես „Легенды об основании Куара в Армении и Киева на Руси", Известия ГАИМК, т. III, Ленинград 1924, եջ 278)։

Ընդունելով ըստ այսմ, որ Աշտարակ գյուղը համարվելու յե մեծ ու նշանավոր հին կենտրոնավայր և ի նկատի ունենալով Strangira կամ Stranguria կայարանի վերոհիշյալ հեռավորությունն Արտաշատից՝ հնարավոր ու հավանական կարելի յե համարել ըստ իս, որ Պետինգերյան քարտեզի և Ռավեննացու աշխարհագրության վկայությունները վերաբերվում են, իրոք, Արշակունյաց շրջանի հին Աշտարակին, որի այժմյան անունը ծագել է, հավանորեն, նրա նախահայկական նման անունից, ըստ յերևույթին, ժողովրդական ստուգաբանությամբ։

Ուշագրավ է առանձնապես, որ Strangira կամ Stranguria կայարանի անվան — ira կամ ավելի ճիշտ — uria վերջավորությունը, ըստ յերևույթին, նախահայկական է և համապատասխանում է այժմյան Արմավիրի հին անվան վերջավորության՝ հուն. 'Αρμαουίρα (Ptolem., հրատարակ. 1901 թ., եջ 941) և 'Αρμαουρία։ Կարելի յե, ուրեմն, յենթադրել, որ Strangira-ն կամ Stranguria-ն, ինչպես և Արմավիրը, խալդական շրջանի տեղանուններ են, որոնց — ira կամ — uria վերջածանցը կարոտ է լեզվագիտական հատուկ մեկնության։ Այդ կարող են, իհարկե, անել, գլխավորապես, խալդագետ լեզվաբանները։

Անտարակուսելի յե սակայն, որ Artaxata-Sebastopolis ճանապարհն անցել է, ինչպես կտեսնենք, ոչ թե Արմավիրի, այլ այժմյան Աշտարակի մոտով։

4. Strangira կամ Stranguria կայարանից 14 հռոմեական մղոն կամ մոտ 21 կիլոմետր հեռավորության վրա Պետինգերյան քարտեզում նշանակված է Condeso կայարանը։

Սակայն Ռավեննացու աշխարհագրությունն ունի Condeso-յից առաջ նաև Janio կայարանը։

Այս վերջին վկայությունից դժվար չե հետևցնել, վոր հռոմեական քարտեզի ավելի ստույգ և ավելի լրիվ որինակում, վորից ոգտվել եր Ռավեննացին, մատնանշված ե յեղել վոչ միայն Janio կայարանը, այլ և տարածությունը Artaxata-յից մինչև Janio։ Ուրեմն՝ Condeso-յի հեռավորությունը Strangira-յից պետք ե լիներ վոչ թե 14 հռոմեական մղոն, այլ ավելի։

Վերոհիշյալ յերկու կայարանների թե անունները և թե հավանական տեղագրությունը հնարավոր ե, իմ կարծիքով, վորոշել Աշտարակից Կոնդախսաղ տանող ճանապարհի վրա։

Հենց այս Կոնդախսաղ գյուղը, ինչպես ճիշտ նկատել ե Ռ. Կիպերտը (տես Atlas von Kleinasien), համապատասխանում ե Condeso կայարանին։ Կոնդախսաղ անվան թուրքական նոր ձևը չպետք ե մեզ շփոթեցնի։ Հայաստանի աշխարհագրության ուշադիր քննությունը ցույց ե տալիս, վոր հայկական հին տեղանունները պահպանվել են հաճախ, կրելով վորոշ փոփոխություններ թուրքերենի ազդեցությամբ։

Որինակ՝ Վայոց ձորում գտնվող այժմյան Սելիմի լեռնանցքի անունը համապատասխանում ե, անտարակույս, Սուլիմաձոր անվան (տես Ալիշան, Սիսական, Վենետիկ 1893, եջ 163—164)։ Բասենում գտնվող այժմյան Ենդեկ գյուղը (ռուսական հին շտաբի տասը վերստանոց քարտեզի վրա՝ Эндэк), վորի արտասանությունը թուրքական ե, համապատասխանում ե դարձյալ, ինչպես վերև տեսանք, Պետինգերյան քարտեզի Andaga (Ռավեննացու մոտ՝ Andacas) կայարանին։

Ուրեմն՝ ավելի քան հավանական ե, վոր այժմյան Կոնդախսաղը, վորի անունը թուրքերեն ե թվում, կարելի յե յենթադրել ծագումով հին հայկական տեղանուն և նույնացնել Condeso-յի հետ։

5. Աշտարակից Կոնդախսաղ գնացող ճանապարհի վրա

պետք է լիներ ըստ այսմ և Ռավեննացու հիշատակած Janio կայարանը։ Սրա անվան մասին մենք տալիս ենք ներքև հնարավոր մի բացատրություն, սակայն վորոշ վերապահությամբ։

Janio կայարանի անունը կարող է աղճատված լինել ըստ իս J և T ու i և c տառերի շփոթման պատճառով։ Այս տեղանվան ուղիղ ընթերցվածը հնարավոր է, ուրեմն, յենթադրել *Tanco կամ *Tan(c)io։ Իսկ այս վերջին անունը կարող է, ինչպես կըտեսնենք, համապատասխան լինել հայերեն Ճանկի տեղանվան, վորը վոչ միայն գյուղերի, այլ և լեռան ու գետի անուն է, գլխավորապես, Աբարանի շրջանում (տես Ալիշան, «Այրարատ», եջ 249 և «Շիրակ», եջ 157, համեմատ նաև «Զամբռ», Վաղարշապատ 1873, եջ 125 և 289)։

Ուշագրավ է առանձնապես Ալիշանի հաղորդած տեղեկությունը Գյուլլուջայի մոտ գտնվող ավերակ կարավանատան մասին, վոր նա անվանում է Ճանկի կամ Ճանղու։

«Որպէս և ահա գրեալդ Վարգաբլուր — ասում է Ալիշանը — թերևս իցէ կոչեցեալն Քիւլլիւճա (իբր Կիւլիճէ), գիւղատեղի ամայի ի վերնակողման վիճակիս, յաջմէ կամ յարևմտից գետակին՝ զոր մարթ է սկիզբն համարել Քասաղայ, և հուպ յեկից կուսէ՝ Ճանկի-Թեփէ լեռնաբլրոյ, յոր անուն կայ և հանգրուան ի Հր. Քիւլլիճայ և դրխաթէ կից նմին, Ճանկի կամ Ճանղու անուն, ուր և աւերակ կարաւանատան» (տես «Այրարատ», եջ 249)։

Առկախ թողնելով Janio [*Tanco կամ *Tan(c)io] կայարանի տեղագրության խնդիրը՝ մենք հավանական ենք համարում, վոր այդ տեղանվան նույնացումը Ճանկի անվան հետ հնարավոր է։

Վոր այս կայարանի առաջին T տառը կարող է համապատասխան լինել հայերեն ճ տառին՝ այդ ցույց են տալիս տառադարձության նաև հետևյալ նման օրինակները՝ Արճեշ =լատ. Aretissa (Plin.), հին պրսկ. Ճիշպիշ=հուն. Τσίσπης,

հին պրսկ. Ճիթրաուշտա = հուն. Τιθραύστης (տես Markwart, Südarmenien und die Tigrisquellen, էջ 21)։

Դժվար չէ նաև բացատրել Janio [*Tanco կամ *Tancio] տեղանվան նաև — co կամ io վերջավորությունը։ Հայտնի է մեզ արդեն, որ Պևտինգերյան քարտեզի *Tsumbo կայարանը համապատասխանում է Ծումբ-Ծումբո գյուղին։ Հասկանալի է, ուրեմն, որ *Tanco կամ *Tancio տեղանունը կարող է նույնպես համապատասխան լինել հին հայերեն Ճանկի-Ճանկիո, Ճանկո աեղանվան։

Տարածությունն Աշտարակից մինչև Կոնդախսաղ այժմ մոտ 50 կիլոմետր է։ Յեթե Պևտինգերյան քարտեզում տարածությունը Strangira-յից մինչև Condeso ցույց է տրված 14 հռոմեական մղոն կամ 21 կիլոմետր՝ այդ բացատրվում է, ինչպես ասացինք, նրանով, որ քարտեզի արտագրողը չի նշանակել Janio [*Tanco կամ *Tancio] կայարանը։ Ուրեմն՝ Անանուն Ռավեննացու վկայության օգնությամբ քարտեզի սկզբնական բնագիրը կարելի է յենթադրել հետևյալ բովանդակությամբ՝ Strangira [?] Janio (հավանորեն՝ *Tanco կամ *Tancio) XIV Condeso:

6. Artaxata—Sebastopolis ճանապարհի ուղղությունը պետք է յենթադրել այնուհետև, հավանորեն, այժմյան Ղուլիջանի վրայով դեպի Ղանլիճա-Մարմաշեն։

Մենք տեսանք վերև, որ Պևտինգերյան քարտեզի հին ճանապարհներն անցել են, գլխավորապես, խալդական շրջանի պատմական հին կենտրոնավայրերի մոտով, որոնց մեջ գտնվում են այժմ խալդական արձանագրությունները։ Յեվ հենց այժմյան Ղուլիջանում գտնված է, ինչպես հայտնի է, Արգիշտի 1-ի կարևոր արձանագրությունը (տես Lehmann-Haupt, Armenien einst und jetzt, Bd. II, Zweite Hälfte, Berlin 1931, էջ XVIII)։ Հավանական է ըստ այսմ, որ հին այս ճանապարհի ուղղությունը կարելի է յենթադրել, իրոք, Կոնդախսաղից դեպի արևմուտք՝ Ղուլիջան գյուղի մոտով։

Այս գծի վրա Պևտինգերյան քարտեզում նշանակված

են հետևյալ կայարանները՝ Condeso 10 Misium 14 Gaulita, իսկ Ռավեննացու աշխարհագրության մեջ՝ Condeso, Gavala, Misium, Savatinum, Gaulitia:

Ուղիղ է, իմ կարծիքով, դարձյալ Ռավեննացու վկայությունը, վորն իր ձեռքի տակ ունեցել է հռոմեական նույն քարտեզի ավելի ընտիր մի ձեռագիր։ Այժմյան քարտեզի արտագրողը չի նշանակել, ինչպես այդ յերևում է քարտեզի նկարից (տես Itineraria Romana, էջ 637—638), Gavala և Savatinum կայարանները և համապատասխան տարածությունները, ըստ յերևույթին, տեղի սղության պատճառով։

Այս յենթադրությունը թվում է ինձ միանգամայն հիմնավոր, վորովհետև այժմյան տարածությունը Condeso—Կոնդախսազից մինչև *Ganlita—Գանլիճա վոչ թե 24 հռոմեական մղոն է (=մոտ 35 կիլոմետր), ինչպես ունի Պևտինգերյան քարտեզը, այլ մոտ 60 կիլոմետր։

Վերոհիշյալ կայարաններից Misium-ը Կոնրադ Միլլերը համարում է Ախուրյան գետը Յերվանդաշատի մոտ։ Misium-ը նա համապատասխան է յենթադրում Usis կամ Musis գետին, վորը հիշատակված է Պլինիուսի մոտ (տես edit. Littré, t. I, Paris 1883, VI, 10, 1, էջ 242)։ Այս յենթադրությունը, իհարկե, ճիշտ չե, վորովհետև Artaxata—Sebastopolis ճանապարհը վորոշվում է, ինչպես տեսանք, տարբեր ուղղությամբ։

7. Վոր Պևտինգերյան քարտեզի այս ճանապարհագիծն անցել է, իրոք, վերև մատնանշված հին ճանապարհով, վորը Սիմեոն կաթողիկոսի «Ջամբռ»-ում անվանված է «Վրացտանու ճանապարհ» (տես էջ 125)՝ այդ պարզ յերևում է Gaulita կայարանի տեղադրության ճշտումից, վոր մենք համարում ենք անվիճելի։

Վերոհիշյալ Gaulita-ն (Ռավեննացու մոտ՝ Gaulitia) թե իր անունով և թե իր տեղադրությամբ համապատասխանում է, անտարակույս, այժմյան Ղանլիճա գյուղին, վորի հին անունը պետք է յենթադրել վոչ թե Ղանլիճա, այլ, հավա-

նորեն, Գանլիճա։ Պետինգերյան քարտեզում Gaulita-յի անունն աղճատված է ակներևաբար լատինական u և n տառերի շփոթման պատճառով, ուստի և այս անվան ուղիղ ընթերցվածը պետք է ընդունել *Ganlita։ Իսկ *Ganlita-ն ճշտիվ համապատասխանում է «Գանլիճա» տեղանվան, վորովհետև, ինչպես վերև տեսանք, հայերեն ճ տառի տառադարձումը լատինական ու հունական t կամ τ տառերով սովորական է և լեզվաբանորեն միանգամայն որինաչափ։

Գանլիճան, ինչպես տեսնում ենք, գոյություն է ունեցել Արշակունյաց թագավորության ժամանակ և գտնվել է Հայաստանից Վրաստան և Կողքիս տանող հին ճանապարհի վրա։

Վոր այս գյուղը բնակելի ու կարևոր վայր է յեղել հնագույն իսկ խալդական շրջանում՝ այդ ևս վորոշ է, վորովհետև այդտեղ գտնված է խալդական արձանագրություն, վորից մենք գիտենք, վոր Արգիշտի I-ը (778—750 թ. ն. քան մեր գարաշրջանը) նվաճել է Երիախի յերկիրը և Իրդանունի քաղաքը։

Գտնվելով ռազմական ու առևտրական մեծ ճանապարհի վրա՝ Գանլիճան, բնականաբար, յենթարկվել է հաճախ ավերածության և անգամ բնաջինջ կործանման։

Մատենագրական հայ աղբյուրներում Գանլիճան, վորքան ինձ հայտնի յե, բնավ չե հիշատակված։ Առաջին անգամ, Բագրատունյաց միայն շրջանում, Ասողիկի ու նաև ավելի ուշ շրջանի մատենագրական յերկերում հիշվում է Գանլիճայում գտնվող Մարմաշեն վանքը, վորը կառուցել եր Վահրամ Պահլավունին 986—1029 թ. (տես Орбели, Надписи Мармашена, Петроград, 1914)։ Ալիշանի յենթագրությամբ (տես «Շիրակ», եջ 153)՝ նույն այս Գանլիճայում պետք է յենթադրել նույնպես Վահրամ Պահլավունու կառուցած ամրապատ և աշտարակազարդ դղյակը և պարիսպները, վորոնց մասին Սանահնեցիներին գրած իր թղթում Գրիգոր Մագիստրոսն ունի հետևյալ վկայությունը՝

«Եւ գդղեկաց սքանչելի և ամրապատ պարսպօք և

աշտարակօք յարամնեալ, որ և ի մահարձանաց ոք այժմ եթէ հայեսցի՝ ոչ ի բնավ բնակության Արամեան գտցէ ոք այսպիսի» (տես Կ. Կոստանեանց. Գրիգոր Մագիստրոսի թղթերը, Ալեքսանդրապոլ 1910, էջ 141)։

Գանլիճա-Մարմաշենի մասին ուշագրավ տեղեկություններ է հաղորդում, բացի այդ, Իբն ալ Աթիրը. վորը նկարագրել է Մարմաշենի նվաճումը 1064 թվին Սելջուկյան զորքերի կողմից Ալփասլանի վորդու Մելիքշահի առաջնորդությամբ։ Իբն ալ Աթիրի վկայությամբ՝ «Մարյամ-Նիշին»-ը յեղել է հոյակապ մի քաղաք, ունեցել է ամրապատ պարիսպներ և պաշտպանված է յեղել մի մեծ գետով։ Թուրքերը մոտեցել են պարիսպներին նավակների ոգնությամբ և կարողացել են գրավել քաղաքը համառ կռիվներից հետո։ Ներս խուժելով քաղաք՝ Սելջուկյան զորքերը վոչ միայն կոտորել են բնակչությունը, այլ և հրդեհել են ու քանդել քաղաքի շինությունները[1]։

Մարմաշենի վերանորոգումը, ինչպես հայտնի յե կաթուղիկե յեկեղեցու ընդարձակ արձանագրությունից, տեղի յե ունեցել Իվանե աթաբեգի և Զաքարե սպասալարի վորդու Շահնշահի հրամանով 1225 թվին «ի ձեռն որդւոյ Ապուղամրի Մագիստրոսի Տէր Գրիգորոյ արհիէպիսկոպոսի և հարազատի...Խարփին՝ թոռանց Վահրամա իշխանաց իշխանին» (տես Надписи Мармашена, էջ 2)։

Իբն ալ Աթիրի Սելջուկյան արշավանքներին վերաբերյալ մանրամասն վկայություններն ուշագրավ են ու հետաքրքիր այն տեսակետից, վոր նրանք պարզ ու վորոշ ցույց են տալիս, վոր Գանլիճա-Մարմաշենի մոտով է անցել, իրոք, հին ճանապարհը դեպի Ախալքալաք, Վրաստան և Ափխազք։

**8.** Պետինգերյան քարտեզի Artaxata-Sebastopolis գծի ուղղությունն այժմյան Աբաբանով և Գանլիճա—*Ganlita-յի

---

[1] Տես Ալիշան, Շիրակ, էջ 153–154, Saint-Martin, Mémoires II, Paris 1819, էջ 226–227 և Markwart, Das Itinerar von Artaxata nach Armastica, Wien 1928, էջ 39–40։

մոտով կարող է, ինչպես տեսնում ենք, յելակետ ծառայել հայ և օտար զորքերի սովորական ու հավանական ճանապարհի վորոշման Արտաշատից դեպի Շիրակ և Շիրակից դեպի Վրաստան ու Ափխազք։

Գանլիճայից դեպի հյուսիս գնացող հենց այս գծի վորոշ մասը մատենագրական հայ աղբյուրներում անվանված է ըստ իս «ճանապարհ Աշոցաց» կամ «ուղղոտայ կողմանցն Աշոցաց»[1]։

Վոր Պետինգերյան քարտեզի վերոհիշյալ հին ճանապարհով եյին գնում արշավող զորքերը Արտաշատից կամ Դվինից Կումայրի և այնտեղից Վրաստան ու Ափխազք՝ այդ յերևում է, օրինակ, Ղեոնդի, Ասողիկի և Սեբեոսի հետևյալ վկայություններից՝

1. «Պատմութիւն Ղեւոնդեայ մեծի վարդապետի Հայոց», Ս.-Պետերբ. 1887, գլ. ԼԴ, եջ 138՝

«Եւ սկիզբն բանիս այսորիկ լինէր ի ձեռն Արտաւազդայ, որ էր ի տանէ Մամիկոնէից. որոյ երթեալ ի մայրաքաղաքն Դուին՝ կազմութիւն մեծ առնէր զօրաց իւրոց. և ստանայր անդ զէնս և անօթս պատերազմի, և վառէր զինքն զրահիւք և սաղավարտիւք և ամենայն սպառազինութեամբք, և մտերիմ զինքն երևեցուցանէր զօրացն Իսմայելի, իբր թէ մարտնչել ընդ թշնամիս նոցա կազմիցի։ Եւ որոշեալ զինքն ի միաբանութենէ նոցա՝ հասանէր ի գաւառն Շիրակ ի գիւղն Կումայրի, և սպանանէր զհրամանատար հարկին։ Եւ որ ինչ գտանէր ի ձեռին նորա առեալ՝ համբառնայր ամենայն տամբ իւրով, գնայր ի կողմանս Վրաց աշխարհին, և ընդ նմա ամենայն

---

[1] Տես «Համառոտ պատմութիւն Վրաց, ընծայեալ Ջուանշէրի պատմչի», Վենետիկ 1884, եջ 33 և «Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտեցւոյ, Պատմութիւն Հայոց», Թիֆլիս 1912, եջ 195։ Հմմտե նաև Լեոնտի Մրովելու հետևյալ վկայությունը՝ «Իսկ իրենք Վրաց (Քարթլիի) թագավորները Մցխեթից ուղղվում եյին դեպի Հայք (Սամխիթ) Աշոցքի ճանապարհով», տես Պրոֆ. Դր. Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, Հատոր Ա, Յերեվան 1934, եջ 157—158։

նախարարք աշխարհիս։ Եւ հասեալ համբաւ ի քաղաքն Դուին, եթէ այս ոճիրք դառն գործեցան յորդւոցն Հմայեկի՝ վաղվաղակի առնոյր զօր բազում Մահմետն, և զՍմբատ որդի Աշոտայ զսպարապետն Հայոց և զայլ նախարարսն, և հետամուտ լինէր զկնի նոցա. հասանէր յաշխարհին Վրաց ի գաւառին որ կոչի Սամցխէ. և կալեալ զկիրճսն՝ Թափէր ապուռ ինչ յաւարէն. և զնոսա վարեալ փախստական առնէր յաշխարհէս Հայոց»։

2. «Ստեփանոսի Տարօնեցւոյ Ասողկան, Պատմութիւն տիեզերական», Ս.-Պետերբուրգ 1885, էջ 252—253՝

«Ցայսմ պատճառէ որդին Գուրգենայ թագաւոր Ափխազաց խաղայ զօրօք բազմօք ի Սարմատացւոց աշխարհէն ի վերայ կիւրապաղատին Դաւթի և հաւուն իւրոյ Բագարատայ, յայսկոյս անցեալ ընդ կովկասային լերինսն՝ գայ բանակի յեզերս Կուրն կոչեցեալ գետոյ։

Եւ կիւրապաղատն Տայոց Դաւիթ և թագաւորն Վրաց Բագարատ առաքեն առ թագաւորն Հայոց Սմբատ՝ կոչել յօգնականութիւն իւրեանց։ Եւ նորա առեալ զամենայն զօրս Հայոց և զԳագիկ զեղբայր իւր՝ գնաց առ նոսա ի գաւառն Ջաւախաց. և բանակին ի գիւղն, որ կոչի Դլիվեկն, և մանուկն Աբաս թագաւորն Կարուց զկարմրազգեստ զգունդն իւր ունելով։ Եւ ամենայն զօրն Վրաց և Վասպուրականի, Սիւնեաց և Աղուանից իշխանքն միահաւաք լինէին ընդդէմ Ափխազաց զօրուն։ Որոց երկուցեալ՝ զխաղաղութիւն խնդրեն և սէր հաստատեն առ միմեանս»։

3. «Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն», Ս. Պետերբուրդ 1879, գլ. ԻԴ, էջ 80՝

«Արդ՝ զսա [զՓիլիպիկոս] բռնադատեալ Հերակղի, կարգէ զաւրավար և արձակէ ի կողմանս արևելից զաւրու մեծաւ։ Եւ նորա դիմեալ ընդ Կեսարիա Կապադովկացւոց, երթեալ հասանէր ի Հայաստան երկիր՝ ի գաւառն Այրարատայ, և բանակի ի դաշտին Վաղարշապատ քաղաքի։ Հապճեպ ստիպով ի ձեռն Թեթևընթաց երա-

գոտն սուրհանդակաց հրաման Թագաւորին հասաւ. մեծաւ վտանգաւ ստիպէր զզաւրս իւր հասանել զհետ Նորա, և անյիշատակ ի միջոյ ի բաց բառնալ զզաւրն։ Եւ Նոքա երթեալ մեծաւ ստիպով հասին ի գաւառն Այրարատայ և բանակեցան ի վերայ գետեզերն Երասխայ, կամեցեալ առ վաղիւն խմբել զգործ պատերազմին։ Ի Նմին ժամու ի գիշերին գնացեալ ի վերայ Փիլիպպոսի ի Նիգ գաւառի և պաաեալ զԹիկամբք լերինն Արագածայ, երթեալ անցանէ ընդ Շիրակ և ընդ Վանանդ մերձ քաղաքաւն Կարնոյ և երթեալ հասանէ ի սահմանս իւր»։

Այս վկայություններից առաջինի համաձայն Արտավազդ Մամիկոնյանի ճանապարհը պետք է ենթադրել Դվինից Աբարանի վրայով Կումայրի և այնտեղից Գանլիճայի մոտով և Աշոցք ու Ջավախք գավառների միջով Սամցխե։ Երրորդ վկայության մեջ ճանապարհամասն Աշտարակից մինչև Շիրակ համապատասխանում է դարձյալ Պևտինգերյան քարտեզի ճանապարհագծին՝ «Վաղարշապատ քաղաքի դաշտ»-ից Աշտարակի մոտով և Նիգ գավառի միջով դեպի Շիրակ և այնուհետև Կարսի ու Կարինի մոտով «ի սահմանս իւր»։ Երկրորդ վկայության մեջ ևս զորքերի տեղաշարժումները վորոշվում են դարձյալ Պևտինգերյան քարտեզի այն ճանապարհամասով, վորի ուղղությունը Ներքև լուսաբանելու յենք։ Ափխազաց Թագավորի զորքերը յեկել եյին Կուր գետի յեզերքը, հավանորեն, այժմյան Ռուսի, Ջեկառի լեռնանցքի և Արսաթումանի վրայով, իսկ Դավիթ կյուրապաղատի և Հայոց Սմբատ Թագավորի զորքերը՝ գալով Ջավախք Գանլիճայի մոտով՝ բանակել եյին այստեղ Դլիվեկ գյուղում, վորը, հավանորեն, Ախալքալաքի հարավակողմում գտնվող այժմյան Դիլիֆ գյուղն է։

9. Գանլիճայից հետո Պևտինգերյան քարտեզում Նշանակված են հետևյալ կայարանները՝ *Ganlita 40 Pagas 7 Apulum 5 CASPIAE, իսկ Ռավեննացու աշխարհագրության մեջ՝ Gaulitia, Tendava, Pagas, Apolum և Caspi։

Այս կայարաններից ճիշտ են վորոշված, ինչպես վերև

ասացինք, Pagas, Apulum (Ռավեննացու մոտ՝ Apolum) և Caspiae (Ռավեննացու մոտ՝ Caspiae և Caspi), որոնց անուն-ները Տոմաշեկը համապատասխան է համարել այժմյան Փո-գային Փարվանա լճի մոտ և Փոգայից դեպի արևմուտք գտնվող Արուլին և Խոսպիային (տես Pauly-Wissowa Real-encykl.)։ Այս յերեք կայարանների հնագույն տեղադրու-թյունն անհրաժեշտ է, անշուշտ, ճշտել տեղում։

Խոսպիայի մոտ, որ գտնվում է Ախալքալաքից մի քանի կիլոմետր դեպի հարավ, Պևտինգերյան քարտեզում նկարված են զույգ աշտարակներ։ Կարելի յե ըստ այսմ յենթադրել, որ հին Ջավախքում կարևոր կենտրոնավայր է յեղել ոչ թե այժմյան Ախալքալաքը, այսինքն՝ Նոր քաղաքը (վրց. ախալի քալաքի = Նոր քաղաք), այլ հնագույն Խոսպիան։

Տարածությունը *Ganlita-յից մինչև Pagas Պևտինգեր-յան քարտեզում ցույց է տրված 40 հռոմեական մղոն կամ մոտ 60 կիլոմետր, մինչդեռ այժմյան հեռավորությունը Գան-լիճա-Մարմաշենից մինչև Փարվանա լիճը մոտավորապես 80—85 կիլոմետր է։

Այս հակասությունը բացատրվում է, իմ կարծիքով, նրանով, որ Պևտինգերյան այժմյան քարտեզի ընդօրինա-կողը բաց է թողել դարձյալ Tendava կայարանը և տարա-ծությունը *Ganlita-յից մինչև Tendava, որ նշանակված են յեղել հռոմեական այն քարտեզում, որից օգտվել է Անա-նուն Ռավեննացին։ Tendava-յի տեղը պետք է յենթադրել, հավանորեն, *Ganlita-Գանլիճայից մոտ 20—25 կիլոմետր դեպի հյուսիս։

Պևտինգերյան քարտեզի սկզբնական հին բնագիրը հնա-րավոր է ըստ այսմ մոտավորապես վերականգնել հետևյալ բովանդակությամբ՝ *Ganlita? (մոտ 20—25 կիլոմետր) Tendava 40 Pagas 7 Apulum 5 Caspiae։

10. Խոսպիայից հետո ճանապարհի ուղղությունը որ-րոշվում է միանգամայն հաստատուն կերպով և առանց որևէ դժվարության։

Պևտինգերյան քարտեզում Caspiae կայարանից 45 հռո-

մեական մղոն կամ մոտ 67 կիլոմետր հեռավորության վրա նշանակված է Ad Mercurium կայարանը։ Կոնրադ Միլլերը, վորը Caspiae կայարանի տեղը վորոշել է այժմյան Արդահանում, Ad Mercurium-ի տեղը յենթադրում է Արդահանից բարձրացող ճանապարհի վրա՝ այժմյան Կոլլիան գետի մոտ։ Իսկ Տոմաշեկը, վորը Caspiae կայարանի անունը համապատասխան է համարել այժմյան Խոսպիային, Ad Mercurium-ի տեղը յենթադրում է, հակառակ հռոմեական քարտեզում ցույց տված տարածության, Ախալքալաքից Ախալցխա տանող ճանապարհի վրա՝ այժմյան Ասպինձայում։

Այս յերկու. յենթադրությունն էլ ըստ իս անընդունելի յեն։ Ad Mercurium-ը, անտարակույս, Կուրի այն գետանցքն է, վորը գտնվում է այժմյան Ախալցխայի մոտ։ Ad Mercurium, այսինքն՝ «Mercurium-ի քով» նշանակում է վոչ այլ ինչ, քան «Կուրի գետանցքի մոտ»։

Mercurium-ը չէ կարող, իհարկե, վորեւէ կապ ունենալ Յուպիտերի վորդու Mercurius-ի հետ։ Այս անվան մեջ um-ը լատինական վերջավորություն է, իսկ Mercuri-, վոր պետք է ըստ իս ուղղել *Metcuri-, համապատասխանում է, անտարակույս, Կուր գետի վրացական Mtkuari անվան։

Վոր այս մեկնությունը հիմնավոր է և անվիճելի՝ այդ պարզ ցույց է տալիս Պետինգերյան քարտեզում մատնանշված 45 հռոմեական մղոն կամ մոտ 67 կիլոմետր տարածությունը Caspiae կայարանից մինչև Ad *Metcurium։ Հենց ճիշտ և ճիշտ այդ տարածության վրա յե գտնվում այժմյան Խոսպիայից Կուր գետի անցքը Ախալքալաք-Ախալցխա ճանապարհի վրա՝ մոտ 8 կիլոմետր Ախալցխայից դեպի հարավ-արևելք։

Միանգամայն պարզ է, ուրեմն, վոր Ad *Metcurium-ը թե ըստ իր անվան և թե ըստ վերոհիշյալ տարածության համապատասխանում է ճշտիվ Mtkuari- Կուրի գետանցքին։

*11.* Ad *Metcurium կայարանից հետո Artaxata-Sebastopolis հին ճանապարհի ուղղությունը վորոշվում է այժմյան

Արասթումանի ու Ջեկարի լեռնանցքի վրայով դեպի Ուրոն և Ուրոնից դեպի Սեբաստոպոլիս։

Ճանապարհի այս գծի վրա Պևտինգերյան քարտեզում ցույց են տրված հետևյալ կայարանները՝ Ad *Metcurium 35 Ad fontem felicem 60 Sebastoplis, իսկ Ռավեննացու աշխարհագրության մեջ՝ Ermu, Fontfelice և Sevantopoli կամ Sevastolis։

Տոմաշեկը, որը Ad Mercurium-ի տեղը մատնացույց է արել, ինչպես տեսանք, այժմյան Ասպինջայում՝ Ad fontem felicem-ի տեղը ենթադրում է այժմյան Ազղուրում։ Իսկ Կոնրադ Միլլերը, որն Ad Mercurium-ի տեղը որոշել է Կոբլիան գետի մոտ՝ հավանական է համարում, որ Ad fontem felicem-ի տեղը պետք է լիներ Ուրոն գետի մոտ։

Այս վերջին կարծիքը թվում է ինձ հավանական, որովհետև այս կայանը ևս, ինչպես երևում է նրա անունից (համեմատե Ad confluentes, Ad *Metcurium են), պետք է լիներ գետանցքի մոտ։

Անհրաժեշտ է սակայն մատնանշել, որ այս ենթադրությունը չի համապատասխանում Պևտինգերյան քարտեզում ցույց տրված հեռավորությանը։ Այժմյան այդ քարտեզի մեջ տարածությունն Ad *Metcurium-ից մինչև Ad fontem felicem ցույց է տրված 35 հռոմեական մղոն կամ մոտ 52 կիլոմետր, իսկ, իրապես, տարածությունը Ուրոն գետից մինչև Կուր գետը (այժմյան Ախալցխայի մոտ) մոտավորապես 110 կիլոմետր է։

Լինչի մոտ, որը մանրամասն նկարագրել է այս ճանապարհը, տարածությունը Քութայիսից մինչև Ախալցխա ցույց է տրված 113 վերստ, այսինքն՝ 120 կիլոմետր (տես Армения, т. I, Тифлис 1910, էջ 65—73)։

Դժվար չէ սակայն բացատրել, թե ինչու Պևտինգերյան քարտեզի վերոհիշյալ հեռավորությունը չի համապատասխանում այժմյան իրական տարածությանը։ Քննելով Պևտինգերյան քարտեզի և Ռավեննացու աշխարհագրության վկայությունները՝ վերև մենք արդեն տեսանք, որ հռոմեական

այժմյան քարտեզի ընդորինակողը չի արտագրել մի շարք կայարանների անուններ և նրանց մոտ նշանակված մղոնաթվեր, վորոնք յեղել են Ռավեննացու ավելի հին ու ավելի ընտիր որինակում։

Կարելի յե, ուրեմն, յենթադրել, վոր ճանապարհի այս գծում ևս Պևտինգերյան քարտեզում չեն նշանակված Ad *Metcurium-ից հետո Ermu կայարանը, նաև համապատասխան տարածությունը, վոր հիշված են յեղել, հավանորեն, Ռավեննացու ձեռագրում։

12. Ad fontem felicem կայարանից հետո Պևտինգերյան քարտեզում նշանակված է, ինչպես ասացինք, Sebastopolis կայարանը, վորի հեռավորությունն Ad fontem felicem-ից ցույց է տրված 60 հռոմեական մղոն կամ մոտ 90 կիլոմետր։ Արդ՝ հետաքրքիր է և ուշադրության արժանի, վոր ուղիղ այս հեռավորության վրա գտնվում է Ռիոնի գետանցքի մոտից (=Ad fontem felicem) վոչ թե Իսկուրիա-Սեբաստոպոլիսը, այլ այժմյան Փոթին, վորը, ինչպես հայտնի յե, Տրայանոս կայսեր ժամանակվանից սկսած (98—117 թ. Քր. հ.) անվանվել է նույնպես Sebastopolis (տես H. Kiepert, Handbuch der alten Geographie, Berlin 1878, էջ 88)։

Թեև Պևտինգերյան քարտեզի նկարից և վորոշ ցուցումներից յեզրակացնում են սովորաբար, վոր նրա մեջ հիշատակված Sebastopolis-ը այժմյան Իսկուրիան է, սակայն տարածությունը, ինչպես տեսնում ենք, ցույց է տրված դեպի Phasis-Sebastopolis, այսինքն՝ դեպի այժմյան Փոթի։

Այս լուսաբանությունը կարևոր է, վորովհետև նոր այս նույնացումը կարող է յելակետ ծառայել Պևտինգերյան քարտեզի այն խառնաշփոթ տեղեկությունների բացատրության, վորոնք վերաբերվում են Սեբաստոպոլիսից դեպի Տրապիզոն տանող ծովեզրյա ճանապարհին։

Մեր այս ուսումնասիրության մեջ թեև կան յենթադրական վորոշ դիտողություններ, վորոնք կարող են վիճելի համարվել, սակայն առարկություններն այդ կետերի նկատմամբ չեն կարող բնավ խախտել հիմնական մեր ստացած

*յեզրակացությունն* Artaxata-Sebastopolis *ճանապարհի ուղղության մասին, որը լուսաբանված է նաև հատուկ քարտեզում։*

*Վերոհիշյալ* *Ganlita-*յի (=Գանլիճա)* *և* Ad *Metcurium-*ի (=Մտկուարի) ճշգրիտ որոշմամբ հին այս ճանապարհի ուղղությունը ստացվում է, անտարակույս, ոչ թե Արմավիրի, Կարսի և Արդահանի վրայով, ինչպես յենթադրել է Կոնրադ Միլլերը, այլ հյուսիսային գծով՝ այժմյան Աշտարակի, Կոնդախսաղի, Ղանլիճայի ու Խոսպիայի մոտով դեպի Ախալցխայի մոտ գտնվող Կուր գետի անցքը և այնուհետև Ջեկառի լեռնանցքով դեպի Ռիոն գետը և այնտեղից դեպի Սեբաստոպոլիս։*

---

## *ՊԵՎՏԻՆԳԵՐՅԱՆ ՔԱՐՏԵԶԻ ՏԱՌԵՐԻ ՆՄՈՒՇՆԵՐ*[1]

| | | |
|---|---|---|
| a - ddd, a | i - l, ı | t - tTT, ttr |
| b - Bb, b | l - Ll, ll | u - ν ς, u |
| c - CC, c | m - M M M, m m | v - ν, ν ν |
| d - n n, ∂ d | n - H H, n ɴ | w - w |
| e - ι ε ε, e | o - O, o | x - X, x x |
| f - F F F | p - p p P P, p | y - Y, y |
| g - G G, g g | q - Q, q q | z - Z, z z |
| h - H, н η | r - R, r r | ä - ς ς |
| i - l, ı | s - S, s ſ ſ | ü - ú |

---

[1] *Տես* K. Miller, Itineraria Romana, *էջ* LII.

## 4. ԱՐՏԱՇԱՏ—ԽՈՅ—ՊԱՐԵՍԱԿԱ.

1. Պևտինգերյան քարտեզում նշանակված է նաև Արտաշատից Պարսկաստան (Ecbatanis) գնացող հին ճանապարհը, որի մի մասը մինչև Paresaca քննության ենք առնելու ներքև։

Արտաշատից մինչև Paresaca ցույց են տրված քարտեզում հետևյալ կայարանները՝ ARTAXATA 39 Catispi 27 Sorvae [24] Anteba 24 Nasabi 17 Gobdi (Ռավեննացու մոտ՝ Gobdie) 24 Filadelfia 20 Tris peda (Ռավեննացու մոտ՝ Tarspedo) 45 Paresaca[1]։

Գլխագիր տառերով տպված են մեր ընտագրում այն կայարանների անունները, որոնց մոտ Պևտինգերյան քարտեզում նկարված են զույգ աշտարակներ։ Թվերը ցույց են տալիս տարածությունները մի կայարանից մյուս կայարան հռոմեական մղոններով (milia passus=1,4815 կիլոմետր)։

Catispi, Sorue, Anteba և Nasabi կայարանները և նրանց մոտ նշանակված մղոնաթվերը սխալմամբ արտագրված են, ինչպես վերև տեսանք, նաև Բագավանից Ծումբ գնացող ճանապարհագծում։ Հարևան այս ճանապարհագծում նշանակված է «Sorue»-յից հետո նաև վերև անկյունավոր փակագծում գրված տարածությունը մինչև Anteba, որը սխալմամբ բաց է թողնված այս ճանապարհում։

Հատուկ ուշադրության են արժանի նաև Պևտինգերյան քարտեզի մի քանի մանրամասնությունները։ Artaxata և Catispi կայարանների միջև նկարված է քարտեզում, ըստ

---

[1] Տես Itineraria Romana, էջ 781—782։

յերևույթին, այժմյան Աղրի-դաղ լեռնաշղթան, սակայն այդ յերկու կայարանները չեն միացված սովորական նկարագծով։ Բացի այդ, հետաքրքիր է և, ինչպես կըտեսնենք, առանձնապես կարևոր, վոր տարածությունները Artaxata-յից մինչև Paresaca ցույց են տրված հռոմեական մղոններով, իսկ Paresaca-յից սկսած մինչև Ecbatanis պարասանգներով։

2. Կոնրադ Միլլերն իր Itineraria Romana աշխատության մեջ (եջ 781—782) և բացատրական հատուկ իր քարտեզում (տես նույնը, եջ 783—784) այս ճանապարհի ուղղությունը յենթադրում է այժմյան Արդաշարից Խոյի և Մարանդի մոտով դեպի Թավրիզ և կայարանների տեղերը լուսաբանում հետևյալ հաջորդականությամբ՝

Artaxata—Արդաշար, Catispi այժմ Achachmet (տես ռուսական հին շտաբի տասը վերստանոց քարտեզի վրա՝ Аг-Ахмет Սադարակի և Բաշնորաշենի միջև) կամ Kuzchana, Sorvae—այժմ. Մակվա գետի կամ Meszur-ի մոտ, Anteba—այժմ Perchik Isai-ի մոտ, Nasabi այժմ Tschors (Kyrys), Gobdi—այժմյան Խոյի շրջանում, Filadelfia—այժմ. Խոյի և Մարանդի միջև, Tris peda—այժմ. Մարանդի մոտ, Paresaca—այժմ. Թավրեզի շրջանում։

Մարկվարտի կարծիքով՝ հռոմեական սկզբնական քարտեզի վրա մի առանձին գիծ է յեղել Isumbo-յից Gobdi, վորը Պևտինգերյան քարտեզում նշանակված է սխալմամբ Artaxata—Ecbatanis ճանապարհի վրա (տես Die Entstehung und Wiederherstellung der armenischen Nation, Berlin 1919, եջ 69)[1]։ Իսկ Կարլ Մյուլլերը, ընդունելով վոր վերոհիշյալ Sorue-Sorvae-ն կարող է համապատասխան լինել Պտոլեմեյոսի Terua-յին, ճանապարհագծի ուղղությունը յենթադրում է

[1] Մարկվարտի այս յենթադրությունը, վորը յես հավանական եյի համարել «Հայաստանի հին ճանապարհները» նախորդ իմ աշխատության մեջ (տես Տեղեկագիր Գիտ. և Արվ. Ինստիտուտի № 5, Յերևան 1930, եջ 78, ծան.1), չի հաստատվում այն նոր տվյալներով, վոր քննության են առնվելու սույն ուսումնասիրության մեջ։

Նախիջևանի վրայով (տես Մարկվարտի «Das Itinerar von Artaxata nach Armastica», Tafel III)։

Իմ կարծիքով, Հայաստանի հին այս ճանապարհի վերոհիշյալ ուղղությունները, վոր մատնանշված են յեվրոպական գիտնականների ուսումնասիրություններում, միանգամայն անհավանական են ու անընդունելի։ Ճիշտ կարելի յե համարել նրանց կարծիքը միայն Gobdi կայարանի անվան ու տեղադրության մասին, վոր նրանք համապատասխան են յենթադրում այժմյան Խոյին։

Իրապես, ճանապարհագծի ուղղությունն Artaxata-յից մինչև Gobdi վորոշվում ե այն հին ճանապարհով, վորը պարզ կերպով մատնանշված ե մատենագրական հայ աղբյուրներում և վորն ուշադրության չե առնված վերոհիշյալ աշխատություններում։

3. Արտաշատից դեպի Պարսկաստան գոյություն են ունեցել, ինչպես հայտնի յե հայկական աղբյուրների վկայություններից, յերկու հին ճանապարհներ, մեկը՝ Նախիջևանի վրայով, իսկ մյուսը՝ հին Կոգովիտ գավառի միջով։

Յերկրորդ այս ճանապարհագիծը, վորն Արտաշատից գնում եր Հեր ու Զարևանդ գավառները՝ ունեցել ե Կոգովիտից մինչև Խոյ մի քանի ճյուղեր տարբեր ուղղությամբ։ Կոգովիտից կարելի յեր գնալ Ատրպատական և Պարսկաստան կամ Բերկրիի և Կոտորի վրայով, վոր յերկար, իհարկե, ու հեռավոր ճանապարհ եր, և կամ ուղիղ ու կարճ գծով, վորն իջնում եր Խոյ հին Արտազ գավառի միջով։

Պևտինգերյան քարտեզի ճանապարհագիծը, ինչպես պարզ յերևում ե քարտեզի նկարից, անցել ե Կոգովիտի միջով։ Քարտեզի նկարում միանգամայն ճիշտ մատնացույց ե արված, վոր Artaxata-ն գտնվել ե Արարատյան լեռների հյուսիսակողմում, իսկ Catispi-ն հարավակողմում։ Դժվար չե նաև համոզվել, վոր Կոգովիտից այդ գիծը՝ համաձայն քարտեզում մատնանշված միջկայարանային հեռավորությունների՝ հավանական ե յենթադրել վերոհիշյալ կարճ ճանապարհով և Արտազ գավառի միջով։

Հատկապես այս ճանապարհը հիշատակված է, օրինակ. մատենագրական հայ աղբյուրների հետևյալ վկայություններում՝

1. Ղազար Փարպեցի, II, ԼԷ (Տփղիս 1904, էջ 69)՝

«Զոր լուեալ երանելւոյ սպարապետին Հայոց [Վարդանայ] և որ ընդ նմայն էին՝ ևս առաւել ճեպէին երթալ ընդդէմ նոցա. նախ՝ վասն վաղվաղակի պատահելոյ նոցա ժամու մարտիրոսութեան. քանզի անձանձրոյթ աղօթէին հանապազ ի տուէ և ի գիշերի, լինել արժանի այնպիսի մասին երկնաւորի. և երկրորդ՝ ասէին, թէպէտ անդէն ի տեղւոջն ի Հեր և ի Զարեանդ գաւառին վճարին ելք գործոյն պատերազմին, և ոչ ոք լինէր արգել զօրուն Պարսից հասանել յաշխարհն Հայոց սպանութեամբ և գերելով յարձակել և վնասել։ Եւ սոցա թէպէտ և ածեալ զայսպիսի ինչ զմտաւ կամէին փութալ՝ սակայն ևս առաւել ստիպով եկեալ հասանէին գունդն Պարսից ի գաւառն Արտազ, հուպ ի գեօղն որ կոչի Աւարայր, ի շրջափակ տեղի Տղմուտ դաշտին, զոր ընտրեաց յաղագս երկիւղի զօրացն հայոց. ամուր ապաստանի անձանց համարէին պատշաճ, և ի միջի նորա ածեալ ղակիշ բանակէին»։

2. Նոյնը, III, ՀԱ, էջ 128՝

«Եւ անցուցեալ զաւուրս դառնաշունչ ձմերայնւոյ ցրտոյն՝ հասանէին գարնանային ժամանակի օգոյն բարեխառնութեան. լսէին, թէ զօր բազում խաղացեալ գայ ի Պարսից. եկեալ հասեալ են ի սահմանս Հերայ և Զարաւանդ գաւառի բազում զօրագլուխք..... Փութացաւ և զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան, առեալ ընդ իւր և զսուրբ հայրապետն Հայոց զտէր Յոհան, յուսալով յաղօթս առնն, թէ ամենայն ինչ ըստ նորա կամելոյ կատարի յԱստուծոյ, և գումարեալ զզօրսն Հայոց՝ ճեպէր հարկանել նոցա ի դիմի անդէն զայն տեղեօք. «Թերևս ոչ, ասէր, լիցի անցանել բազմութեանն Պարսից ի միջոց կողմն աշխարհիս Հայոց»։ Եւ առեալ

ընդ իւր վնախարարսն և զազատս և զայլ ամենայն ռա-
միկն, որք կամաւոր խնդութեամբ երթային ի գործ պա-
տերազմին, և չուեալք ի Դունայ զօրքն Հայոց՝ ըստ
աւուրս օթևանացն երթեալ հասանէին ի գաւառն յԱր-
տազ, և մօտեալք ի գունդն Պարսից՝ բանակէին ի գիւղ
մի, որում անուն էր Ներսէհապատ»։

3. Սեբէոս, գլ. ԻԶ (Ս. Պետերբուրգ 1879, եջ 94)՝

«Յայնժամ առեալ Երակլի զզաւրս իւր՝ դարձաւ
յերկիրն Հայոց, անցեալ ընդ Շիրակ հասանէ ի հուն
գետոյն Երասխայ, և անց ընդ գետաւն առ Վարդանա-
կերտաւն աւանաւ, երթեալ թափեցաւ ի Գոգովիտ գա-
ւառ։ Եւ Ռոճիկ Վահտնայ և զաւրուն Պարսից կարծե-
ցեալ զնոսա փախստական գնալ։ Իսկ նորա ճանապարհ
կալեալ ի Հեր և ի Զարևանդ գաւառ, դէպուղիղ ի Տիզ-
բոն ի վերայ Խոսրովու»։

4. Ղևոնդ, գլ. Բ. եջ 7 (Ս. Պետերբուրգ 1887)՝

«Եւ մեծ մասն զօրուն [Իսմայելացւոց] հատեալ աս-
պատակէին յաշխարհս Հայոց ընդ կողմն Պարսից, և առ-
նուին ի գերութիւն զաւանս Մարաց և զգաւառն Գողթն
և զգաստակերտն Նախջաւանու. և զբազումս յարանց
ընդ սուր անցուցանէին, և զայլս գերի վարեալ կանամբք
և մանկտեաւ՝ անցուցանէին ընդ գետն Երասխ ընդ
հունն Ջուղայոյ։ Եւ ընդ երկուս բաժանեալ զօրքն՝
ոմանք զգերեալսն դարձուցանէին յաշխարհն իւրեանց։
Եւ գունդ մի հատեալ ասպատակէին ընդ գաւառն Ար-
տազ ի վերայ զօրավարին Յունաց, որում անուն էր
Պռոկոպ, որ էր բանակեալ ի գաւառին Կոգովտի ի սահ-
մանս Բագուձորոյ և Մարդուցայից, որում իրազեկ եղ-
եալ իշխանն Թէոդորոս, որ էր յազգէն Ռշտունեաց՝ ազ-
դէր զօրավարին Պռոկոպայ, «եթէ զօր հինին Իսմայելի
զարթուցեալ գայ ի վերայ մեր»։

Վոր նույն այս կարճ գծով է վորոշվում Պևտինգերյան
քարտեզի հին ճանապարհը՝ այդ ապացուցվում է, ինչպես
կըտեսնենք, հենց այդ քարտեզում մատնանշված կայարան-
ների անունների քննությամբ։

*4.* Artaxata-*յից 39 հռոմեական մղոն կամ մոտ 58 կիլոմետր հեռավորության վրա Պևտինգերյան քարտեզում նշանակված է* Catispi *կայարանը։*

*Այս կայարանի անունը, ինչպես ուղիղ յենթադրել է Միութենական Ակադեմիայի Անդրկովկասյան բաժանմունքի ասպիրանտ Ս. Ցերեմյանը*[1], *համապատասխանում է Սեբեոսի մոտ հիշատակված «Որդսպու»-ին։ Այս յենթադրությունը միանգամայն հավանական է, վորովհետև* Catispi *կայարանի անունը կարող է, իրոք, աղճատված լինել* C *և* O *լատինական տառերի շփոթման պատճառով։ Ուղիղ ընթերցումը պետք է լինի ըստ այսմ* *Ortispi *կամ* *Ortispu:

*Որդսպու տեղանունը հիշվում է, ինչպես հայտնի յե, միմիայն Սեբեոսի մոտ հետևյալ վկայություններում՝*

*1. Սեբեոս, Ս. Պետերբուրգ 1879, գլ. Լ, եջ 108՝*

*«Եւ ել զաւր ապականիչ յԱսորեստան կողմանէ ընդ ճանապարհս Ձորոյ յաշխարհն Տարօնոյ. առին զնա և զԲզնունիս և զԱղիովիտ։ Եւ ճանապարհ կալեալ ի Բերկրոյ ձորն ընդ Որդսպոյ և ընդ Գոգովիտ՝ Թափեցան յԱյրարատ։ Եւ ոչ ոք կարաց ի զաւրացն Հայոց արկանել գոյժ ի Դըւին աւանն»։*

*2. Նույնը, գլ. ԼԲ, եջ 116՝*

*«Եւ եղև ի գալ միւսում ամի եկն զաւրն Իսմայէլի յԱտրպատական, և բաժանեցան յերիս։ Առաջ մի յԱյրարատ, և առաջ մի ի սեփհական գնդին կողմանս, և առաջ մի յԱղուանս։ Արդ՝ որք ի կողմանս սեփհական գնդին, արշաւեալ սփռեցան և հարեալ զամենայն կողմանսն զայնոսիկ սրով սուսերի, առին զաւար և զգերութիւն։ Եւ եկին ժողովեցան ի յԵրևան՝ և մատեան ընդ բերդին, և ոչ կարացին առնուլ։ Եկին ի յՈրդսպու, և ոչ նմա ինչ կարացին առնել։ Գնացին անտի և բանակեցան յԱրծափս՝ հանդէպ բերդին առ Ջրոփն»։*

---

[1] *Տես նրա հրատարակած քարտեզը „Торговые пути Юго-Кавказа в конце IV-го века“ (на правах рукописи):*

Սեբեոսի այս վկայությունները, ինչպես մանրամասն ցույց է տրված իմ «Մանր հետազոտություններ»-ում (Երևան 1932), վերաբերվում են արաբական 640 և 650 թվականների արշավանքներին։

Արաբները 640 թվին, մտնելով Հայաստան Միջագետքի կողմից, նվաճել էին, ինչպես հայտնի է, Ջորրորդ Հայքը, Տարոնը, Բզնունիքը ու Աղիովիտը և այնուհետև անցել էին Բերկրիի ձորով և Որդսպույի մոտով Կոգովիտ և հասել մինչև Դվին։

Որդսպուն գտնվել է, ուրեմն, ըստ առաջին վկայության Բերկրիի ձորից Կոգովիտ տանող ճանապարհին։

Ուշագրավ է սակայն, որ նաև ըստ երկրորդ վկայության արաբները, որոնք 650 թվին մտել էին Հայաստան Ատրպատականի կողմից, եկել էին դարձյալ Որդսպու և այնտեղից գնացել Արծափ։

Արդ՝ որովհետև երկու դեպքում էլ արաբական արշավանքների ճանապարհը ցույց է տրված Որդսպուի մոտով՝ ստացվում է, իհարկե, այն տպավորությունը, որ արաբները 650 թվին էլ եկած պիտի լինեին Կոգովիտ, ինչպես ենթադրում է Թ. Ավդալբեգյանը (տես նրա «Բանասերի օրագրից» հոդվածը՝ «Հանդէս Ամսօրեայ» 1926, թ. 11-12, էջ 587—590), միևնույն Բերկրիի ձորով և վերոհիշյալ միևնույն ճանապարհով։

Ճի՞շտ է արդյոք այս ենթադրությունը, որն անտարակուսելի է համարել Ավդալբեգյանը։

Իմ կարծիքով, ո՛չ միայն նրա այս ենթադրությունը, այլ և նրա եզրակացությունը վերոհիշյալ երկրորդ հատվածում հիշատակված «Երևան»-ի տեղադրության մասին՝ ավելի քան վիճելի են և միանգամայն անհավանական։

5. Արաբական 650 թվի արշավանքի ճանապարհը հավանական է ենթադրել ո՛չ թե Բերկրիի ձորով, որը, ինչպես տեսանք, չէ հիշատակված Սեբեոսի երկրորդ հատվածում, այլ Ատրպատականից Հեր կամ այժմյան Խոյ և այդ-

*տեղից Պատինգերյան քարտեզի կարճ ու ուղիղ գծով և Որգսպու — Catispi-ի մոտով դեպի Արծափ։*

*Թեև Սեբեոսի վկայություններում արաբական զորաշարժերի միջին հանգույցը յերկու դեպքում էլ Որգսպուսն է, սակայն այդ զուգադիպումը բացատրվում է, ինչպես կտեսնենք, նրանով, վոր Որդսպուն գտնվել է թե Բերկրիի ձորից և թե Խոյից Կոգովիտ տանող ճանապարհագծերի միացման շրջանում։*

*Արաբական զորքերը, գալով Ատրպատականից և այժմյան Խոյից «ի կողմանս Սեփհական գնդին», ինչպես վկայում է Սեբեոսը՝*

*«արշաւեալ սփռեցան և հարեալ զամենայն կողմանսն զայնոսիկ սրով սուսերի, առին զաւար և զգերութիւն»։*

*Միանգամայն բնական ու հասկանալի յե․ վոր ցրված զորախմբերը չեյին կարող շարունակել արշավանքը, ունենալով իրենց հետ ավար և գերիներ, այլ նրանք հետ եյին դառնալու նորից և հավաքվելու վորոշ կենդրոնավայրում։*

*«Եւ եկին ժողովեցան — ասում է Սեբեոսը — ի յԵրևան՝ և մարտեան ընդ բերդին, և ոչ կարացին առնուլ»։*

*Թ․ Ավդալբեգյանը կարծում է, վոր «Երևան»-ը այս հատվածում հայտնի հին Առեստն է կամ «Առեստաւան»-ը և վոր իբր թե «ի կողմն Սեփհական գնդին արշավող արաբական զորախումբը յուր հարձակումն սկսել է Առեստավանից» (տես էջ 590)։*

*Նրա այս յենթադրությունը, ինչպես և նրա լեզվաքննական ու հնագրական բացատրությունը, վորի համաձայն «Երևան»-ը պետք է սրբագրել և կարդալ «Առեստաւան» կամ «Երաստաւան»՝ սխալ է, անտարակույս, և անընդունելի։*

*«Երևան»-ը պարզ մի աղճատումն է, անշուշտ, վերոհիշյալ հատվածում, սակայն վոչ թե «Առեստաւան» կամ «Երաստաւան», այլ «Հերաւան» տեղանվան։*

*Արաբական զորքերը, վորոնք Ատրպատականից և այժմյան Խոյի շրջանից արշավել եյին Սեփհական գնդի կողմերը, վերադառնալով նորից Խոյ — «Հերաւան», գնացած պի-*

*տի լինեյին այնուհետև վոչ թե սրի ու ավերածության մատնված Սեփական գնդի միևնույն շրջանները, այլ, հավանորեն, կարճ ու ուղիղ գծով դեպի Որդսպու, վորը գտնվել ե, ինչպես կըտեսնենք, Կոգովիտ գավառի հարավակողմում։*

*6. Հին այս ճանապարհը կարավանների այն բանուկ ու այժմյան հայանի ճանապարհն ե Արաբ-դիզեյի, Կարա-Նյոնեյի և Զեյվայի վրայով, վորը նկարագրված ե գեներալ Գարդանի և Ջեյմս Մորիերի ուղեգրություններում (տես Հ. Հակոբյան, «Ուղեգրություններ», Հատ. Զ, Երևան 1934, եջ 106—108 և 260—268) և վորը՝ իբրև իտալական առևտրի հին ճանապարհ՝ հիշատակված ե 14-րդ դարի ս՛իզբներում նաև Բալդուչչի Պեգոլոտիի մոտ (տես իմ աշխատությունը* „О торговле и городах Армении“, Эривань *1930, եջ 196—198)։*

*Համաձայն Պեգոլոտիի ճանապարհացուցակի հին այս գիծը Ղարաքենտից մինչև Խոյ ունեցել ե հետևյալ կայարանները՝* Scaracanti *(=Ղարաքենտ),* Locche, Piana di Falconieri[1] *(հավանորեն, այժմյան Տայ-Զավար դաշտը),* li Camuzoni, Piana del Fiume rosso *(Կարմիր գետի կամ այժմյան Կիզիլ-չայի հովիտը) և* Condro[2] *(=Խոյ)։*

*Այս ճանապարհագծի վրա Պետինգերյան քարտեզի* Catispi *կայարանի տեղը կարելի յե, ինձ թվում ե, մոտավորապես վորոշել։*

---

[1] Piana di Falconieri *նշանակում ե իտալերեն բազեավորսի դաշտ։ Համաձայն վերոհիշյալ կայարանների հաջորդական դասավորության* Piana di Falconieri *կարող ե համապատասխան լինել ռուսական տասը վերստանոց քարտեզում մատնանշված Тай-завар գետահովիտին։ Ջեյմս Մորիերը վկայում ե, իրոք, վոր այս դաշտի հյուսիսային ծայրամասում «կա մի ճահիճ, վորի ջրերի յերեսին կային անթվելի բադեր և այլ վայրի թռչուններ» (տես «Ուղեգրություններ», Զ, եջ 266)։*

[2] *Ռուսերեն իմ աշխատության մեջ այս* Condro *կայարանը յես նույնացրել եյի հին Կոտորի և այժմյան Ղոթուրի հետ (տես „О торговле и городах Армении“, եջ 198)։ Սակայն ուշադիր ու մանրամասն քննությամբ պարզվում ե այժմ, վոր* Condro-*ն համապատասխանում ե, հավանորեն, այժմյան Խոյին (=*Gobdi*):*

Ի նկատի ունենալով, վոր Որդսպու բերդը գտնվել ե թե Բերկրիի ձորից և թե Խոյից Կոգովիտ տանող ճանապարհների միացման շրջանում՝ Որդսպուի տեղը հավանական ե յենթադրել Scaracanti-Ղարաքենտից դեպի հարավ-արևելք՝ այժմյան Տապարիզ գյուղի մոտ։ Այստեղ հենց, Կոգովիտ գավառի հարավակողմում, գտնվում են այժմ յերկու հին ու անառիկ բերդերի ավերակներ, վորոնց մասին Ալիշանը տալիս ե իր «Այրարատ»-ում (եջ 508) կարևոր տեղեկություններ, վոր նա քաղել ե, ըստ յերևույթին, Texier-ի ուղեգրությունից։

«Առ երի գեղջս [Թէփէրիզի]—հաղորդում ե Ալիշանը—ամբառնայ լեռնակ մի պասալտեան, և անծանօթ ի պատմութենէ կամ անյիշատակ ամրոց վաղեմի՝ ի տափարակի գագաթան նորին, որոյ ստորոտք պարսպացն մնան մեծամեծ պասալտիկ կարկառօք անշաղախ կուտակեալք, և շուրջ պատ առեալ բաց յարևելից կողմանէ (ուր ցցուեալ ժայռք են), և ի հարաւոյ կուսէ խոնարհին ընդ երեսս լերինն, անկիւնաձևս գործելով ի ներքուստ, և ի գլուխ անդ հարաւակողմանն կայ աշտարակ մի. և այլ աշտարակք բոլորշիք ի կարգի պարսպացն, որոց երկայնութիւն է իբր 250 Զ. ի նմին ի հարաւակողման տակաւին չորք կամ հինգք կարգք քարանց անեղծ կան, և թուի յայսմ կողմանէ լինել մտից բերդին. նոյնպէս և յարևմտից կողմանէ առաւելագոյն ևս կան մնացուածք պարսպաց։ Ի քարաժեռի ուրեմն լեռնակին երևի կիսեղծ արձանագիր, որ և հայերէն թուեցաւ անհայտ էտ քննողին՝ Դեսիէի, այլ վէմք արձանին խորտակեալ են և ի վայր անկեալք։ Ի ստորոտէ քարաժեռին ըղխեն աղբերք դառն և աղէհամ ջուրց, թուի՝ օժանդակք անանուն գետոյն՝ զոր Ինճէ սու համարեցաք կոչիլ—Յետ Դարօնից և Արծափայ՝ այս տեղի է արժանաւոր քննութեան ի ծանօթիցն մեզ վայրուց Կոդովտի։ Շուրջ զլեռնակաւն և զգեօղիւն ամբառնան սրակատար բլրակք պասալտեանք, արգասիք հրա-

մուղ ժայթմանց, այլ որձաքար (տրաքիտ) չերևի աստ։

Ի Հր. Թէփէրիզայ մերձ ի լերինս անջրպետս երկոցուն գետոցն մեծամեծաց, ցուցանեն Եզիտիք կողմանցն զաւերակս բերդի՝ հզօրի միոյ նախնոյ իւրեանց, առ Սուլդան Մուրադաւ ի սկիզբն կոյս ԺԷ դարու, Տիւլղագին կոչեցելոյ, որ հինահարութեամբ տառապեցուցանէր զամենայն գաւառն. վասն որոյ հրամանաւ սուլտանին փաշայն Վանայ եկն պաշարել զբերդն ամուր, և դէպք յաջողեցին նմա. քանզի ի բուռն սասանութենէ երկրի, ասեն, ինքնին կործանեցաւ և հիմնայատակ եղև, և այնու դադարեաց հարստահարութիւն բռնաւորին»։

Վոր անանուն այս բերդերից մեկը կարող է լինել հին Որդսպուն՝ այդ հավանական է, վորովհետև հենց այս լուսաբանությամբ հասկանալի յեն դառնում թե Սեբեոսի վերոհիշյալ վկայությունները և թե Պևտինգերյան քարտեզում նշանակված մյուս կայարանների տեղադրությունը ու համապատասխան հեռավորությունները։

Գլխավոր առարկությունը մեր այս յենթադրության դեմ, անշուշտ, այն է լինելու, վոր Catispi կայարանի հեռավորությունն Artaxata-յից Պևտինգերյան քարտեզում ցույց է տրված 39 հռոմեական մղոն կամ մոտ 58 կիլոմետր։ Սակայն այս դժվարությունն անհաղթահարելի չէ, վորովհետև Artaxata-ն, ինչպես վերև տեսանք, միացված չէ նկարագծով Catispi-ի հետ։ Միացման գծի այս բացակայությունը բացատրվում է, ըստ յերևույթին, նրանով, վոր քարտեզում, ինչպես պարզ յերևում է նրա նկարից, հնարավոր չէ յեղել տեղավորել Artaxata-յից Catispi տանող ճանապարհագիծը և նրա վրա գտնվող կայարանների անունները ու համապատասխան մղոնաթվերը։

7. Catispi—Որդսպու կայարանի տեղագրության վորոշմամբ հասկանալի յէ դառնում Պևտինգերյան քարտեզում նշանակված տարածությունը Catispi-ից մինչև Gobdi—Խոյ, ընդամենը՝ 92 հռոմեական մղոն կամ մոտ 136 կիլոմետր։

Նույն տարածությունը Խոյից մինչև Որդսպուրի մոտ գտնվող Կերդեկ (Kerdek) գյուղը Ջեյմս Մորիերը հաշվում է ավելի քան 80 անգլիական մղոն կամ մոտ 130 կիլոմետր (տես «Ուղեգրություններ», հատ. Ջ, էջ 261—269)։

Ուրեմն, ինչպես տեսնում ենք, Պևտինգերյան քարտեզի այս հեռավորությունը ևս, ինչպես և նրա մատնանշած տարածությունները վերոհիշյալ մյուս ճանապարհագծերում, միանգամայն հավանական է և իրական։

Catispi-ից հետո Պևտինգերյան քարտեզում նշանակված են Sorvae և Anteba կայարանները՝ Catispi 27 Sorvae [24] Anteba։ Հեռավորությունը՝ Catispi-ից մինչև Anteba ցույց է տրված, ինչպես տեսնում ենք, 51 հռոմեական մղոն կամ մոտ 76 կիլոմետր։ Ըստ այս հեռավորության Anteba-ի տեղադրությունը վորոշվում է պարզ կերպով հին Արտազ գավառում։

Anteba կայարանի անունը, իմ կարծիքով, խիստ աղճատված է, ինչպես և մյուս կայարանների մեծագույն մասի վերոհիշյալ անունները։ Ուղիղ ընթերցումը պետք է լինի ըստ իս *Artaza։

Լատինական b և z տառերը, ինչպես հայտնի յէ, այնքան նման են իրար Պևտինգերյան քարտեզում (տես Itineraria Romana, էջ LII), վոր նրանք սխալ են հաճախ կարդացված ու տպված հին քարտեզների զանազան հրատարակություններում։ Օրինակ, Խանգադյանի «Atlas historique» հրատարակության մեջ (Paris 1920) Hariza և Dyzanas կայարանների վերոհիշյալ անունները արտագրված են 17-րդ դարի քարտեզում Hariba և Dybanas (տես carte № 9, planche V)։ Սովորական են նմանապես լատինական n և r տառերի շփոթումները։ Ուրեմն, ինչպես տեսնում ենք, Anteba կայարանի անունը հնարավոր է և հավանական է սրբագրել ու կարդալ *Artaza։

Իսկ այս նույնացումից ինքնին հետևում է, վոր Anteba


Artaxata
Արտաշատ
Ծամբ
Ortispi
Որդսպու
Ղազմի լիճ
Երինդ
Արաք-դիզն
Մակու
(Sorvae)
Artaxa
Արտազ
Զուրակա
Ջէյնա
Nasabi
Նուարսակ
Gobdi
Խոյ
ARTAXATA-GOBDI.
Դեպի Paresaca և Ecbatanis

—*Artaza-ն[1] էս, ինչպես և *Banantea-ն (=Վանանտ) և Arachia-ն (=Հարք), յեղել է մի մեծ շրջանի հին կենտրոնավայրը, վորի անունով գավառն անվանվել է Արտազ։ Բացի այդ, պարզվում է միաժամանակ, վոր *Artaza-ն, վորի հեռավորությունը Տապարիզի մոտ գտնվող Catispi—Որդսպուից ցույց է տրված մոտ 76 կիլոմետր, գտնվել է, հավանորեն, այժմյան Կարա-Եյնեյից Ջուրավա տանող ճանապարհագծի մասում։

Anteba անվան մեր առաջարկած այս լուսաբանությամբ, ինչպես և Artaxata—Gobdi ճանապարհի ուղղության ճըշտմամբ, պարզվում են, ինչպես կըտեսնենք, Հայաստանի պատմական աշխարհագրության մի քանի պրոբլեմները, վորոնք մնացել են մինչև այժմ մութ և անորոշ։ Աշխարհագրական այդ կարևոր խնդիրները, վոր ներքև մանրամասն քննելու յենք, վերաբերվում են «Աւարայրի դաշտ»-ի, «Բագուձոր»-ի, «Մարդուցայք»-ի և «Եղբարք սարակ»-ի տեղադրության։

8. Վարդանանց պատերազմի տեղը, ինչպես հայանի յե, մինչև այժմ վորոշված չե հաստատուն կերպով։ Փարպեցու և Յեղիշեյի վկայություններից մենք գիտենք միայն, վոր պատերազմը յեղել է Արտազ գավառում և ընդարձակ մի դաշտում, ուր առաջին անգամ և հենց այս պատերազմի առթիվ հիշատակված են նրանց մոտ «Աւարայր»-ը և «Տղմուտ»-ը։

Մեջ ենք բերում Փարպեցու և Յեղիշեյի կարևոր այդ հատվածները։

1. Ղազար Փարպեցի, II, Լէ, եջ 69 (Տփղիս 1904)՝

«Զոր լուեալ երանելւոյ սպարապետին Հայոց [Վարդանայ] և որ ընդ նմայն էին՝ ևս առաւել ճեպէին եր-

---

[1] Ա. Խաչատրյանը Կուլտուրայի Պատմության Ինստիտուտում կարդացած իր զեկուցման մեջ (Թեզիս 15-րդ) Anteba կայարանը համապատասխան է համարել Անթափին։ Այս յենթադրությունը սխալ է և անընդունելի, վորովհետև Anteba կայարանը գտնվել է Artaxata-Gobdi ճանապարհագծում և չե կարելի, իհարկե, նույն կայարանը քմահաճաբար փոխադրել մի ուրիշ գիծ։

թալ ընդդէմ նոցա. նախ՝ վասն վաղվաղակի պատահելոյ նոցա ժամու մարտիրոսութեան. քանզի անձանձրոյթ աղօթէին հանապազ ի տուէ և ի գիշերի, լինել արժանի այնպիսի մասին երկնաւորի. և երկրորդ՝ ասէին, թերևս անդէն ի տեղւոջն ի Հեր և ի Զարևանդ գաւառին վճարին ելք գործոյն պատերազմին, և ոչ ոք լինէր արգել զօրուն Պարսից հասանել յաշխարհն Հայոց սպանութեամբ և գերելով յարձակել և վնասել։ Եւ սոցա թէպէտ և ածեալ զայսպիսի ինչ զմտաւ կամէին փութալ՝ սակայն ևս առաւել ստիպով եկեալ հասանէին գունդն Պարսից ի գաւառն Արտազ, հուպ ի գեօղն որ կոչի Աւարայր, ի շրջափակ տեղի Տղմուտ դաշտին, զոր ընտրեաց յաղագս երկիւղի զօրացն Հայոց. ամուր ապաստանի անձանց համարէին պատշաճ, և ի միջի նորա ածեալ դակիշ բանակէին»։

2. Եղիշէ, Վենետիկ 1852, Զ, էջ 204—205՝

«Կարգէր և կազմէր [Վարդան] զճակատն յորդորելով ընդ ամենայն երեսս դաշտին դէմ յանդիման Արեաց գնդին, առ ափն Տղմուտ գետոյն»։

3. Նույնը, էջ 334 (Ը)՝

«Նովաւ և դաշտն Աւարայրի պայծառացեալ ծաղկալից լինի, ոչ յանձրևաբեր ամպոց, այլ ի սուրբ և յարիւնաբուխ վկայից ցանեալ և ցրուեալք սպիտակութիւնք սուրբ ոսկերացն»։

Վարդանանց պատերազմի տեղը, ինչպես տեսնում ենք այս վկայություններից, ցույց է տրված մի շրջափակ դետադաշտում, որն Ավարայր գյուղի և Տղմուտ գետի անուններով կոչվել է «Տղմուտ դաշտ» կամ «Աւարայրի դաշտ»։

Այս դաշտի տեղը կարելի յէ, իմ կարծիքով, վորոշել ավելի հիմնավոր կերպով, քան այդ արված է աշխարհագրական նախորդ ուսումնասիրություններում։

Մեր նոր բացատրության յելակետ է ծառայում պատերազմող զորքերի յերթուղին, վորը վորոշվում է այժմ Artaxata-Gobdi ճանապարհադծի լուսաբանությամբ։

*Ավելի քան հավանական է, անշուշտ, վոր պարսկական զորքը յեկած պիտի լիներ Հեր և Զարևանդից Արտազ Պետինգերյան քարտեզի այն հին ռազմուղիով, վորը սովորական ու բնական ճանապարհն էր զորքերի տեղաշարժումների համար։ Վոր միևնույն կարճ ու ուղիղ գծով գնացած պիտի լիներ Արտաշատից նաև հայկական զորաբանակը՝ այդ հավանական է հենց Փարպեցու վկայությունից, վորը պարզ հաղորդում է, վոր հայոց զորքը Վարդան Մամիկոնյանի առաջնորդությամբ շտապում էր արագ յերթով հասնել Հեր և Զարևանդ, վորպեսզի պատերազմը տեղի ունենա սահմանագլխում և Հայաստանի սահմանամերձ շրջանը չմատնվի ավերածության։*

*Իսկ այս դիտողություններից ինքնին հետևում է, վոր Վարդանանց պատերազմի տեղը պետք է լիներ Արտազ գավառի այն արևմտյան մասում, վորի միջով վորոշվում է Պետինգերյան քարտեզի վերոհիշյալ ճանապարհը։*

*Այստեղ հենց գտնվում է, իրապես, այն շրջափակ ու ընդարձակ գետադաշտը, այժմյան Տայ-զավարը (տես ռուսական հին շտաբի տասը վերստանոց քարտեզում՝* Тай-завар), *վորը նկարագրված է Ջեյմս Մորիերի ուղեգրության մեջ և վորը Պեգոլոտտիի մոտ անվանված է* Piana di Falconieri։

*Վոր այս գետադաշտը գտնվում էր հին Արտազ գավառում՝ այդ պարզ յերևում է նրանից, վոր այդ դաշտի մոտ է այժմ Թադեոս առաքյալի վանքը։ Ուշագրավ է առանձնապես, վոր նույն այս գետադաշտի հարավակողմում և այժմյան Շիվարեշ լեռների ստորոտներում (համմտե հին «Շաւարշան» և «Շաւարշական» տեղանունները) գտնվում է այժմ Թեղնուտ գյուղը (տես ռուսական տասը վերստանոց քարտեզի վրա՝* Тегныт), *վորի անունով այժմյան Կարա-Բուլաղ գետը կարող էր անվանված լինել «Տղնուտ» ( = թերևս «Տղմուտ»)։*

*Ավարայրի դաշտի այս տեղադրությունը Պետինգերյան քարտեզի* Artaxata-Gobdi *ճանապարհագծի վրա միանգամայն*

հավանական է և վերոհիշյալ բացատրությունն ուշադրության արժանի, վորովհետև նախորդ ուսումնասիրություններում անտես է արված այն կարևոր հանգամանքը, վոր Ավարայրի դաշտի տեղը չի կարելի յենթադրել բնական այս ռազմաճանապարհից հեռու գտնվող զարտուղի և դժվարանց վայրերում։

Միանգամայն անընդունելի յե այս տեսակետից Բասմաջյանի յենթադրությունը, վորն իր «Իսկական պատմութիւն Հայոց» աշխատության մեջ հատուկ քարտեզում (Կ. Պոլիս 1919, եջ 247) Ավարայրի դաշտի տեղը մատնացույց է արել այժմյան Քիլիսեքենդի հարավ-արևելակողմում։ Նրա մատնանշած այդ վայրը, վորն ընկնում է այժմյան Մարանդ գյուղի հյուսիսակողմում, պարզապես լեռնային մի շրջան է, վորը գտնվում է բնական ռազմաճանապարհից հեռու։

Սխալ է, անտարակույս, և Կոստանյանցի կարծիքը, վոր իբր թե Ավարայրը գտնվել է Հեր գավառի արևելյան-հյուսային սահմանի վրա՝ այժմյան Մարիքենդի արևմտակողմում գտնվող Զորսի դաշտում (տես «Հիւսուածք», գիրք յերրորդ, Վիեննա 1887, եջ 116—121)։ Այս յենթադրությունը ևս չի կարող ճիշտ լինել, վորովհետև այժմյան Մարիքենդը, վորը հին «Մառական աւան»-ն է, գտնվել է, ինչպես պարզ վկայում է Թովմա Արծրունին, վոչ թե Արտազ, այլ Ծուաշ գավառում (տես Թովմա Արծրունի, Ս.-Պետերբուրգ 1887, III, Ի, եջ 225 և III, ԻԹ, եջ 264, հմմտե նաև Адонц, Армения в эпоху Юстиниана, եջ 317 և Markwart, Südarmenien und die Tigrisquellen, եջ 208)։

9. Artaxata-Gobdi ճանապարհագծի մեր նոր լուսաբանությունը յելակետ է ծառայում, բացի Ավարայրի դաշտից, նաև «Բագուձոր»-ի, «Մարդուցայք»-ի և «Եղբարք սարակ»-ի տեղադրությունների հավանական վորոշման։

Հայաստանի պատմական աշխարհագրության այս վայրերը հիշատակված են Ղևոնդի պատմության մի հատվածում, վորն անհրաժեշտ է մեջ բերել առանց կրճատումների։

Տե՛ս «Պատմութիւն Ղևոնդեայ մեծի վարդապետի Հայոց», Ս.-Պետերբուրգ 1887, գլ. Բ, էջ 7—8՝

«Եւ մեծ մասն զօրուն [Իսմայելացւոց] հատեալ ասպատակէին յաշխարհս Հայոց ընդ կողմն Պարսից. և առնուին ի գերութիւն զաւանս Մարաց և զգաւառն Գողթն և զդաստակերան Նախջաւանու. և զբազումս յարանց ընդ սուր անցուցանէին, և զայլս գերի վարեալ կանամբք և մանկտեաւ՝ անցուցանէին ընդ գետն Երասխ ընդ հունն Ջուղայոյ։ Եւ ընդ երկուս բաժանեալ զօրքն՝ ոմանք զգերեալսն դարձուցանէին յաշխարհն իւրեանց։ Եւ գունդ մի հատեալ ասպատակէին ընդ գաւառն Արտազ ի վերայ զօրավարին Յունաց, որում անուն էր Պռոկոպ, որ էր բանակեալ ի գաւառին Կոգովտի ի սահմանս Բագուձորոյ և Մարգուցայից. որում իրազեկ եղեալ իշխանն Թէոդորոս, որ էր յազգէն Ռշտունեաց՝ ազդէր զօրավարին Պռոկոպայ, «եթէ զօր հինին Իսմայելի զարթուցեալ գայ ի վերայ մեր»։

Իսկ նա ի բազմութիւն զօրացն ապաստանեալ և ոչ յԱստուած, որ յաղթող է պատերազմ՝ ոչ ինչ գրէր զբանս իշխանին Հայոց։ Եւ նա մորմոքեալ ընդ կորուստ աշխարհիս Հայոց և ընդ ծուլութիւն զօրավարին՝ ոչ ունէր ժոյժ, այլ մտեալ երկրորդէր և երրորդէր զբանն։ Եւ բարկացեալ զօրավարին ի վերայ իշխանին՝ ձգէր զվարգն որ ի ձեռին զհետ նորա։ Եւ սրտմտեալ Թէոդորոս՝ ելանէր յերեսաց նորա, և նոյնժամայն հրամայէր զօրացն, որ ընդ իւրով իշխանութեամբն էին, «վառեցարուք, ասէ, և ելէք ընդդէմ Իսմայելի»։ Եւ նոքա հեծեալ յերիվարս իւրեանց՝ դարանամուտ եղեն ի սարակն, որում Եղրարսն կոչէին. և կալեալ զառաջս կրճիցն՝ զբազումս ի նոցանէ սատակէին. և առեալ զկապուտ անկելոցն՝ հարուածեալ ի զօրավարէն գնացին ի գաւառն Գառնի»։

Այս վկայությունը, ինչպես պարզել ենք մեր «Մանր Հետազոտություններ» ուսումնասիրության մեջ (Երևան

1932, էջ 40—47), վերաբերվում է արաբական 642/643 թ. յերկրորդ արշավանքին Ատրպատականի կողմից։

Արաբները, ինչպես վկայում է Ղևոնդը, ասպատակել և ավերածության եյին մատնել նախ «զաւանս Մարաց և զգաւառն Գողթն և զգաստակերտն Նախջաւանու» և ապա արաբական զորքի մի մասը, շարունակելով արշավանքն Արտազ գավառի միջով՝ հարձակվել էր Պռոկոպ զորավարի և բյուզանդական զորքերի վրա, վորոնց հանձնարարված էր Բյուզանդական Հայաստանի պաշտպանությունը «ի գաւառին Կոգովտի ի սահմանս Բագուձորոյ և Մարգուցայից»։

Ղևոնդի վկայությունից դժվար չէ կռահել, վոր Բագուձորը և Մարգուցայքը Կոգովտի մոտ գտնվող սահմանամերձ այն շրջաններն են, վորոնց միջով կարող եյին մտնել Կոգովիտ թշնամի զորքերը։ Նրանց տեղադրությունը հավանական է, ուրեմն, յենթադրել վոչ թե Կոգովիտ գավառի մեջ, ինչպես կարծում է Ալիշանը (տես «Այրարատ», էջ 491 և 508), այլ Ատրպատականից Կոգովիտ տանող այն յերկու հին ճանապարհների մոտ, վորոնցով արաբական զորքերը կարող եյին ներս խուժել Կոգովիտ և անցնել մյուս գավառները։

Այս ճանապարհներից մեկը գալիս էր, ինչպես վերև տեսանք, Խոյից Արտազի միջով, իսկ մյուսը՝ Խոյից Սեպհական գնդի կողմերով և այժմյան Աբաղայի դաշտի վրայով։

Յեվ հենց այս յերկու ճանապարհագծերի վրա վորոշվում են, իրապես, հավանական տեղադրությունները թե Մարգուցայքի և թե Բագուձորի։

Մարգուցայքը, ինչպես մատնացույց է արել Ադոնցը (տես Армения в эпоху Юстиниана, էջ 417 և 319), հին Մարդաստանն է կամ Սեպհական գնդի յերկիրը, վորը՝ գտնվելով Արտազի արևմտակողմում՝ 642/643 թ. սահմանամերձ գավառն էր Բյուզանդական Հայաստանի արևելակողմում։ Նրա միջով էր անցնում, իրոք, Խոյից Կոգովիտ տանող ռազմական վերոհիշյալ ճանապարհներից մեկը, վորն այժմյան Աբաղայի միջով բարձրանում էր Կոգովիտ։ Հասկանալի յե,

ուրեմն, որ «ի սահմանս Մարդուցայից» Ղևոնդի վկայությունը կարող է վերաբերվել Մարդաստանին։

Իսկ Բագուձորը գտնվել է, իմ կարծիքով, Արտազից Կոգովիտ տանող արևելյան կողմի մյուս ճանապարհի վրա և, հավանորեն, Piana di Falconieri, այսինքն՝ «բազեավորսի դաշտ»-ի մոտ, որը հիշում է, ինչպես տեսանք, Պեգոլոտտին։

Ուշագրավ է ու հետաքրքիր, որ «Անանուն ժամանակագրութեան» մէջ (Վենետիկ 1904, էջ 37) Թադեոս առաքյալի սպանության տեղը ցույց է տրված Արտազ գավառի Բագրոտ գյուղում։ Որ այս գյուղը ևս գտնվելու յեր դարձյալ վերոհիշյալ դաշտի շրջակայքում՝ այդ ավելի քան հավանական է նույնպես, որովհետև այդ դաշտի մոտ էր, ինչպես տեսանք, Թադեոս առաքյալի վանքը։

Մարկվարտը մատնացույց է արել արդեն, որ Բագրոտը հիշեցնում է Ղևոնդի վկայության Բագուձորը և որ իբր թե այդ տեղերը գտնվել են ակներևաբար Կոգովիտ գավառի արևելյան սահմանում (տես Die Genealogie der Bagratiden, Caucasica, Fasc. 6, 2 Teil, Leipzig 1930, էջ 25—26)։

Նոր այս ուսումնասիրությամբ պարզվում է այժմ, որ բացի Բագրոտից և Բագուձորից Արտազ գավառում է գտնվել նաև Piana di Falconieri կոչված «բազեավորսի դաշտ»-ը։ Սրանց տեղադրությունը որոշվում է սակայն ոչ թե Կոգովիտի արևելյան սահմանում, ինչպես ենթադրել է Մարկվարտը, այլ Պևտինգերյան քարտեզի Catispi-Gobdi ճանապարհագծի վրա և վերոհիշյալ Տայ-գավար դաշտում կամ նրա մոտ գտնվող շրջաններում։

«Բագրոտ» տեղանունը նշանակում է պարսկերեն «բազենների գետ», իսկ «Բագուձոր»-ը, հավանորեն, «բազեների ձոր»։ Վերջին այս բարդության քերականական ստույգ ձևը պետք է լիներ, անշուշտ, «բազէաձոր» կամ «բազէձոր» (հմմտե «բազէակալ» և «բազէկիր»)։ Սակայն այս անկանո-

նությունը լեզվական հատուկ մի խնդիր ե, վորը պետք ե պարզեն մասնագետ լեզվաբանները։

10. Վերև մեջ բերված Ղևոնդի միևնույն վկայության մեջ հիշատակված ե նաև «Եղբարք սարակ»-ը, վորի անունը նույնացրել ե Թ. Ավդալբեգյանը «Եղջերք» լեռների անվան հետ (տես «Բանասէրի օրագրից», Հանդ. Ամս. 1926, թ. 7—8, եջ 384—387)։

Թ. Ավդալբեգյանի կարծիքով, վերոհիշյալ «Եղբարք»-ը համապատասխանում ե «Եղջերք»-ին, վորը հիշատակված ե Փավստոսի հետևյալ վկայության մեջ.

Փավստոս V, գլ. ԽԳ, եջ 259 (Վենետիկ 1889)՝

«Եւ գային հասանէին լրտեսքն, և գիտէին զՄանուէլ, զի էր բանակ նոցա ի Բագրաւանդ գաւառի ի Բագուան աւանի, որ էր մօտ յաւերակսն Զարեհաւանդ քաղաքի։ ... Եւ չու արարեալ կատարել զգործն՝ յոր փութացեալ կամէր հասանել [Մերուժան], և էին ի վայրսն՝ ընդ որ գալ էր գնդին ընդ ճանապարհն՝ լերինք ինչ, որում ի բնակչացն Եղջերք կոչեն։ Եւ մինչդեռ գայր Մերուժանն ի ճանապարհի գնդաւն իւրով, դիպեցան նմա ուղևորք. յորս հարցանէր Մերուժանն և ասէր, եթէ ճանապարհս ի Բագրաւանդ ընդ ո՞ր երթայ։ Եւ ուղևորացն տուեալ պատասխանի, ասացին. Ճանապարհ ընդ եղջերս է։ Եւ մեծապէս խորեաց Մերուժանն ընդ միտս իւր. տրտմեցաւ ընդ բանսն, սակայն տայր հրաման չարաչար քարշել զուղևորսն և ծեծել»։

Այս վկայության մեջ Ավդալբեգյանը՝ համարելով «Եղջերք»-ը աղճատված՝ ուղղել ե «Եղբարք», կարծելով վոր սրանք միևնույն լեռն են, վորը գտնվել ե «Կոզովտով Բագրևանդ տանող ճանապարհի վրա»։

«Արծրունի իշխանի կարծիքով—ասում ե Ավդալբեգյանը—անցորդներն ուզել եյին ասել, թե նրա ճանապարհը, նրա ուղիղ ճանապարհը վո՛չ թե պարսիկների հետ լինելն ե, այլ յուրայինների, հայրենակիցների, հայ յեղբայրների հետ լինելն ե» (եջ 387)։

Ավդալբեգյանի մեկնությունը չի կարող, ինչպես կըտեսնենք, ճիշտ լինել, վորովհետև նա աչքաթող ե արել, վոր «Եղջերք»-ը և «Եղբարք»-ը գտնվել են տարբեր տեղերում։

«Եղբարք սարակ»-ը, վորի մոտ դարանամուտ եր յեղել Թեոդորոս Ռշտունին իր հեծելազորքով, չեր կարող, իհարկե, գտնվել «Կոգովտով Բագրևանդ տանող ճանապարհի վրա», վորովհետև արաբական զորագունդը, ինչպես պարզ յերևում ե Ղևոնդի վկայությունից, մտնելու յեր Կոգովիտ Արտազ գավառի կողմից։

Ղևոնդի և Սեբեոսի վկայություններից (գլ. ԼԵ, եջ 138, Ս. Պետերբուրգ 1879) հայտնի յե նույնպես, վոր Պռոկոպ զորավարը՝ Թեոդորոս Ռշտունու հեռանալուց հետո՝ հրամայել եր իր զորքերին «ելանել ի վերայ թշնամեացն» և վոր նրա զորքերի կոտորածը տեղի յեր ունեցել Մարդուցայքում։ Յեվ կոտորածից հետո միայն արաբական զորքերը յեկել եյին Կոգովիտ հանգստանալու նրանց բանակում։

Միանգամայն սխալ ե, ուրեմն, Ավդալբեգյանի յեզրակացությունը, վոր իբր թե «չորրորդ և յոթերորդ դարերում կատարված անցքերի աշխարհագրական միջավայրը նույնն ե»։ «Եղջերք» լեռները, վորոնք գտնվել են Կոգովտից Բագրևանդ տանող ճանապարհի վրա, չեն կարող, անշուշտ նույնը լինել «Եղբարք սարակ»-ի հետ, վորովհետև այս վերջինի տեղը վորոշվում ե վոչ թե Կոգովիտ-Բագրևանդ, այլ կամ Արտազ-Կոգովիտ և կամ Մարդուցայք-Կոգովիտ ճանապարհների վրա։

11. Anteba-Արտազ կայարանից մինչև այժմյան Խոյը Պևտինգերյան քարտեզում նշանակված են յերկու կայարան՝ Anteba 24 Nasabi 17 Gobdi (Ռավեննացու մոտ՝ Gobdie)։

Յեվրոպական գիտնականները բոլորն ել համամիտ են, վոր այս կայարաններից վերջինը համապատասխանում ե այժմյան Խոյին։ Կոնրադ Միլլերի կարծիքով՝ Gobdi կամ Gobdie անվան ուղիղ ընթերցումը կարող ե յեղած լինել *Gobai (տե՛ս Itineraria Romana, եջ 781), իսկ Մարկվարտի

յենթադրությամբ՝ *Chobde (տես Südarmenien und die Tigrisquellen, եջ 420)։

Նոր պարսկերեն Chôj-ը ծագել է ըստ Մարկվարտի հնագույն *Chôð-ից, իսկ հայերեն Հերը կամ Խերը՝ միջին պարսկերեն (մեդական) *Hēð-ից կամ *Chēð-ից (տես նույնը, եջ 209)։ Հայերեն այս տեղանունը Կոստանդին Ծիրանածինի մոտ անվանված է հունարեն վոչ թե Her կամ Cher, այլ Chert (De administr. imp. c. 44, 191, 15 և 192, 4)։

Վոր Gobdi կայարանը համապատասխանում է, իրոք, այժմյան Խոյին՝ այդ յերևում է, ինչպես վերև տեսանք, նաև Պևտինգերյան քարտեզի միջկայարանային հեռավորություններից։

Ուշագրավ է, բացի այդ, վոր Gobdi կայարանի և այժմյան Խոյի նույնացմամբ վորոշվում է Nasabi կայարանը, վորի հեռավորությունը Gobdi-Խոյից Պևտինգերյան քարտեզում ցույց է տրված 17 հռոմեական մղոն կամ մոտ 25 կիլոմետր։

Թե անունով և թե տեղադրությամբ Nasabi կայարանը համապատասխանում է ըստ իս Հեր գավառում և Պարսկական Հայաստանի սահմանում գտնվող Նուարսակ գյուղին, ուր 484 թվին ընդունել եր Նիխորը Վահան Մամիկոնյանի առաջարկած հաշտության պայմանագիրը։

Վոր այս Նուարսակ գյուղը գտնվել է, իրոք, Հերից Հայաստան տանող ճանապարհի վրա՝ այդ պարզ ու վորոշ հաստատում են Ղազար Փարպեցու հետևյալ վկայությունները.

1. Ղազար Փարպեցի, Տփղիս 1904, III, գլ. ՁԹ, եջ 160՝

«Եւ եկեալ Նիխոր յաշխարհն Հայոց՝ ոչ իշխեաց միջամխել ի Հայոց տեղիսն, այլ դադարեալ ի գաւառին որ կոչէր Հեր, ի գեօղն որում անուն էր Նուարսակ, առաքեաց նա պատգամաւորս առ Մամիկոնեանն Վահան...»։

2. Նույնը, III, ՂԱ, եջ 164՝

«Եւ եկեալ Մամիկոնեանն Վահան ի գաւառն որ կո-

չի Արտազ՝ ի գեօղն որ անուանեն Եղինդ՝ դադարէր անդ ինքն և ամենայն գունդքն որ էին ընդ նմա. և առաքէր առ Նիխոր և գիր եկն տայր գիտել նմա»։

Այս վկայություններից, ինչպես տեսնում ենք, դժվար չէ հետևցնել, որ Նուարսակ գյուղը գտնվել է Հեր գավառի և Պարսկական Հայաստանի սահմանում և այն հին ճանապարհի վրա, որը Խոյից գնում էր Պարսկական Հայաստան Արտազի միջով։ Նույն հենց ճանապարհի մոտ գտնվել է նաև յերկրորդ վկայության մեջ հիշատակված Եղինդ գյուղը՝ ըստ Ադոնցի այժմյան Երինդը (տես „Армения в эпоху Юстиниана, էջ 316)՝ ուր յեկել էր Վահան Մամիկոնյանը և, զգուշանալով Նիխորից ու ուղարկելով Նրա մոտ հատուկ պատգամավորություն՝ պահանջել էր Նրանից պատանդներ։

Թե ինչու Նուարսակ գյուղի անունը Պևտինգերյան քարտեզում գրված է Nasabi՝ այդ դժվար չէ բացատրել։

Հին այս քարտեզի արտագրողները, ինչպես հայտնի յե, նմանահնչյուն անունները շփոթել են հաճախ իրանց ծանոթ տեղանունների հետ։ Հավանական է, ուրեմն, որ Նուարսակը կարող էր շփոթված լինել հին Մծբինի հետ, որը Պևտինգերյան քարտեզում անվանված է Nisibi: Ուշագրավ է, որ արտագրողների հենց այս սխալի պատճառով Խանզադյանի հրատարակած 17-րդ դարի քարտեզում Artaxata-Nasabi ճանապարհի ուղղությունը ցույց է տրված վոչ թե դեպի Եկբատանա, այլ դեպի Մծբին (տես «Atlas historique», Paris 1920, carte № 9, planche V)։

Վոր այս Nasabi-ն, որը գտնվել է Խոյից մոտ 25 կիլոմետր դեպի հյուսիս-արևմուտք, նույնացվելու յե Նուարսակի հետ, այդ, ինչպես տեսնում ենք, ավելի քան հավանական է, վորովհետև Նուարսակի տեղը ևս վորոշվում է պարզապես միևնույն ճանապարհի վրա և Հեր գավառի ու հարևան հին Արտազի սահմաններում։

12. Gobdi—Խոյից հետո Պևտինգերյան քարտեզում նըշանակված են հետևյալ կայարանները՝ Gobdi (Ռավեննացու

մոտ՝ Gobdie) 24 Filadelfia 20 Tris peda (Ռավեննացու մոտ՝ Tarspedo) 45 Paresaca։

Աշխարհագրական ուսումնասիրություններից հայտնի յե, վոր Խոյից այս ճանապարհը կարող եր լինել յերկու ուղղությամբ՝ կամ այժմյան Մարանդի և Թավրիզի մոտով և կամ Տասվիջի վրայով ու Ուրմիա լճի արևելյան ափերի յերկարությամբ։

Կոնրադ Միլլերը Պևտինգերյան քարտեզի այս Gobdi-Paresaca ճանապարհագիծը վորոշել ե, ինչպես վերև տեսանք, այժմյան Մարանդի մոտով դեպի Թավրիզ։ Սակայն ավելի հավանական ե, իմ կարծիքով, յերկրորդ ուղղությունը, վորը, ինչպես վկայում են ճանապարհորդները, ավելի կարճ ե և հարմար (տես «Ուղեգրություններ», հատոր Զ, Յերևան 1934, եջ 227)։ Ուշագրավ ե, բացի այդ, վոր հենց այս յերկրորդ ճանապարհի վրա կարելի յե յենթադրել Tris peda կամ Tarspedo կայարանի հավանական տեղադրությունը։

Tris peda կամ Tarspedo կայարանի անունն ակներևաբար աղճատված ե (tris=լատ. «յերեք» և pes, pedis=լատ. «վոտք»)։ Բայց կարևոր ե և հետաքրքրական, վոր այս կայարանի տեղը Պևտինգերյան քարտեզում ցույց տրված տարածությունների համաձայն (Gobdi-ից մինչև Tris peda՝ 44 հռոմեական մղոն կամ մոտ 65 կիլոմետր) վորոշվում ե գրեթե ճշտիվ այժմյան Դիզա Տասվիջի մոտ։ Այժմյան տարածության նկատմամբ կարևոր ե Ջեյմս Մորիերի վկայությունը (տես «Ուղեգրություններ», Զ, եջ 259—260), վորը Տասվիջի հեռավորությունը Խոյից հաշվում ե մոտավորապես 36 անգլիական մղոն կամ մոտ 58 կիլոմետր։ Պարզ ե, ուրեմն, վոր տարածությունը մինչև Դիզա Տասվիջ, վորը գտնվում ե Տասվիջից մի քանի կիլոմետր դեպի հարավ-արևելք, կլինի, իրոք, ավելի քան վաթսուն կիլոմետր։

Արդ՝ ի նկատի ունենալով տարածությունների վերաբերյալ վերոհիշյալ դիտողությունները՝ դժվար չե կռահել, վոր Tris peda կամ Tarspedo կայարանի անունը կարող ե աղավաղումն լինել այժմյան Տասվիջ (տես Կիպերտի Nouvelle

carte générale-ի և ռուսական տասը վերստանոց քարտեզների վրա՝ Tasouidj և Тасвич), Տասուջ (տես Լինչի քարտեզի վրա՝ Tasuj) կամ Տերսուջ (տես գեներալ Գարդանի ուղեգրության մեջ՝ Tersoucht)[1] գյուղի հնագույն անվան։

Յեթե հնարավոր լինի պարզել, վոր Տասվիջ գյուղի հին անունը յեղել է *Տարսունջ՝ այդ դեպքում Tarspedo-յի—pedo վերջավորությունը կարող է թարգմանություն լինել հայերեն «ունջ» վերջածանցի, վորն ըստ Հյուբշմանի նշանակել է «հատակ, արմատ, ստորոտ, վոտք»[2] (տես «Հին Հայոց տեղւոյ անունները», թարգմ. Պիլեզիկճյանի, էջ 284)։ Այս վերջին յենթադրությունը մենք անում ենք, իհարկե, մեծ վերապահությամբ, թողնելով խնդրի վերջնական լուծումը, ինչպես և Tarspedo և Տասվիջ տեղանունների բացատրությունը, ավելի հմուտ լեզվաբան մասնագետներին։

Tris peda կամ Tarspedo կայարանի անվան ու տեղադրության մեր նոր լուսաբանությամբ վորոշվում է նաև Filadelfia կայարանի տեղը։ Պետինգերյան քարտեզի մղոնաթվերի համաձայն Filadelfia տեղը պետք է լիներ, հավանորեն, Ուրմիա լճի հյուսիսային ափերի մոտ, ինչպես այդ ճիշտ յենթադրել է Կարլ Մյուլլերը (տես նրա «Tabulae in Claudii Ptolemaei geographiam» քարտեզը, վորն արտատպված է Մարկվարտի «Das Itinerar von Artaxata nach Armastica» աշխատության մեջ)։

*13.* Tris peda—Tarspedo-յին հաջորդող Paresaca կայարանից հետո, վորը գտնվել է Tarspedo—Տասվիջից 45 հռոմեական մղոն կամ մոտ 67 կիլոմետր հեռավորության վրա՝ միջկայարանային հեռավորությունները նշանակված են Պետինգերյան քարտեզում պարսկական պարասանգներով։

Ուշագրավ այս փաստից, վորով բացատրվում է Հայաստանի պատմական աշխարհագրության կարևորագույն խըն-

---

[1] «Ուղեգրություններ», հատոր Զ, էջ 109։

[2] Հմմտ. «յունջ բերդին», Փաւստ. III, Գլ. ԺԸ, էջ 132 (Վենետիկ 1889)։

դիրներից մեկը, մինչև այժմ դեռ չեն արվել համապատասխան ու անհրաժեշտ հետևությունները։

Մղոնաչափերի փոփոխությունը մի պարզ ակնարկ ե ըստ իս, վոր ճանապարհագիծը մինչև Paresaca գտնվել ե Արշակունյաց Հայաստանում, իսկ Paresaca-յից հետո՝ Սասանյան Պարսկաստանում։ Կարելի յե նույնիսկ յենթադրել, վոր հիշյալ կայարանն անվանվել ե Paresaca (=հավանորեն, Պարսք), վորովհետև նա գտնվել ե Պարսկաստանի կամ «Պարսք»-ի սահմանում։

Իսկ այս լուսաբանությունից ինքնին արդեն հետևում ե, վոր ըստ Պևտինգերյան քարտեզի, վորը կազմված եր չորրորդ դարի յերրորդ քառորդում, Արշակունյաց Հայաստանի սահմանը վորոշվելու յե Tarspedo—Տասվիջից 45 հռոմեական մղոն կամ մոտ 67 կիլոմետր դեպի հարավ-արևելք՝ այժմյան Աջի-չայ գետի մոտ։

Նոր այս յեզրակացության դեմ գլխավոր առարկությունը կարող ե, անշուշտ, այն լինել, վոր աշխարհագրական բոլոր նորագույն ուսումնասիրություններում Արշակունյաց Հայաստանի ու Պարսկաստանի սահմանը յենթադրվում ե Ատրպատականի Գանձակ քաղաքի մոտ[1]։ Այս յենթադրությանը հիմք են ծառայել, ինչպես հայտնի յե, Փավստոսի վկայությունները։

Ճիշտ են արդյոք մեկնված Փավստոսի այդ վկայությունները։

Ինձ թվում ե, վոր Փավստոսի հաղորդած տեղեկությունները վոչ միայն չեն հակասում վերոհիշյալ մեր յեզրակացությանը, այլ նրանք ուշադիր ու նոր քննությամբ ստանում են տարբեր իմաստ և հաստատում Պևտինգերյան քարտեզի ցուցումը։

Այս խնդիրն այնքան հետաքրքիր ե ու կարևոր Հայաստանի պատմական աշխարհագրության համար, վոր մենք

---

[1] Տես Marquart, Eränschahr, Berlin 1901, եջ 109. Հյուբշման, «Հին Հայոց տեղւոյ անունները», թրգմ. Պիլեզիկճյանի, եջ 90—91. Адонц, Армения в эпоху Юстиниана, եջ 226 և ուրիշ.։



Gobdi
Խոյ
ԱՏՐՊԱՏԱԿԱՆ ԱՐԾԱԿ Բ.Ի
Մարանդ
(Filadelfia)
Տավրիզ
Tarspedo
Դիզա-Տավրիզ
Ուրմիա
Լիճ
Paresaca
(Պարսք)
ԳԱՆՁԱԿ ԱՏՐՊԱՏԱԿԱՆԻ
Աջի չայ
Թավրիզ
GOBDI-PARESACA
ՈՒՂԵԳԻԾԸ
Դեպի Ecbatanis
Ըստ Կ Միլլերի

անհրաժեշտ ենք համարում մեջ բերել Փավստոսի բոլոր համապատասխան վկայությունները։

1. Փաւստոս, Վենետիկ 1889, III, գլ. Է, էջ 16՝

«Եւ ելին լցին ծածկեցին զամենայն երկիրն Հայոց. քանդեցին, գերեցին, առհասարակ աւերեցին. սփռեցան տարածեցան զսահմանօքն, լի և լի ծաւալեցան մինչև ի փոքր քաղաքիկն Սատաղու, և մինչև ի Գանձակ սահմանս Ատրպատական...»։

2. Նոյնը, IV, գլ. ԻԱ, էջ 141՝

«Իսկ սահմանապահքն Թագաւորին Հայոց [Արշակայ], որ նստէին ի Գանձակ Ատրպատականի, վաղ ազդ առնէին նմա զիրսն մինչ չև հասեալ էր նա ի սահմանս Ատրպատականի»։

3. Նոյնը, V, գլ. Ա, էջ 191՝

«Իբրև գայր առաջապահն հասանէր ի միջնաշխարհն Հայոց՝ սպանանէր Մուշեղ զզօրագլուխն Պարսից զՀաբէնն և Զիկն, և զամենայն զզօրսն արկանէր ի սուր սուսերի իւրոյ, և ոչ մի զոք ապրեցուցանէր։ Եւ մինչև ի բուն ի սահմանսն ի Գանձակ Ատրպատականի զերկիրն յիւր վտարեալ, բռնացեալ ունէր»։

4. Նոյնը, V, գլ. Դ, էջ 202՝

«Ապա զհետ լինէին փախստէիցն զօրքն Հայոց, և մինչև ի Գանձակ յԱտրպայական ի սահմանս Հայոց հալածէին զզօրսն Պարսից. ընդ փախուցեալսն զբազումս սատակէին զճանապարհայն»։

5. Նոյնը, V, գլ. Ե, էջ 205՝

«Ապա սպարապետն Յունաց կազմեաց զօրս իւր՝ որ ընդ իւրով ձեռամբ էին, և խաղացոյց տանել գնալ ի սահմանս Հայոց ի Գանձակէ կուսէ յԱտրպայական տանէ»։

6. Նոյնը, V, գլ. ԼԴ, էջ 241՝

«Խորհէր նա [Մուշեղ] ընդ իշխանին Յունաց, և նոքօք ընդ կայսերն, թէ պարտ է նոցա քաղաք մի շինել յերկրին Հայոց. ի մի մի գաւառսն, որ մին մի քաղաքս, որ երկուս-երկուս ամուր պարսպաւորս զօրա-

նիստս հաստատել ընդ ամենայն երկիրն Հայոց, մինչև ի Գանձակ սահման երկիրն, որ Պարսից կուսէ էր, Հայոց սահման էր»։

Այս վկայությունները հասկանալու համար պետք է ի նկատի ունենալով, վոր բացի «Գանձակ Ատրպատականից» Փավստոսը հիշում է նաև մյուս Ատրպատականը, վորը պատկանել է Արշակ Բ-ին։ Հյուսիսային այս Ատրպատականը, վորի միջով անցել է Պետինգերյան քարտեզի Gobdi-Paresaca ճանապարհագիծը, հիշատակված է նրա հետևյալ վկայության մեջ.

Փաւստոս, V, գլ. Ը, էջ 213՝

«Ապա իբրև դադարեաց պատերազմն ի կողմանցն Պարսից, և յապահովեցան իրք ճակատուն յայնմ կողմանէ, և այնուհետև սկսանէր սպարապետն Հայոց Մուշեղ հարկանէր զայնոսիկ՝ որք ապստամբ եղեն ի Թագաւորութենէն Արշակունեաց։ Նախ հարկանէր զտուն Թագաւորին Հայոց, որ յԱտրպայականին էր. զամենայն երկիրն զաւառացն Ատրպատճացն աւերէր, և առնոյր գերէր բազում գերութիւն ի նոցանէ. և զմնացորդսն նուաճէր և ի հարկի կացուցանէր, և առնոյր զբազումս պանդանգս ի նոցանէ»։

Ուրեմն, ինչպես տեսնում ենք, Փավստոսի մոտ հիշատակված են պարզ կերպով յերկու Ատրպատական՝ մեկն իբրև Հայաստանի մաս, իսկ մյուսը՝ Սասանյան Պարսկաստանի։ Միանգամայն պարզ է, բացի այդ, վոր հարավային Ատրպատականը, վորին անհրաժեշտ էր տարբերել հյուսիսային Ատրպատականից, Փավստոսի վկայություններում անվանված է «Գանձակ Ատրպատական»։ Այս վերջինը «Գանձակ Ատրպատական» է կոչվել, անշուշտ, Գանձակ քաղաքի անունով, վորը յեղել է այս յերկրի կենդրոնավայրը։

Վոր Փավստոսի պատմության մեջ «Գանձակ»-ը կամ «Գանձակ Ատրպատական»-ը վոչ թե քաղաքի, այլ հարավային Ատրպատականի անունն է՝ այդ պարզ ու վորոշ մատնանշված է վերոհիշյալ գրեթե բոլոր վկայություններում։

ցել հատկապես վեցերորդ վկայության մեջ պարզ շեշտված է, որ «Գանձակ սահման երկիրն» «Պարսից կուսէ էր»։

Արդ կարելի՞ չէ միթե վերոհիշյալ վկայություններից որևէ կերպ հետևցնել, որ Ատրպատականի Գանձակ քաղաքը գտնվել է Արշակունյաց Հայաստանում, ինչպես յենթադրել են Մարկվարտը, Հյուբշմանը և Ադոնցը։

Ընդհանրացած ու սովորական այս պնդումը, որը հիմնված է վերոհիշյալ յերկրորդ վկայության վրա, իմ կարծիքով, ակներև մի թյուրիմացություն է։

Ցերկրորդ այդ վկայության մեջ, ինչպես և Փավստոսի մյուս հատվածներում, «Գանձակ»-ը, անշուշտ, վո՛չ թե քաղաքի անունն է, այլ այն «Գանձակ սահման երկիրն» է, վորի մոտ են գտնվել «սահմանապահքն թագաւորին Հայոց»։ «Նստէին ի Գանձակ Ատրպատականի» նշանակում է ըստ իս «նստէին ի [սահմանս] Գանձակ Ատրպատականի»։ Իսկ սովորական ու ընդունված մեկնությունը, որ իբր թե «Հայոց թագավորների սահմանապահները կընստեյին» Գանձակ քաղաքում՝ վո՛չ միայն անհավանական է, այլ հայտնապես սխալ։

Վոր մեր մեկնությունն է ճիշտ՝ այդ անուղղակի կերպով հաստատում են հենց միևնույն հեղինակի յերկու հետևյալ վկայությունները, որ վերաբերվում են հին Թավրիզ քաղաքին։

1. Փաւստոս, Վենետիկ 1889, IV, գլ. ԻՆ, եջ 149՝

«Ապա զօրաժողով լինէր Արշակ արքայ Հայոց, և կուտէր առ ինքն զօրս բազումս իբրև զաւազ բազմութեամբ, և խաղայր, ի վերայ աշխարհին Պարսից։ Ապա առնոյր Վասակ զգունդն Հայոց, և գՀոնսն հանդերձ Ալանօքն կոչել յօգնականութիւն, և հասանէր դիմէր յօգնականութիւն թագաւորութեանն Հայոց ի վերայ Պարսից։ Այլ թագաւորն Պարսից հանդերձ ամենայն իւրովք զօրօքն ի ժամանակի անդ յայնմիկ՝ քանզի և նա խաղացեալ գայր ի վերայ Հայաստան երկրին ընդդէմ սոցա, ապա սոքա փութացեալք հասանէին յԱտրպատա-

կան, և գտանէին զբանակն արքային Պարսից ի Թաւ-րէշ բանակեալ»։

2. Նույնը, IV, գլ. ԼԹ, էջ 157՝

«Յետ այսորիկ Բոյեկան մեծ նախարար Պարսից, և քառասուն բեւր ընդ նմա, գային հասանէին յԱտրպա-տական. կամէին ապատակ առնել յերկիրն Հայոց։ Ա-պա ղառաջեօք անգանէր Վասակ իւրով Հայաստան-գնդաւն, հարկանէր զզօրսն ամենայն Պարսից, և զԲոյե-կանն սպանանէր ի Թաւրէժն։ Եւ այրէր անդ զապաս-տանս Թագաւորին Պարսից. և գտեալ անդ զպատկեր Թագաւորին Պարսից, նստածիգ եղեալ՝ նետալից առնէր։ Բայց միայն փախչէր Մերուժանն ընդ նոսա եկեալ»։

Այս յերկու վկայությունների մեջ Փավստոսը, ինչպես տեսնում ենք, պարզ վկայում է, որ Թավրիզը գտնվել է Սասանյան Պարսկաստանի սահմաններում։

Ուրեմն՝ ինքն ըստ ինքյան հետևում է հենց այս վկա-յություններից, որ Ատրպատականի Գանձակ քաղաքը, վո-րը գտնվում էր Թավրիզի հարավում և նրանից մի քանի հարյուր կիլոմետր հեռավորության վրա՝ չէր կարող լինել Արշակունյաց Հայաստանում։

Պևտինգերյան քարտեզի Gobdi—Paresaca ճանապարհա-գծի լուսաբանությամբ վոչ միայն պարզվում է աշխարհա-գրական կարևոր այս խնդիրը, այլ և վորոշվում է ճշտիվ Արշակունյաց Հայաստանի սահմանն Ատրպատականում։

Ընդունելով այդ սահմանագիծը Տավրիզից մոտ 67 կի-լոմետր դեպի հարավ-արևելք և այժմյան Աջի-չայ գետի մոտ՝ Թավրիզի տեղը լինելու յեր, իրոք, Սասանյան Պարս-կաստանում, ինչպես այդ վկայում է նաև Փավստոսը։

Ցեվ ինձ թվում է, վոր յերկու հիմնական աղբյուրների այս համերաշխությունն ինքնին արդեն հաստատուն մի նե-ցուկ է մեր յեզրակացությունների հավանականության և միաժամանակ ուշագրավ մի ապացույց է, վոր Փավստոսի վկայությունները սխալ են յեղել մեկնված աշխարհագրա-կան նախորդ աշխատություններում։

14. Մեր այս նոր ուսումնասիրությամբ ճշդվում են, ինչպես տեսնում ենք, թե Artaxata—Gobdi—Paresaca ճանապարհագծի ուղղությունը և թե այդ ճանապարհի վրա գտնվող կայարանների մեծագույն մասը՝

Artaxata=Արտաշատ։

Catispi=*Ortispi կամ *Ortispu=Որտսպու։

Sorvae կամ Sorue—մ ն ու մ է ա ն ո ր ո շ։

Anteba=*Artaza=Արտազ։

Nasabi=Նուարսակ։

Gobdi (Ռավեննացու մոտ՝ Gobdie)=Խոյ։

Filadelfia—մ ն ու մ է ա ն ո ր ո շ։

Tris peda (Ռավեննացու մոտ՝ Tarspedo)=Տասվիջ (Տասուջ, Տերսուջ)։

Paresaca=Պարսք (?)։

———

## 5. ԴՎԻՆ—ՊԱՐՏԱՎ ՀԻՆ ՃԱՆԱՊԱՐՀԸ.

*1. Դվինից Պարտավ տանող հին ճանապարհի մասին, թեև ռուսերեն իմ աշխատության մեջ* ("О торговле и городах Армении", Эривань 1930, *եջ 168 և 172*) *հակիրճ կերպով բերված եյին ընդհանուր մի քանի դիտողություններ, սակայն այդ աշխատության մեջ ինձ չեր հաջողվել հաստատուն կերպով վորոշել այդ ճանապարհի ուղղությունը և հանգամանորեն ճշտել կայարանների անունները և տեղերը։*

*Սույն ուսումնասիրության մեջ մանրամասն քննված են այժմ ու վորոշված այդ ճանապարհի բոլոր կայարանները։ Յեվ ինձ թվում ե, վոր վիճելի խնդիրները լուսաբանված են այժմ ավելի հիմնավոր կերպով, քան այդ արված ե աշխարհագրական նախորդ աշխատություններում։*

*Թե Դվինը և թե Պարտավը, ինչպես հայտնի յե, առևտրական խոշոր կենտրոններ են յեղել, գլխավորապես, արաբական տիրապետության շրջանում. ուստի և հասկանալի յե, թե ինչու այդ ճանապարհը հիշատակված ե միայն Բագրատունյաց շրջանի մատենագրական յերկերում։*

*Նրա մասին հաղորդված տեղեկություններից առանձնապես կարևոր ե, անտարակույս, Իստախրիի ընդարձակ վկայությունը նրա աշխարհագրական հայտնի յերկում, վորը գրված ե տասներորդ դարում (տես* Livre des routes et des royaumes, ed. de Goeje, Bibl. Geogr. Arab. I, *եջ 193)։ Բացի այդ, խիստ հետաքրքրական ե, ինչպես կտեսնենք, նույն ճանապարհի համառոտ հիշատակությունը հայկական «Մղոնաչափք»-ում, վորը հրատարակված ու քննված ե վեր-*

*չերս Խորենացու մասին իմ նոր ուսումնասիրության մեջ (տես «Խորենացու առեղծվածի լուծումը», Երևան 1934, էջ 84—89)։*

*2. Իստախրիի վերոհիշյալ հատվածում*[1] *և հայկական «Մղոնաչափք»-ում մատնանշված են Դվին-Պարտավ ճանապարհագծի հետևյալ կայարանները.*

*1.* Н. А. Караулов, Сведения арабских писателей о Кавказе, Армении и Адербейджане, *տես* Сборник материалов для описания местностей и племен Кавказа, XXIX, *1901, էջ 33—34՝*

„Барда'а 9 (фарс.) Калькатус 13 Метрис 12 Давмис 16 Киль-Куй 16 Сисаджан 16 Дабиль“.

*Ծանոթություններ Կարաուլովի.— Բոլոնիայի օրինակում՝* Киль-Куй-*ը գրված է առանց կետերի, Բեռլինի օրինակում՝* Киль-Курэ, *Իբն Հաուքալի մոտ՝* К-н-клуин, *Պարսկական տարբերակում՝* Киликун, *Մուքադդասին՝* Килвай, *Յաքուտը՝* Киль-Куй:

*2. Նույնը ըստ Մարկվարտի (հատվածը, ըստ յերևույթին, վերականգնված ու ուղղված է), տես* Das Itinerar von Artaxata nach Armastica, Wien *1928, էջ 56՝*

«Barda$^c$a 9 (Fars.) Θalanqātūs 13 Mairīs 12 Daumīs 16 Gēlakūnī 16 Sīsaǰan 16 Dubīl».

*Ծանոթություն Մարկվարտի.— Յաքուտը գրում է* Mitrīs *փխ.* Mairīs։

*3. «Մղոնաչափք», տես «Խորենացու առեղծվածի լուծումը», էջ 86՝*

*«Ի Դունա ի Բերդկունս Կ. անտի ի Պարտաւ ԾԿ».*

*Ծանոթություն.— «Աղուէսագրքում» (Մարսիլեայ 1683)՝ «ի Բերթկունսն».*

---

[1] *Իստախրիի բնագրի* de Goeje-*ի հրատարակությունը, դժբախտաբար, մենք չենք կարողացել ճարել Հայաստանի գրադարաններում։ Նրա համապատասխան հատվածը մենք հարկադրված ենք մեջ բերել Կարաուլովի և Մարկվարտի աշխատություններից։*

Սեն-Մարտենի մոտ (Mémoires II, էջ 396)՝ «De Tovin à Therthgoïs il y a 60, de là à Bardav 140»։

Կայարանների անունների մոտ դրված թվերը ցույց են տալիս տարածությունները մի կայարանից մյուս կայարան արաբական փարսախներով կամ մղոններով (փարսախը=5752,8 մետր և մղոնը=1917,6 մետր, տես իմ աշխատությունը «Երատոսթենեսի ստագիոնը և Պարսից ասպարեսը», Երևան 1934, էջ 9—12)։

3. Վերոհիշյալ վկայություններում առաջին կայարանը Դվինից հետո մատնացույց է արված Իստախրիի մոտ Сисаджан-ը կամ Sīsajān-ը, իսկ «Մղոնաչափք»-ում՝ Բերդկունքը։

Ուրեմն՝ ճանապարհի ուղղությունը վորոշելու համար անհրաժեշտ է ճշտել նախ այս կայարանների տեղերը։

Բերդք կամ Բերդկունք անունով գյուղեր, ինչպես հայտնի յե, հիշատակված կան Հին Հայաստանում զանազան շըրջաններում և գավառներում՝ Սյունիքում, Տայքում, Բագրեվանդում և Մազազում (տես Հյուբշման, «Հին Հայոց տեղւոյ անունները», թրգմ. Պիլեզիկճյանի, էջ 323—324)։ Սակայն «Մղոնաչափք»-ի Բերդկունքին, վորը գտնվել է Դվինից 60 արաբական մղոն կամ մոտ 115 կիլոմետր հեռավորության վրա՝ կարող է համապատասխան լինել, անշուշտ, միմիայն Մազազ գավառում գտնվող Բերդկունքը, վորը հիշատակված է Հովհաննես կաթողիկոսի պատմության հետևյալ հատվածում.

> «Եւ զկնի նորա [Իսրայէլի] Սահակ կայ յաթոռ հայրապետութեանն, որ հայրենեօք էր ի Ձորափորոյ յարքունաշէն գեղջէ և մայրենեօք ի Մազազ գաւառէ ի գեղջէ Բերդկաց»[1] (Տփղիս 1912, էջ 93)։

«Մղոնաչափք»-ում հիշված Բերդկունքի տեղը վորոշելու համար պետք է, ուրեմն, քննել ու ճշտել նախապես Մա-

---

[1] Ալիշանը վկայում է, որ «այլ գրիչք պէսպէս գրեն, եւս և Բերդկաց, Բրդկանց, Բրթըկնոց» (տես «Այրարատ», էջ 352)։

զազ գավառի տեղադրությունը, վորը, ինչպես կըտեսնենք, սխալ է վորոշված գիտական նորագույն յերկերում։

4. Մի ամբողջ գավառի տեղադրության ճշտումն ինքնին արդեն կարևորագույն մի խնդիր է, անշուշտ, Հայաստանի պատմական աշխարհագրության. ուստի և ավելի քան անհրաժեշտ է մանրամասն քննության առնել նորից մատենագրական այն բոլոր տեղեկությունները, վոր վերաբերվում են այս գավառին։

Մազազ գավառը, ինչպես հայտնի յե, հիշատակված է Բագրատունյաց և ավելի ուշ շրջանի մատենագրական միայն մի քանի վկայություններում։ Բայց նրա տեղադրության վորոշմանը հիմք են ծառայել վոչ թե այդ տեղեկությունները, այլ Խորենացու հայտնի վկայությունը Գառնի-Գեղամի մասին։

Համապատասխան այդ վկայությունները, վոր կարոտ են վերաքննության, մեջ ենք բերում առանց կրճատումների.

1. Խորենացի I, ԺԲ, եջ 40—41 (Տփղիս 1913)՝

«Իսկ Գեղամ յետ ամաց անցանելոյ ծնաւ զՀարմայ յԱրմաւիր. և թողեալ զՀարմայ յԱրմաւիր հանդերձ որդւովք բնակել, և ինքն գնաց զմիւս լերամբն արևելեան հիւսիսոյ, յեզր ծովակի միոյ։ Շինէ զեզր ծովակին, և թողու անդ բնակիչս. և յիւր անուն և սա զլեառնն անուանէ Գեղ, և զշէնսն՝ Գեղարքունի, որով կոչի և ծովն»։

2. Նույնը I, ԺԲ, եջ 41՝

«Բայց ինքն Գեղամ դառնայ անդրէն ի դաշտ անդր, և առ ոտամբ նորին լերինն ի ձորակի միում ամրոց շինէ ձեռակերտ մի, և կոչէ զանուն նորա Գեղամի, որ յետոյ ի Գառնկայ թոռանէ նորա անուանեցաւ Գառնի»։

3. «Աշխարացոյց Մովսէսի Խորենացւոյ», Վենետիկ 1843, եջ 610՝

«Այրարատ ի մէջ կայ յառաջասացեալ աշխարհացդ. և գաւառք են ի նմա քսան..... Կոտայք, Մազազ,

Վ ա ր ա ժ ն ո ւ ն ի ք, ոստանն Դունայ՝ մինչև ցգաշտն Շարուր»։
4. Հովհաննես կաթողիկոս, Թիֆլիս 1912, էջ 113՝
«Յետ սորա [Յովսեփայ] Դաւիթ ի գ ա ւ ա ռ է Մ ա-ղ ա ղ ա յ ի գ ե ղ ջ է Կ ա կ ա ղ ո յ յաջորդէ զաթոռն սուրբ»։
Հմմտե նաև Կիրակոս Գանձակեցի (Թիֆլիս 1910), էջ 72՝ «ի գեղջէ Կակաղայ» և Ասողիկ II, Բ, էջ 106՝ «ի գեղջէ Կակաղայ»։
5. Նույնը, էջ 354՝
«Իսկ Բշրն այն, վոր յետ ընդ կրունկն թողաւ՝ ժո-ղով սպայակոյտ զօրու բազմի գումարտակ արարեալ, ե-լանէ զկողմամբք գ ե ղ ա մ ա շ է ն գ ա ւ ա ռ ի ն Մ ա ղ ա-գ ա յ՝ քինախնդիր լինելով Շահանն կոչեցելոյ շահ վասն ոչ հնազանդելոյ նմա նոցա։ Եւ վասն զի նա յանմար-տնչելի ամրոցին ի Սևան կղզւոջ ամրայանայր, և Բշրն, զոր խնդրէր՝ այնմ ոչ եհաս, այնուհետև խորհէր ձեռն զգաւառօքն արկանել և զսակաւամամնեայ մնացորդս մարդկանն գերել և աւար հարկանել և ճարակ սրոյ տալ»։
6. Ստեփանոս Օրբելյան, Թեֆլիս 1910, գլ. Լէ, էջ 174՝
«Եւ գնեալ [մեծ թագուհին Մարիամ] ի հագարացի մարդկանէ զգեօղն Շողուագայ ընդ 60,000 դրամի ազատ յամենայն աշխարհական հարկաց՝ ընծայէ ի սեպհական ժառանգութիւն սուրբ եկեղեցւոյն. նմանապէս և գեօղ մի ի Մ ա ղ ա զ գ ա ւ ա ռ ի ընդ 3000 դահեկանի գնէ և տայ ի սուրբ եկեղեցին. ո ր ո յ ա ն ո ւ ն գ ե ղ ջ ն Գ ն է ր»։
7. Նույնը, գլ. Ծ, էջ 264 – 265՝
«և կազմեցին [իշխանքն Սիսական] կառս ի սպիտակ ջորւոց. և կողոբս արծաթիս արարեալ՝ եդին ի նմա գնշխարս սրբոյն և բարձին սաղմոսիւք և օրհնութեամբ. և տաճիկ նժուգօք՝ սրավար երիվարօք իբր օգապարիկ թեօք թռուցեալ անցին ընդ լայնածիր ասպարէզ եր-կայն ռահին, և հասին ի բ ն ի կ ս ա հ մ ա ն ս ի ւ ր ե ա ն ց

տէրութեանն ի Մազազ գաւառ. և անցեալ ընդ Գեղամ մուրն ի Վայոց ձոր. զի գէմ եդեալ էր տանել ի Սիւնիս յարքունական գահոյս իւրեանց»։

5. Մեջ բերված վկայություններից կարևոր է համարվել և ուշադրության է առնվել հատկապես Հովհաննես կաթողիկոսի վերոհիշյալ հինգերորդ վկայությունը, որի մեջ Մազազ գավառն անվանված է «գեղամաշէն»։

Ցելակետ ընդունելով, գլխավորապես, այս ցուցումը և հիմնվելով նաև Խորենացու վկայությունների վրա (տես վերև վկ. առաջին և յերկրորդ)՝ Մազազ գավառի տեղը որոշել են աշխարհագրական յերկերում կամ Սևանա լճի մոտ և կամ Գառնիի շրջանում, որ Խորենացու մոտ մատնացույց են արված իբրև «գեղամաշէն»։

Ալիշանի կարծիքով (տես «Այրարատ», եջ 13 և 331—333), որն այժմ տիրող է հանդիսանում և որը ընդունելի յեն համարել նաև Ադոնցը, Մարկվարտը և Հյուբշմանը[1], հին Մազազ գավառը գտնվել է այժմյան Գառնիի և Գեղարդի շրջանում։ Այստեղ կարելի յե յենթադրել, Ալիշանի ասելով, վերոհիշյալ «Բերդկաց» կամ «Բերդկանց» գյուղը, որի անունը նա համապատասխան է համարում Գեղարդի վանքի մոտ գտնվող Պորտիկ գյուղի անվան (տես «Այրարատ», եջ 352)։

Ուշագրավ է սակայն, որ նույն գավառի տեղն Ալիշանից առաջ Շահխաթունյանցը յենթադրել է ո՛չ թե Գառնիի ձորում, այլ Սևանա լճի արևմտյան ափերի մոտ։

«Այս [Գեղարքունի] գաւառ—ասում է Շահխաթունյանցը—ըստ յառաջբերեալ բանիցն Հին Հայաստանի պարունակէ յինքեան զչորեսին կողմանսն շուրջ զծովակաւն, բայց զտանելն դարձեալ յաքիմ մասնաւոր գաւառք՝ Մազազ՝ որ որպէս նկատի ի գրուածոցն Զ. Յովհաննու կաթուղիկոսի, անկանի յարևմտեան եզր ծովա-

[1] Տես Армения в эпоху Юстиниана, եջ 302, Հյուբշման, «Հին Հայոց տեղւոյ անունները», Վիեննա 1907, եջ 252 և 329 և Markwart, Das Itinerar von Artaxata nach Armastica, Wien 1928, եջ 11։

կէն ի միջոցս Սևանայ, Վարաժնունեաց և Կոտայից. քանզի յարձակումն Բշրայ ոստիկանի ի վերայ կղզւոյն Սևանայ անցանելոց է ընդ Կոտայս գաւառ և ընդ արևելյան սահմանս Վարաժնունեաց և այնպէս հասանել ի Սևան» (տե՛ս «Ստորագրութիւն կաթողիկէ Էջմիածնի և հինգ գաւառացն Արարատայ», Էջմիածին 1842, Բ, էջ 235-236)։

Նույն այս կարծիքը հայտնել է նաև Մեսրովբ արքեպիսկոպոս Սմբատյանցը, թեև նրա մոտ ավելի քան վիճելի յեն Մազազ գավառի սահմանների ճշգրիտ վորոշումը, ինչպես և նրա մեջ գտնվող այժմյան գյուղերի ճշտումները, վոր մանրամասն մատնանշված են հատուկ ցուցակում (տե՛ս «Տեղագիր Գեղարքունի ծաղկազարդ գաւառի», Վաղարշապատ 1895, էջ 283—289)։

6. Մազազ գավառի տեղադրության մասին միանգամայն ճիշտ է, ինչպես պարզ յերևում է վերոհիշյալ հենց վկայությունների ցուցումներից, վո՛չ թե գերիշխող առաջին կարծիքը, այլ Շահխաթունյանցի յենթադրությունը, վորն անտես է արվել աշխարհագրական նորագույն յերկերում։

Ուշագրավ է նախ, վոր Մազազ գավառը հիշատակված է «Աշխարհացույց»-ի համառոտ խմբագրության մեջ Կոտայքից հետո և Վարաժնունիքից առաջ։ Ուրեմն՝ վորոշ հիմք են ունեցել Շահխաթունյանցը և Սմբատյանցը յենթադրելու, վոր նա սահմանակից է յեղել Կոտայքին ու Վարաժնունիքին։

Մազազի և այս վերջին գավառների սահմանակցությունը, ինչպես և նույն գավառի տեղադրությունը Սևանա լճի արևմտյան ափերի մոտ, հաստատվում է, բացի այդ, ինչպես մատնանշել է Շահխաթունյանցը, նաև Հովհաննես կաթողիկոսի վերոհիշյալ հինգերորդ վկայությամբ։ Հովհաննես կաթողիկոսը, նկարագրելով արաբական Բիշր զորավարի արշավանքն Աշոտ Յերկաթի դեմ, վորը գտնվում եր Սևան կղզում «անմարտնչելի ամրոց»-ում՝ հարակից շրջանն ան-

*վանում է, ինչպես տեսանք, «կողմունք գեղամաշէն գաւառին Մազազայ»։*

*Ավելի ևս պարզ է ու վորոշ Ստեփանոս Որբելյանի վերոհիշյալ յոթերորդ վկայությունը։*

*«Իշխանքն Սիսական», վկայում է Որբելյանը, գնացել էյին կառքով «ընդ լայնածիր ասպարէզ երկայն ռահին», հասել էյին նախ «ի բնիկ սահմանս իւրեանց տէրութեանն ի Մազազ գաւառի», այդտեղից անցել էյին «ընդ Գեղամ» և մտել «ի Վայոց ձոր»։ Այս վերջին գավառում նրանց ճանապարհը մատնացույց է արված «Սուլեմայ» ձորով, այսինքն՝ այժմյան Սելիմի լեռնանցքով՝ և «Խարաշկոնք» գյուղի վըրայով, վորի տեղը պետք է յենթադրել ըստ իս այժմյան Հորս գյուղի մոտ։*

*Միանգամայն պարզ է ու անվիճելի, վոր այս ճանապարհի ուղղությունը մինչև Մազազ պետք է լիներ այժմյան Յերևան—Յելենովկա հարմար գծով դեպի Բերդկունք կայարանը, վորը գտնվում էր, ինչպես տեսանք, Մազազ գավառում։ Բերդկունքից նրանք անցել են «Գեղամ», վորը սահմանակից էր Մազազին հարավից, և այնուհետև «Գեղամ»-ում գտնվող Կոթ գյուղի մոտից մտել են Վայոց ձոր, բարձրանալով այժմյան Սելիմի լեռնանցքով, վորն Որբելյանի մոտ անվանված է «Սուլեմայ ձոր» (տես Ծ, էջ 265)։*

*Որբելյանի մատնանշած ճանապարհի ուղղությունը չէր կարող, անշուշտ, լինել Գառնիի ձորով ու Ալիշանի յենթադրած Մազազով, վորովհետև այդ կողմով հնարավոր չէր գնալ կառքով վոչ Գեղամ և վոչ էլ Վայոց ձոր։*

*Ուրեմն, ինչպես տեսնում ենք, Որբելյանի վերոհիշյալ վկայությամբ պարզ ու վորոշ հաստատվում է, վոր Մազազ գավառի տեղը լինելու յեր, իրապես, վոչ թե այժմյան Գառնիի շրջանում, այլ Սևանա լճի արևմտյան ափերի մոտ։*

*7. Այս յեզրակացությունը պարզ կերպով հաստատվում է այժմ և «Մղոնաչափք»-ի վերոհիշյալ վկայությամբ։*

*Դվին—Պարտավ ճանապարհի վրա «Մղոնաչափք»-ում մատնանշված է, ինչպես վերև տեսանք, Բերդկունք կայա-*

րանը, որի հեռավորությունը Դվինից ցույց է արված 60 արաբական մղոն կամ մոտ 115 կիլոմետր (1917, 6×60= մոտ 115 կիլ.)։ Այդ կայարանը համապատասխանում է, անտարակույս, Հովհաննես կաթողիկոսի հիշած «Բերդկաց» կամ «Բերդկանց» գյուղին, որը գտնվել է Մազազ գավառում։

Արդ՝ ուշադրության առնելով Բերդկունքի վերոհիշյալ հեռավորությունը Դվինից՝ դժվար չէ դարձյալ համոզվել, որ թե այս կայարանի և թե Մազազ գավառի տեղը լինելու չէր վոչ թե Գառնիի ձորում, այլ Սևանա լճի արևմըտյան ափերի մոտ։ Ուստի և հենց այս շրջանում պետք է գտնվեր այն բերդավայրը, որը կարող է համապատասխան լինել հին Բերդկունք գյուղին։

Ինչպես հայտնի չէ, այժմյան տարածությունը Դվին—Արդաշարից մինչև Ցելենովկա մոտավորապես 90 կիլոմետր է։ Պարզվում է ըստ այսմ, որ Բերդկունք գյուղի տեղը, որը գտնվել է Դվինից մոտ 115 կիլոմետր հեռավորության վրա՝ պետք է յենթադրել այժմյան Ցելենովկայից մոտ 25 կիլոմետր դեպի հարավ։ Յեվ հետաքրքիր է, որ ճշտիվ այս տարածության վրա գտնվում են Սևանա լճի արևմտյան ափերի մոտ միջնադարյան մեծ բերդի ավերակներ այժմյան Աղկալա գյուղում։

Այս բերդի, ինչպես և նրա շրջակայքի մասին, անհրաժեշտ տեղեկությունները հաղորդել է մեզ Կուլտուրայի Պատմության Ինստիտուտի գիտական աշխատակից Ս. Բարխուդարյանը, որը հրատարակելու չէ շուտով իր ուսումնասիրությունն այս շրջանում գտնվող Նախախալդական և խալդական բերդերի մասին։

Աղկալայի բերդը, նրա ասելով, միակ միջնադարյան բերդն է Աղմաղանի լեռնաշղթայի արևելյան այս կողմերում։

Հիմնվելով «Մղոնաչափք»-ի վկայության վրա՝ կարելի չէ, ուրեմն, վստահորեն յենթադրել, որ այժմյան Աղկալայի մոտ գտնվող ավերակների վայրը չեղել է նշանավոր կենդրոնատեղի Դվին — Պարտավ ճանապարհի վրա և որ, հավա-

*նորեն, այստեղ պետք է լիներ հին Բերդկունք գյուղը, վորի հեռավորությունը Դվինից ցույց է տրված 60 արաբական մղոն կամ մոտ 115 կիլոմետր։*

*8. Ի նկատի ունենալով, վոր մեր այս յեզրակացությունը Հայաստանի պատմական աշխարհագրության համար ունի խոշոր նշանակություն՝ ավելորդ չեմ համարում Աղկալայի մոտ գտնվող ավերակների մասին, վորոնց մոտ գտնվել է Բերդկունք կայարանը, մեջ բերել տեղագրական մանրամասն նկարագրությունները Շահխաթունյանցի, Սմբատյանցի և Ալիշանի յերկերից։*

*1. Շահխաթունյանց, «Ստորագրութիւն», էջ 242՝*

*«Եւ առ նմա [Հայր Ոհանավանքի] փոքր ինչ հեռագոյն ի հիւսիսակողմն է տեղի մեծի աւերակի մինչև կարծել իսկ քաղաքի. զի աւելի ընդարձակ էր տեղին՝ մինչև բաւական լինել աւելի քան երկու հազար գերդաստանաց. ի միջին տեղւոջ այսր աւերածի ի փոքր ինչ բարձր դիրս կային կանգուն ուղղաբերձ որմունք քարամբք և կրով ձուլեալք. անմիջոց յեզերս ջուրց ծովակին հիմունք տանց և հովանոցաց և շէնք նոցին բոլորովին խոնարհեալ և քայքայեալ, որոց տեսիլ և եթ զրաւէ զոյշ մարդոյ ի զարմանս և զգզի հայրենասէր ի հառաչանս հոգւոց ի խորոց սրտէ»։*

*2. Սմբատյանց, «Գեղարքունի», էջ 33՝*

*«Գեղարքունւոյ հին քաղաքներն հետևեալք են. առաջինը Ազատ քաղաքը՝ որ Նոր-Պայազիտ քաղաքից դէպի հիւսիս 7*[1] *վերստաչափ հեռի է, Աղամխան և Ալիչալու տանող ճանապարհի ներքև՝ ծովեզերքի վերայ, որոյ տանց ու կրպակաց, կարաւանոցաց և պանդոկաց աւերակներն ահագին տարածութեամբ փռուած են դաշտի երեսին՝ դէպի ծովը խոնարհած զառիվայրում»։*

*3. Նույնը, էջ 438՝*

*«Վանքի [Հայրավանքի] շրջակայքը զարդարուած*

---

*[1] «Դէպի արեւելք 15 վերստաչափ» ուղղել ենք համաձայն հեղինակի ցուցման «դէպի հիւսիս 7 վերստաչափ», տես «Գեղարքունի», էջ 445։*

էին խաչքարերով։ Աւերակաց ընդարձակ տարածութիւնը և քարաժայռերի վերայ մնացած քար ու կրով շինած որմանց կիսականգուն դրութիւնը, ցոյց էին տալի, որ երբեմն քաղաքատեղի է եղել. ինչպէս այժմ էս մերձակայ հայ և Թուրք բնակիչքն հաստատելով «Ազատ քաղաք» անուն տան տեղւոյս և «Կարմիր չէն»։
4. Ալիշան, «Սիսական», էջ 40՝

«մերձ ի Հայրուանս կայ Ագդալէ (Սպիտակ բերդ) բերդաւոր գեօղ 30 տամբք։ Բովանդակ ցամաքակղզիս այս լի է աւերակօք մեծագործ հայկական դաստակերտաց. որպէս խնամով ազդէ և ուղևոր մի եւրոպացի» (տես Dubois de Montpéreux, Voyage autour du Caucase (1833—1834), Paris 1839—43, հատ. III, էջ 312)։
5. Նույնը, էջ 40՝

«և զքաղաքատեղին աւերակ՝ Ազատ-քաղաք գիւղ, յորում նշմարին պարիսպք իջևանից կամ կարաւանատանց, անյիշատակք առ ի նախնեաց։ Մարթ է և զմի ի տեղեաց աշտարակացն համարել Բերդ գիւղ, և զմին՝ Գեղաքունոյ բերդ, զոր ընդ գլխաւոր բերդորայս Սիւնեաց կարգէ պատմիչ աշխարհին»։

9. Վերոհիշյալ նկարագրություններից յերևում ե, վոր այժմյան Աղկալայի և Հայրեվանքի մոտ գտնվող «Ազատ քաղաք»-ը, վորը նրանց սահմանակից ե և գտնվում ե Դվին-Պարտավ ճանապարհի վրա՝ յեղել ե նշանավոր մի մեծ կենդրոնավայր։ Նույն այս քաղաքը հիշատակված ե 18-րդ դարում նաև Սիմեոն կաթողիկոսի «Ջամբռ»-ում։ Հայրեվանքի վիճակ են յեղել «ի Գեղարքունոյ նահիէն», վկայում ե Սիմեոն կաթողիկոսը, «Բերթ»-ը և «Ազատ քաղաք»-ը (տես «Ջամբռ», Վաղարշապատ 1873, էջ 284)։

Սմբատյանցի և Ալիշանի վերոհիշյալ յերկրորդ և հինգերորդ հատվածներում ուշադրության արժանի յե հատկապես նաև այն, վոր նրանք «Ազատ քաղաք»-ում մատնանշում են իջևանների կամ կարավանատների ավերակներ։

Դժվար չե, ուրեմն, յեզրակացնել, վոր «Մղոնաչափք»-ի

Բերդկունք կայարանի տեղը՝ թե ըստ իր հեռավորության Դվինից և թե ըստ տեղագրական վերոհիշյալ նկարագրությունների՝ որոշվում է հայտնապես Աղկալայի ու Հայրեվանքի մոտ գտնվող նշանավոր այս հին կենտրոնավայրում։

Ուշագրության արժանի յե վերոհիշյալ ավերակների վայրում, մասնավորապես, նաև Աղկալայի բերդը կամ ամրոցը, որը, ինչպես վկայում են Սմբատյանցը և Լալայանը, շինված է ծովեզերքում կարմիր սրբատաշ քարից (տես «Գեղարքունի», եջ 432 և Յեր. Լալայան, «Նոր Բայազետի գավառ կամ Գեղարքունիք», Ազգագր. Հանդ., XVIII, 1908 թ. № 2, եջ 124)։

Հնարավոր չէ՞ արդյոք յենթադրել, որ հենց այս բերդը կարող է լինել հին «Գեղայոյ ամրոց»-ը, որը հիշատակված է Հովհաննես կաթողիկոսի վկայություններում։

Վերև մենք մեջ եյինք բերել Հովհաննես կաթողիկոսի վկայությունը Բուղը ոստիկանի արշավանքի մասին Աշոտ Յերկաթի դեմ։ Հովհաննես կաթողիկոսն իր այդ վկայության շարունակության մեջ պատմում է, որ Բուղը ոստիկանը՝ պարտություն կրելով Սևան կղզու մոտ՝ «դեպ ուղիղ» գնացել եր «յամրոցն Գեղայոյ»։

> «Իսկ Բուղըն այն—ասում է Հովհաննես կաթողիկոսը—ամօթ զանձամբ արկեալ՝ ջանայր վրէժս փոխանակ այնր պահանջել՝ և դէպ ուղիղ գնացեալ յամրոցն Գեղայոյ, զի թերևս անզգուշաբար ի վերայ հասեալ ըստանել ինչ նմա մարթասցէ, սակայն և անտի ևս ձեռս ի գլուխ ելանէր։ Վասն զի Գէորգն այն, զորմէ նախն պատմեցաք վասն մարտի քաջության նորա, ըստ դիպաց իմն յամրոցի անդ հանդիպեցաւ։ Եւ իբրև ետես զայն ամբոխ հասեալ մերձ ի դուռն ամրոցին՝ ապա վառեալս ի զէնս և ի զարդս և ի տէգ նիզակս, և այլ ևս արս սակաւս ընդ ինքեանս առեալ՝ արտաքս առ թշնամիսն յամրոցէն ելանէր։ Եւ ապա միամարտեալ ընդ սպայակոյտ զօրուն՝ նախ կարթակոտոր զերիվար Բուղայն առնէր նրանաւ սրոյն, մինչ զի հազիւ յայլ ձի

աշտանակեալ փախչէր. և ապա այլոցն ևս մարտակցացն աջակցեալ Գէորգայ՝ ապաստ արկանէին զյոլովս ի թշնամեացն և ի փախուստ զնոսա դարձուցանէին» (Թիֆլիս 1912, եջ 356—357)։

Նույն այս «Գեղայոյ ամրոց»-ը, վորն անվանված է նաև «Բեղեայ ամրոց» և «Գեղէ», հիշատակված է դարձյալ թե Հովհաննես կաթողիկոսի և թե Ստեփանոս Օրբելյանի հետևյալ վկայություններում.

Հովհաննես կաթողիկոս, Թիֆլիս 1912, եջ 359—360՝

«Բայց բնակիչք ամրոցին Բեղեայ իբրև լուան զգալուստ ոստիկանին [Նսրայ] և ի մտի եդին զյոյժ մռմռումն սպառնութեան առ ի նմանէն նոցա, զահի հարեալք և ահիւ ըմբռնեալք և կարծիս ի մտի եդեալ անհաստատ խորհրդով, թէ գուցէ մատնեսցի ամրոցն ի ձեռս ոստիկանին և այնպէս անհնարին տանջանաց և մահու մատնեսցին։ Եւ ապա այսպիսի անզգուշալի երկիւղի զանձինս տուեալ՝ ամենևին բնաւին իսկ ունայնացուցեալ լքին ի բաց զամրոցն ի բնակչաց անտի»։

Ստեփանոս Օրբելյան, Թիֆլիս 1911, գլ. ԿԶ, եջ 399՝

«Ապա եկեալ [սուլտանն Խորազմաց Ջալալադինն] յԱրարատեան գաւառ՝ բանակ հարկանէր անդ. վասն որոյ ժողովեալ Իվանէ Աթաբէկին զամենայն զոյժ և զօրութիւն Հայոց և Վրաց՝ կամէր մարտիւ պատահել նոցա։ Եւ կացուցանէր զոմանս դէտ և ազդարար ինքեանց՝ զՇալուէ ոմն և զԳրիգոր կանչող. որք տեսեալ յոյժ նուազ զզօրն Խորասանի կանչէին և ազդէին մերոց զօրացս եթէ՝ եկայք։ Իսկ նա որ Տէրն է յաղթութեանց, կամելով կամէր եղծանել զանօրինեալ և զամբարշտեալ ժողովուրդն, փոխարկեաց զձայն ազդարարացն յականճա-
սոցա եթէ՝ փախիք։ Որք և թողեալ անդէն զկարասիս իւրեանց և զվրանս՝ աճապարեալք յերիվարսն փախեան և իբր խելացնորեալք, առանց սրոյ և զօրութեան նա և պատերազմի վիթեալք ընդ փրթուածս մեծ քարին, որ ի խրամին Գառնւոյ, առ հասարակ հոսեալ կործանե-

ցան. և Աթաբէկն Իվանէ 10 արամբք զերծեալ անկանի ի յամուրն Գեղէ»։

10. Բոլոր այս վկայություններում «Գեղայոյ» կամ «Քեղեայ ամրոց» և «ամուր Գեղէ» պարզապես միևնույն բերդի անուններն են, որի տեղն աշխարհագրական և տեղագրական նորագույն յերկերում ցույց է տրվում սովորաբար կամ այժմյան Միլլի-չայի ձորում և կամ Ղարաղալայում։

Ընդունելով, որ «Գեղամաշէն» Մազազ գավառը գտնվել և Գառնիի ձորում, նաև ի նկատի ունենալով, որ այժմյան Միլլի-չայի ձորը ձեռագիր Ավետարանների յերկու հիշատակարանում անվանված է «ձոր Քեղոյ» կամ «ձոր Քեղայ»՝ Ալիշանը «Գեղայոյ» կամ «Քեղեայ ամրոց»-ի տեղը յենթադրել է հենց այս «Քեղոյ» կամ «Քեղայ ձոր»-ի մոտ՝ այժմյան Գյոլայսորում (=ըստ Ալիշանի՝ Քեղա Այսոբի) և կամ «Գալէ տիպի»-յում (տես «Այրարատ», եջ 354 և 359—360)։ Նույն կարծիքին է նաև Գարեգին Հովսեփյանը, որն իր «Խաղբակյանք կամ Պռոշյանք» աշխատության մեջ (Վաղարշապատ 1928, եջ 65—67) անվերապահ ու կըտրական կերպով մատնանշում է, որ վերոհիշյալ վկայությունները վերաբերվում են Քեղվա ձորի անմատչելի հին բերդին, որ այժմ կոչվում է Ղալադիպի։

Հակառակ Ալիշանի ու Հովսեփյանի յենթադրության՝ Սմբատյանցը («Գեղարքունի», եջ 292) և Լալայանը (տես նրա կազմած Նոր-Բայազիտ գավառի քարտեզը, Ազգագր. Հանդ. XVIII, 1908 թ. № 2) «Գեղայոյ» կամ «Քեղեայ ամրոց»-ի տեղը մատնացույց են արել այժմյան Ղարաղալայում, որը գտնվում է Աղմաղան լեռների ստորոտում։

Այս յենթադրություններից ավելի հիմնավորված է, անշուշտ, առաջինը, որովհետև «Քեղոյ» կամ «Քեղայ ձոր»-ի անունը մոտավորապես համապատասխանում է, իրոք, «Գեղայոյ» կամ «Քեղեայ ամրոց»-ի անուններին։

Ինձ թվում է սակայն, որ նույնիսկ այս վերջին լուծումը դժվար է ընդունել բերև վերջնական ու անվիճելի։

Ուշագրավ է նախ, որ «Քեղ» և «Քեղաձոր» տեղա-

նունները հանդիպում են Հին Հայաստանի նաև ուրիշ շըր-ջաններում[1]. ուստի և վերոհիշյալ տեղանունների նմանությունը չի կարող, իհարկե, հաստատուն մի կռվան լինել վճռական եզրակացության։

Կարելի է առարկել, բացի այդ, որ «Գեղայոյ» կամ «Բեղեայ ամրոց»-ի տեղը, ինչպես երևում է Հովհաննես կաթողիկոսի վերոհիշյալ առաջին վկայությունից, լինելու էր, ըստ երևույթին, ոչ թե Դվինի հյուսիս-արևելակողմում, այլ, հավանորեն, Սևան կղզու հարևան շրջաններում։ Հենց նույն այս տպավորությունը ստացվում է, իմ կարծիքով, նաև Ստեփանոսի Օրբելյանի վերոհիշյալ վկայությունից։

Օրբելյանի պատմելով՝ Իվանե աթաբեկը, որը 1225 թվին պարտություն էր կրել Գառնիի մոտ, կարողացել էր «10 արամբք» փախչել «ի յամուրն Գեղէ»։ Դժվար է ըստ իս համաձայնել, որ Իվանեն այնքան անզգույշ կլիներ, որ փախչեր Ղալադիպի, որը գտնվում է Գառնիից մոտ 12 կիլոմետր հեռավորության վրա։ Ավելի հավանական է թվում ինձ, որ նա փախած կլիներ Աղմաղան լեռնաշղթայի հյուսիսային ճանապարհով դեպի Աղկալայի ամրոցը, որի մոտ էր գտնվում Հայաստանից Վրաստան տանող ճանապարհը։

Այս դիտողությունները, որ ենթադրական միայն կռահումներ են, թեև չեն լուծում վերոհիշյալ հարցը, սակայն ցույց են տալիս, որ «Գեղայոյ» կամ «Բեղեայ ամրոց»-ի տեղադրությունը, հակառակ Ալիշանի ու Հովսեփյանի եզրակացության, դեռ մութ ու անորոշ մի խնդիր է, որը կարոտ է, անտարակույս, մանրամասն ու հատուկ քննության նոր ու ավելի դրական փաստերի օգնությամբ։

11. «Մղոնաչափք»-ի Բերդկունքի տեղը որոշվում է, ինչպես տեսանք, այժմյան Աղկալայի մոտ գտնվող այն ա-

---

[1] Տես Հյուբշման, «Հին Հայոց տեղւոյ անունները», թրգմ. Պիլեզիկճյանի, էջ 169 և 421։

ավերակների վայրում, վորը շրջակա գյուղերի բնակիչներն անվանում են «Ազատ քաղաք»:

Բացատրության կարոտ ե, ուրեմն, և այս «Ազատ քաղաք» անունը:

Ինչպես հայտնի յե, «Ազատ քաղաք» են անվանվում այժմ նաև այն ավերակները, վորոնք գտնվում են դարձյալ Դվին-Պարտավ ճանապարհի վրա հին Մաքենիս վանքի մոտ: Այս ավերակների մասին Ալիշանը և Սմբատյանցը տալիս են հետևյալ տեղեկությունները.

1. Ալիշան, Սիսական, Վենետիկ 1893, եջ 66՝

Գզըլ-Վանք երկու մղոնաւ ի վերոյ (ի հարաւոյ) առ գետովն, 45 տամբք նոցին: Ջամուրլու մղոնաւ ի Մ. Հր. նորին 25 տամբք. և մերձ ի գետաբերանն Գըրգ պուլագ, որ Նորաշէն թուի, հայաբնակ, 50 և աւելի տամբք: Հանդէպ նորին յաջմէ գետոյն նշանակի աւերակ գեօղ Գզըլ-Դաշ, թերևս Կարմիրշէնն Սիմէոնի կաթողիկոսի: Ընդ մէջ գեօղիցս յիշեցելոց երևին ընդարձակ տեղիք աւերակաց, պարսպօք և աշտարակօք և եկեղեցեաւ, զոր տեղացիքն ասեն՝ ի հնումն Ազատ քաղաք կոչեցեալ ըստ գրութեան ինչ Պետրոսեան Պօղոս վարդապետի, որում ասէին Սեւանեցիք՝ ազատագիր ևս ունել ի Շահից Պարսից վասն ապահարկութեան տեղւոյն, և պահիւր յէջմիածին»:

2. Սմբատյանց, «Գեղարքունի», եջ 597՝

«Այս յիշեալ [Գեօղակըուլաղի շուրջը] ցիրուցան աւերակ գիւղատեղերն ի միասին առած՝ տեղացիք անուանում են Ազատ քաղաք, բայց թէ այս ե Ազատ քաղաքը, թէ Նոր-Բայազիտի մօտ՝ ծովեզերքում եղած Ազատ խարաբան է, չկարացի ստուգել, ըստ որում գրով կամ արձանագրով ապացոյց չկա»:

Ալիշանի և Սմբատյանցի նկարագրած ավերակների հենց այս վայրին ե վերաբերվում, հավանորեն, Մովսես Կաղանկատվացու ուշագրավ մի վկայությունը, վորի մեջ

Մաքենիսի մոտ գտնվող նշանավոր այս տեղն անվանված է «մեծ Մաքենացւոց մայրաքաղաքն»։

«Եւ անտի ի միւս տարին—վկայում և Կաղանկատվացին—եանց Բաբան ի գաւառն Գեղարքունի և եարկ ի սուր զբնակիչսն ոգիս իբրև տասն և հինգ հազարս. և զմեծ Մաքենացւոց մայրաքաղաքն այրեաց, մնաց միայն ջրաղացն և այլ ոչ ինչ. և էր թիւն հայոց երկու հարիւր եօթանասուն և վեց» (III, գլ. Ի, էջ 263, Մոսկվա 1860)։

Մեջ բերված տեղագրական նկարագրությունների մեջ մատնանշված են, ինչպես տեսնում ենք, «Ազատ քաղաք»-ների ավերակների ընդարձակությունը, բերդապարիսպի և ամրոցի հետքերը և տեղական միևնույն ավանդությունը, որի համաձայն այս վայրերը համարվում են քաղաքատեղի և անվանվում «Ազատ քաղաք»-ներ։ Ալիշանի վերոհիշյալ վկայության մեջ հատուկ ուշադրության արժանի յե նաև նրա հաղորդած ավանդությունը, որ Մաքենիսի մոտ գտնվող «Ազատ քաղաքն» ունեցել է ազատագիր Պարսից Շահից և ճանաչվել է իբրև ապահարկ։

Ցեթե ի նկատի ունենանք, բացի այդ, որ «Ազատ քաղաք»-ներից այս յերկրորդը Կաղանկատվացին անվանում է «մեծ Մաքենացւոց մայրաքաղաքն»՝ դժվար չի լինի ըստ իս յեզրակացնել, որ վերոհիշյալ «Ազատ քաղաքներ»-ը, որոնք գտնվում էյին Դվին-Պարտավ ճանապարհի վրա, յեղել են նշանավոր միջնադարյան կենտրոնավայրեր և ունեցել են քաղաքային հատուկ իրավունքներ ու արտոնություններ։ Իմ կարծիքով, «Ազատ քաղաք» անունները վոչ թե տեղանուն են, այլ սոցիալական հատուկ մի տերմին, վորով մատնանշվում է վերոհիշյալ վայրերի ազատ լինելը վորոշ հարկերից և նրանց քաղաքային արտոնյալ դրությունը։

Վոր Հին Հայաստանում գոյություն են ունեցել, իրոք, քաղաքավար նման կենտրոնավայրեր՝ այդ, ինչպես մատնացույց ենք արել «Ֆեոդալիզմը Հին Հայաստան»-ում մեր

աշխատության մեջ (Երևան 1934, էջ 232), ակնարկված է Հովհաննես կաթողիկոսի պատմության ուշագրավ մի հատվածում։

Զվարթնոց յեկեղեցու շինության մասին խոսելիս՝ Հովհաննես կաթողիկոսը հաղորդում է, որ Ներսես Գ. Կաթողիկոսը՝

> «պարապ անձին գտեալ՝ զարտաքոյս հրաշակերտ եկեղեցւոյն, զոր իւր իսկ էր շինեալ՝ շուրջանակի պատուար պարսպով փակեալ ամրացուցանէր, յօրինեալ ի նմա յարկս բնակութեան ինքեան հաստահեղոյս կոփածոյ քարամբք։ Այլ և կարգեալ կացուցանէր ի նմա ամբոխութիւնս երդումարդաց ըստ պայմանի քաղաքականաց» (Թիֆլիս 1912, էջ 88)։

Ինքն ըստ ինքեան հասկանալի է, որ նման կենտրոնավայրեր, որոնց տրված են յեղել արտոնություններ «ըստ պայմանի քաղաքականաց», կարող եյին լինել ոչ միայն Սյունիքում և Այրարատում, այլ նաև ֆեոդալական Հայաստանի ուրիշ շրջաններում։

Սակայն այս մի նոր խնդիր է, որը կարոտ է հատուկ լուսաբանության։

Ինձ թվում է, որ յելակետ ունենալով «Ազատ քաղաք» անունների վերոհիշյալ մեր բացատրությունը՝ անհրաժեշտ է հետագայում ուսումնասիրել մատենագրական աղբյուրների այն վկայությունները, որոնք վերաբերվում են պատմական Հայաստանի «Ազատ» կոչվող և «քաղաքագիւղ» կամ «գիւղաքաղաք» անվանվող տեղանուններին։

Միանգամայն հնարավոր է ըստ իս, որ նման կենտրոնատեղերը, որոնք գտնվել են առևտրական հին ճանապարհների մոտ՝ կարող են նույնպես ունեցած լինել իրավունքներ «ըստ պայմանի քաղաքականաց»։

12. Դվին-Պարտավ ճանապարհի վրա «Մղոնաչափք»-ում հիշատակված է միմիայն Բերդկունք կայարանը, որի տեղը որոշվում է, ինչպես տեսանք, այժմյան Ազկալայի և

Հայրեվանքի մոտ գտնվող «Աղատ քաղաք» ավերակների մոտ։

Մյուս կայարանների և ճանապարհի շարունակության մասին մինչև Պարտավ ունենք կարևոր տեղեկություններ արաբական աղբյուրները և, գլխավորապես, արաբական աշխարհագիր Իստախրին։

Համաձայն Իստախրիի վկայության Դվինից հետո հետևյալ յերկու կայարաններն են յեղել Սիսականը և Կիլ-Կույը՝ Դվին 16 Սիսաջան 16 Կիլ-Կույ (Մարկվարտը կարդում է Gēlakūnī)։

Միջկայարանային տարածությունները նշանակված են այստեղ արաբական փարսախներով։ Ուրեմն՝ Սիսաջանի հեռավորությունը Դվինից ցույց է տրված 16 արաբական փարսախ կամ մոտ 92 կիլոմետր (5752,8×16), իսկ Կիլ-Կույի հեռավորությունը Դվինից՝ 32 արաբական փարսախ կամ մոտ 184 կիլոմետր (1 փարսախը=5752,8 կիլոմ., տես «Երատոսթենեսի ստադիոնը և Պարսից ասպարեսը» իմ աշխատության մեջ եջ 9—12)։

Այս հեռավորությունների նկատմամբ անհրաժեշտ է աչքի առաջ ունենալ, վոր տարածությունները մատնանշված են արաբական աղբյուրներում կլոր թվերով վոչ թե ճշտիվ, այլ մոտավոր կերպով (տես իմ աշխատությունը „О торговле и городах Армении“, եջ 168)։

Վերոհիշյալ կայարանների տեղադրության խնդիրը լուսաբանել է վերջերս Մարկվարտը «Das Itinerar von Artaxata nach Armastica» աշխատության մեջ (եջ 56)։ Gēlakūnī (=Գեղարքունի) և Sīsaǰān (=Սիսական, Սիւնիք) կայարանները, ասում է Մարկվարտը, լինելով նախասկիզբ համապատասխան գավառների, անվանվել են հենց նրանց անունով։ Սակայն կայարանների հաջորդականությունը նա համարում է շփոթված և կարծում, վոր Դվինից հետո առաջին կայարանը լինելու յեր Գեղաքունին և ապա Սիսականը։

Gēlakūnī կայարանի տեղը Մարկվարտը յենթադրում է՝

համաձայն վերոհիշյալ տարածության՝ Դվինից 16 արաբական փարսախ կամ մոտ 96 կիլոմետր հեռավորության վրա Սևանա լճի ափին՝ մոտավորապես, ուրեմն, այժմյան Ցելենովկայում։ Իսկ Սիսականը գտնվելու էր հետևաբար Գեղաքունի այս կայարանից 16 արաբական մղոն կամ մոտ 96 կիլոմետր (ըստ Մարկվարտի) հեռավորության վրա։

13. Մարկվարտի յենթադրությունը կայարանների այս տեղադրության, ինչպես և Գեղաքունի գավառի և Սիսականի ծայրասկիզբ սահմանների մասին, վոչ միայն անհավանական է, այլ պարզապես սխալ։

Վերև մենք արդեն տեսանք, վոր Դվին–Պարտավ ճանապարհի վրա՝ այժմյան Ցելենովկայից Նոր–Բայազետ տանող ճանապարհագծի մոտ և հին Մազազ գավառում՝ վորոշվում է ճշտիվ «Մղոնաչափք»–ի Բերդկունք կայարանի տեղը։ Հասկանալի յե, ուրեմն, վոր Գեղաքունիի գավառասահմանը, վորը ինչպես ասացինք, գտնվում էր Մազազ գավառի և Բերդկունքի հարավակողմում, չեր կարող լինել այժմյան Ցելենովկայի մոտ Բերդկունքի հյուսիսակողմում։

Մի պարզ թյուրիմացություն է, անտարակույս, նաև Մարկվարտի յենթադրությունը Սիսական գավառի տեղադրության մասին։ Սիսականը կամ Սյունիքը, իհարկե, վոչ թե հատուկ գավառի, այլ արևելյան այն յերկրի անունն է, վորի մեջ գտնվում էր նաև Գեղաքունի գավառը։

Իմ կարծիքով, Մարկվարտի սխալ յեզրակացությունների գլխավոր պատճառն այն ի, վոր նրա ուշադրությունից վրիպել է խիստ կարևոր մի հանգամանք։ Դվինից դեպի Պարտավ գոյություն են ունեցել, ինչպես հայտնի յե, յերկու հին ճանապարհներ, մեկը՝ այժմյան Ցելենովկայի ու հին Բերդկունքի վրայով, իսկ մյուսը՝ այժմյան Բաշնորաշենի վրայով ու Սելիմի լեռնանցքով։

Արաբական աղբյուրների մատնանշած Դվին–Պարտավ ճանապարհագիծը վորոշվում է, ինչպես կըտեսնենք, վոչ թե հայկական «Մղոնաչափք»–ի Դվին–Բերդկունք գծով, այլ հաստատապես Դվին–Բաշնորաշեն մյուս ճանապարհով։

Ճանապարհի հենց այս յերկրորդ ուղղությունը միանգամայն ճիշտ մատնացույց է արել Կարաուլովը վերոհիշյալ իր Թարգմանություններին կցված հատուկ քարտեզում։ Կարաուլովը յենթադրում է նաև, որ Իստախրիի Սիսաջան կայարանը համապատասխանում է, հավանորեն, այժմյան Կիսաջանին, որը գտնվում է, ինչպես հայտնի յե, հենց ճշտիվ Շարուր գավառի և հին Սիսականի սահմանում և որի հեռավորությունը Դվին-Արդաշարից պոստային ճանապարհով կլինի այժմ մոտավորապես 70—75 կիլոմետր։

Հիմնական առարկությունն այս յենթադրության դեմ կարող է, իհարկե, այն լինել, որ Կիսաջանը չէ հիշատակված մատենագրական հայ աղբյուրներում։ Սակայն յեթե անգամ ընդունելի չլինի Կիսաջանի նույնացումը Սիսաջան կայարանի հետ՝ կարելի յե այնուամենայնիվ վստահորեն յենթադրել, որ Սիսաջանի տեղադրությունը լինելու յեր Շարուրից Վայոց ձոր տանող ճանապարհագծում, հավանորեն, Բաշնորաշենից Արփա գնացող գծամասում։ Իսկ Վայոց ձորը, ինչպես հայտնի յե, հին Սիսականի կենդրոնական շրջանն եր Իստախրիի ժամանակ, որի աշխարհագրական յերկը գրված է 951 թվին, և հենց այստեղ «Եղեգիք գիւղաքաղաք»-ում եյին գտնվում Սյունյաց գահագլուխ իշխանների «արքունական ապարանք»-ները (տես Ստեփանոս Օրբելյան, Թիֆլիս 1911, գլ. ԼԸ, եջ 199)։

Ուրեմն՝ Սիսաջան-Սիսականը, յեթե ընդունելու լինենք ըստ Մարկվարտի որ նա յերկրի անունն է, գտնվելու յեր, անշուշտ, այստեղ և, ինչպես միանգամայն ճիշտ վկայում է Իստախրին, Դվինից 16 արաբական փարսախ կամ մոտ 92 կիլոմետր հեռավորության վրա և նախ քան Կիլ-Կույ կամ Gēlakūnī կայարանը։

14. Սիսաջանից հետո նշանակված է Իստախրիի մոտ Կիլ-Կույ կայարանը (ըստ Մարկվարտի՝ Gēlakūnī), որի հեռավորությունը Սիսաջանից ցույց է տրված 16 արաբական մղոն կամ մոտ 92 կիլոմետր։

Ինչպես վերև ասացինք, Կարաուլովի Թարգմանության

մեջ բերված են այս տեղանվան ձեռագրական տարբեր ընթերցվածները՝ گنکوی، گوای، گلیکون، گنکوین، گیل گوره، گیل گوی, որոնք Մարկվարտը, օգտվելով նաև մեզ անհայտ աղբյուրներից, ուղղել և կարդացել է Gēlakūnī։

Տեղադրությունն այս կայարանի ըստ վերոհիշյալ տարածության ընկնում է, ինչպես տեսնում ենք, Բաշնորաշենից Սելիմի լեռնանցքով Ղարանլըխ գնացող պոստային ճանապարհագծում և ճշտիվ հին Դեղաքունի գավառում։ Վոր այս ճանապարհը Դվինից Պարտավ տանող արաբական հին ճանապարհն է՝ այդ ավելի քան հավանական է, վորովհետև այստեղ պահպանվել են մինչև այժմ հին կառավանատների ավերակներն այժմյան Աղքենդի մոտ և Սելիմում (տես Ալիշան, Սիսական, եջ 163—165)։

Կայարանի Կիլ-Կույ անունը, վորի տարբեր ընթերցվածները նշանակված են վերևում, մենք՝ նախ քան Մարկվարտի աշխատության հետ ծանոթանալը՝ համապատասխան եյինք յենթադրել հին «Կտկոյք» գյուղի անվան, վորը, ինչպես վկայում է Ստեփանոս Որբելյանը (Թիֆլիս 1911, գլ. ՀԴ, եջ 513, գլ. ԽԲ, եջ 229, գլ. ԾԱ, եջ 267 և 268), գտնվել է Գեղաքունի գավառի իշխանանիստ Կոթ գյուղաքաղաքի մոտ։

Սակայն ավելի հավանական է թվում ինձ այժմ Մարկվարտի Gēlakūnī ուղղված ընթերցումը։ Ըստ յերևույթին, այս կայարանը ևս, ինչպես և վերոհիշյալ Սիսաջանը, անվանվել է Gēlakūnī համապատասխան գավառի անունով։ Կարելի յե, իմ կարծիքով, յենթադրել, վոր արաբական կայարանները գտնվել են վոչ թե հայաբնակ գյուղերում, այլ Գեղաքունիի և «Սիսական իշխան»-ների կառուցած հատուկ կարավանատներում, վորոնք գավառների անունով կոչվել են Սիսաջան և Գեղաքունի։

*15.* Gēlakūnī կայարանից հետո Իստախրիի մոտ նշանակված է Դավմիս (ըստ Կարաուլովի՝ Давмис, Մարկվարտի մոտ՝ Dsumīs) կայարանը, վորի հեռավորությունը Gē-


Ելենովկա
Սևանա լիճ
Բերդկունք
Աղբուլաղ
Նոր Բայազետ
Երևան
Հրազդան
Գեղարդ
Գառնի
Ազատ գետ
Կոթ
(Gēlakūnī)
Արտաշատ
Դվին
Վեդի չայ
Սելիմի լեռնանցք
Արաքս գետ
Արփա չայ
(Sīsajān)
Բաշնորաշեն
Սիսաջան
ԴՎԻՆ-ՊԱՐՏԱՎ
ՈՒՂԵԳԻԾԸ
Դեպի Բերդկունք-Պարտավ
և դեպի Սիսաջան-Պարտավ.

lakūnī-*ից ցույց է տրված 16 արաբական փարսախ կամ մոտ 92 կիլոմետր։*

*Այս կայարանի* دوديس *արաբական անունը, որն ըստ իս աղճատված է, պետք է, իմ կարծիքով, ուղղել և կարդալ* ذوطيس *(د=ذ և ي=ط)*[1] *Zautīs: *Իսկ այս վերջինը պարզ կերպով համապատասխանում է հայերեն Սոտք, Սոդք կամ Սոթք տեղանվան, որի նոր անունն է այժմ Զոտ կամ Զոթ։*

*«Սաւտք»-ը, ինչպես հայտնի չէ, Գեղաքունիի արևելակողմում գտնվող հարևան գավառի անունն է, որի իշխանանիստ համանուն հին կենդրոնը Սեբեոսի մոտ անվանված է «Սաւդայ քաղաքագիւղ» (տե՛ս Սեբեոս, Ս. Պետերբուրգ 1879, գլ. Զ, էջ 49)։*

*Այս տեղանվան մեկնությունը, որը ժողովրդական մի ստուգաբանություն է, մատնանշված է Ստեփանոս Օրբելյանի մոտ։*

> *«Սօթից գաւառ—ասում է Օրբելյանը— որ սակս հանապազորդեան բքոց և դառնաշունչ օդոցն կոչեցաւ Սոթք» (Թիֆլիս 1911, գլ. Գ, էջ 12)։*

*Իսկ, իրապես, ինչպես ուղիղ դիտել են Մարկվարտը և Ադոնցը*[2]*, «Սաւտք» տեղանունը ծագել է, անշուշտ, այս կողմերում ապրող «Ծաւդէացւոց» կամ «Ծաւդէից» հին ցեղի անունից, որը հիշատակված է Ագաթանգեղոսի, Ցեղիշեյի և Խորենացու պատմություններում (տե՛ս Ագաթանգեղոս, Տփղիս 1909, գլ. ԾԺԲ, էջ 414, Ցեղիշե, Վենետիկ 1864, էջ 18, 86 և Խորենացի, Տփղիս 1913,* II, *գլ. Ը, էջ 113)։*

*Ինձ թվում է, որ արաբական այս կայարանը ևս, ինչպես և վերոհիշյալ Սիսականն ու Գեղաքունին, դարձյալ համապատասխան գավառի անունն է, որի մեջ* *Zautīs-*ի (=հա-*

[1]) *Արաբական տառերի նման շփոթումներ մատնանշել են Մառը և Մարկվարտը. տե՛ս Марр, Крещение армян, грузин, абхазов и аланов, СПБ 1905, էջ 185, 205, 207 և* Marquart, Erānschahr, Berlin *1901, էջ 32, ծան. 3։*

[2]) *Տե՛ս* Markwart, Erānschahr, *էջ 158 և Адонц, Армения в эпоху Юстиниана, էջ 424։*

վանորեն Սաւտ-ից) տեղադրությունը հավանական կըլինի յենթադրել վոչ թե «Սաւդայ քաղաքագիւղ»-ում, այլ հատուկ մի այլ կարավանավայրում։

Վոր Դվին-Պարտավ ճանապարհի ուղղությունը լինելու յեր, իրոք, հենց այս գավառի միջով՝ այդ յերևում ե Սեբեոսի պատմությունից, վորի մեջ Հայաստանից Աղվանք տանող միևնույն հին ճանապարհը հիշատակված ե հետևյալ վկայության մեջ՝

«Իսկ Ատատն Խորխոռունի և Սամուէլն Վահևունի զաւրաւքն իւրեանց փախստական գնացին ընդ քաղաքագիւղն կոչեցեալ Սաւդայ, հասանէին յաշխարհն Աղուանից ի Հոնս դէմս արարեալ, և անցեալ ընդ գետոյն՝ որ կոչի Կուր, բանակէին առ գետեզերբն» (Ս. Պետերբուրգ 1879, գլ. Զ, եջ 49)։

16. *Zauṭīs-ից հետո Իստախրիի մոտ նշանակված ե Մետրիս կայարանը (ըստ Կարաուլովի՝ Метрис, իսկ ըստ Մարկվարտի՝ Mairīs և ծանոթության մեջ Mitrīs համաձայն Ցաքուտի)։ Հեռավորությունը *Zauṭis-ից մինչև Մետրիս ցույց ե տրված 12 արաբական փարսախ կամ մոտ 69 կիլոմետր (5752,8×12)։

Մարկվարտը յենթադրում ե, վոր այս կայարանի Mairīs անվան հետ կարելի յե համեմատել Ստեփանոս Որբելյանի հիշատակած «Մայրի ամուր»-ի անունը, վորը գտնըվել ե Արևիք գավառում (Թիֆլիս 1911, գլ. Գ, եջ 13 և գլ. ՀԴ, եջ 521)։ Մարկվարտն աչքաթող ե արել, իմ կարծիքով, վոր այս կայարանի անունը ես աղճատված ե, ինչպես և նախորդ Daumīs-ը (=*Zauṭīs)։

Մետրիս, Mairīs կամ Mitrīs տեղանվան արաբերեն مترس կամ ميرس ընթերցվածը պետք ե ուղղել ըստ իս և կարդալ هترس (=Hatrīs)։ Արաբական م (m) և ه (h) սկզբնատառերի շփոթությունները այնքան սովորական են, վոր մեր սրբագրությունը չե կարող համարվել քմահաճ ու բռնի։

Իսկ այս ուղղումից հետո Hatrīs-ը, վորի հեռավորությունը *Zauṭīs-ից ցույց ե տրված 12 արաբական փարսախ

կամ մոտ 69 կիլոմետր, համապատասխան կըլինի ճշտիվ հայերեն Հաթերք (սեռ. Հաթերից) տեղանվան, որը գտնվում էր, իրոք, մոտավորապես հենց այս տարածության վրա վերոհիշյալ Սոտք գավառից։

Hatrīs-ի īs վերջավորությունը հասկանալու համար պետք է ի նկատի ունենալ Հաթերք տեղանվան —ից վերջավորությունը թեք հոլովներում։ Ընդունելով որ վերոհիշյալ «Սաւտից» գավառն արաբական աղբյուրներում անվանված է *Zauṭīs (=«Սաւտից»)՝ միանգամայն հասկանալի յէ, որ նաև «Հաթերից» գավառը կոչվելու յեր նույն աղբյուրներում Hatrīs (=«Հաթերից»)։ Ուշադրության արժանի յէ, որ 12-րդ և 13-րդ դարերի արձանագրություններում Հաթերք անվան սեռական հոլովը ունի տարբեր վերջավորություն՝ Հաթերք-ոյ կամ Հաթերք-ու (տես Կ. Կոստանյանց, Վիմական տարեգիր, Ս.—Պետերբուրգ 1913, եջ 34, 44, 46, 56, 84)։ Սակայն Բագրատունյաց շրջանում նույն անվան սեռականը կարելի յէ յենթադրել, անշուշտ, Հաթեր-ից (հմմտե Այլաբերք—Այլաբերից, Արտագերք—Արտագերից ևն)։

Դժվար չէ նմանապես կռահել, որ այս կայարանի անունը ևս, ինչպես և վերոհիշյալ Sīsaǰan-ը, Gēlakūnī-ն և *Zauṭīs-ը, վո՛չ թե Հաթերք գյուղի, այլ գավառի անունն է, որի մեջ գտնվել է արաբական կայարանը հատուկ կարավանավայրում։

17. *Zauṭīs-ից հետո մինչև Պարտավ Իստախրիի մոտ հիշատակված են Կալկատուս և Պարտավ կայարանները՝ *Hatrīs 13 Qalqāṭūs (ըստ Մարկվարտի՝ Qalanqāṭūs) 9 Barδa’a: Տարածությունը *Hatrīs-ից մինչև Qalqāṭūs ցույց է տրված 13 արաբական փարսախ կամ մոտ 75 կիլոմետր, իսկ այս վերջին կայարանից մինչև Պարտավ՝ 9 արաբական փարսախ կամ մոտ 52 կիլոմետր։

Qalqāṭūs կամ Qalanqāṭūs կայարանի անունը համապատասխանում է, ինչպես մատնանշված է Մարկվարտի և իմ աշխատություններում (տես «Das Itinerar von Artaxata nach

Armastica», էջ 56 և „О торговле и городах Армении", էջ 169), հին «Կաղանկատույք»-ին, վորը հիշատակված է Մովսես Կաղանկատվացու Աղվանից աշխարհի պատմության հետևյալ վկայություններում՝

1. Մովսես Կաղանկատվացի, Թիֆլիս 1912, II, գլ. Ժ, էջ 150՝

«Իսկ իբրև եկն եհաս զօրն Հոռոմայեցւոց անթիւ բազմութիւն յոյժ՝ բնակեցան յՈւտի գաւառի առ հեղեղատովն, որ ի մէջ սահմանաց գեղջն Կաղանկատուոց. և կոխեցին քանդեցին զգեղեցիկ զստացուածս այգեստանեայց և գեօղաստանեայց ընդ որս անցանէին, և անտի չուեալ բանակեցան առ հեղեղատովն Տրտուայ մօտ ի գիւղն Դիւտական»։

2. Նույնը, II, ԺԱ, էջ 155՝

«Իբրև իրազգած եղեն թշնամիքն եղելոցն՝ պնդեցան զհետ փախստէից և հասեալ ի մասն ինչ նոցա առ ըստորոտով լերինն՝ որ է յանդիման գեղջն մեծի Կաղանկատուաց, որ ի նմին յՈւտի գաւառի՝ յորմէ և ես, ի նսեմանալ աւուրն ոչ կարացին ժամանել ի բաղում ինչ ի վնաս . . .»։

Այս վկայություններից, ինչպես տեսնում ենք, յերևում է, վոր Կաղանկատույք մեծ գյուղը գտնվել է «Դիւտական գիւղ»-ի և Տրտու կամ այժմյան Թարթառ գետի մոտ Ուտի գավառում (համեմատե Մակար յեպիսկ. Բարխուդարյան, «Պատմութիւն Աղուանից», Վաղարշապատ 1902, էջ 31)։

Այս գյուղը ևս, ինչպես դժվար չէ հետևցնել Կաղանկատվացու յերկու այլ վկայություններից, յեղել է, հավանորեն, իշխանանիստ հին կենտրոնավայր։ Յոթերորդ դարի սկիզբներում «Աղուէն»-ի կանոնադիր ժողովին մասնակցել է, ինչպես հաղորդում է Կաղանկատվացին, «Բակուր Կաղանկատուց նահապետ»-ը (Թիֆլիս 1913, I, գլ. ԻԶ, էջ 98)։ Իսկ ութերորդ դարի սկիզբներում, նույն հեղինակի վկայությամբ, բնակություն էր հաստատել «յաւանին Կաղան-

կատուց» «Ռոստոմ ի Վարազ Աքոյեան, որք ի Ստահր գաւառէ Պարսից» (III. գլ. Ժ, եջ 349)։

«Կաղանկատույք»—Qalanqāṭūs-ը (=Կաղանկատուց) գտնվել է ըստ Իստախրիի վերոհիշյալ վկայության 9 արաբական փարսախ կամ մոտ 52 կիլոմետր (5752,8×9) հեռավորության վրա հին Պարտավից, վորի տեղը վորոշված է արդեն այժմյան Բարդա գյուղի մոտ, ուր մնացել են մինչև այժմ նրա ընդարձակ ավերակները։

18. «Մղոնաչափք»-ի և Իստախրիի վերոհիշյալ վկայությունների քննությամբ Դվին-Պարտավ ճանապարհը վորոշվում է, ինչպես տեսանք, յերկու տարբեր ուղղությամբ՝ Բերդկունք—Աղկալայի և Բաշնորաշեն—Արփայի ճանապարհագծերով։ Այդ յերկու ճանապարհների միացման կետը պետք է լիներ, ինչպես և այժմ, Ադիաման և Ղարանլըխ գյուղերի շրջանում։ Իսկ այնուհետև մինչև Պարտավ ճանապարհի շարունակությունը պարզ կերպով վորոշվում է Սևանա լճի հարավային ափերով, Սոտք, Հաթերք գավառների միջով և Կաղանկատույք գյուղի մոտով։

Մեր այս ուսումնասիրությամբ պարզվում է վոչ միայն ճանապարհի այս ուղղությունը, այլ նաև ճշտվում են այդ ճանապարհի վրա գտնվող կայարանները, վորոնք մատնանշված են թե հայկական «Մղոնաչափք»-ում և թե Իստախրիի ճանապարհացույցում՝

1. Դվին—ավերակների վայրը Արգաշար գյուղի մոտ.

2. Բերդկունք—Աղկալայի և Հայրեվանքի մոտ գտնվող «Ազատ քաղաք»-ի ավերակների վայրում.

3 Սիսաջան=Սիսական (հավանորեն, համապատասխան յերկրի անունն է).

4. Կիլ-Կույ (ըստ Կարաուլովի՝ Киль-Куй, ըստ Մարկվարտի՝ Gēlakūnī)=Գեղաքունի (հավանորեն, համապատասխան գավառի անունն է).

5. Դավմիս (ըստ Կարաուլովի՝ Давмис, ըստ Մարկվարտի՝ Daumīs)=*Zauṭīs=«Սաւտք», սեռ. «Սաւտից» (հավանորեն, համապատասխան գավառի անունն է).




**ԴՎԻՆ-ՊԱՐՏԱՎ**
**ՈՒՂԵԳԻԾԸ**

——— Դեպի Պարտավ

6. *Մետրիս (ըստ Կարաուլովի՝* Метрис, *ըստ Մարկվարտի՝* Mairīs, *Ցաքուտի մոտ՝* Mitrīs)=*Hatrīs=*Հաթերք, սեռ. Հաթերից=(հավանորեն, համապատասխան գավառի անունն է).*

7. *Կալկատուս (ըստ Կարաուլովի՝* Калькатус, *ըստ Մարկվարտի՝* Qalanqaṭūs=*Կաղանկատույք, սեռ. Կաղանկատուց.*

8. *Պարտավ—այժմյան ավերակների վայրում Բարդա գյուղի մոտ։*

*Կայարանների տեղերը հավանական է յենթադրել, գըլխավորապես, հատուկ կարավանատներում, վորոնք գտնվել են Սիսական իշխանների շրջանում և Գեղաքունի, Սոտք ու Հաթերքի գավառներում։*

*Սակայն այս խնդիրը, ինչպես և հին այս ճանապարհի ուղղությունը տեղագրական բոլոր իր մանրամասնություններով պետք է, իհարկե, քննեն ու ստուգեն տեղում գիտական հատուկ արշավախմբերը։*

---

# ՑԱՆԿ ՀԱՏՈՒԿ ԱՆՈՒՆՆԵՐԻ

———

## ՑԱՆԿ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ


1. *«Ագաթանգեղայ, Պատմութիւն Հայոց», աշխատ. Գ. Տեր-Մկրտչյանի և Ստ. Կանայանցի, Տփղիս 1909.*
2. Адонц Н., Армения в эпоху Юстиниана, СПБ. 1908.
3. *«Ա-Դօ, Վանի, Բիթլիսի և Էրզրումի վիլայէթները», Երևան 1912.*
4. *Ալիշան, Այրարատ, Վենետիկ 1890.*
5. *Նույնի, Սիսական, Վենետիկ 1893.*
6. *Նույնի, Շիրակ, Վենետիկ 1888.*
7. Ammiani Marcellini, Rerum gestarum libri qui supersunt, Bibl. Teubn.
8. *«Անանուն ժամանակագրութիւն», Վենետիկ 1904.*
9. *Ավդալբեգյան Թ., «Բանասէրի օրագրից», Հանդ. Ամս. 1926, Թ. 7—8, 9—10 և 11—12.*
10. *«Պատմութիւն Արիստակեայ վարդապետի Լաստիվերտցւոյ», Թիֆլիս 1912.*
11. *Արմատական բառարան, Հ. Աճառյանի, Երևան 1926.*
12. *Բարխուդարյանց Մակար յեպիսկ., Պատմություն Աղվանից, Վաղարշապատ 1902.*
13. Belck W., Beiträge zur alten Geographie und Geschichte Vorderasiens, Heft I—II, Leipzig 1901.
14. Belck W., Majafarkin und Tigranokerta, Zeitschrift für Ethnol. 1899.
15. *Գաթրճյան Հ. Հովս. վարդ., Տիեզերական պատմություն, Հա. Ա և Բ, Վիեննա 1849—1852.*
16. *Գարագաշյան Ա. Մ., «Քննական պատմութիւն Հայոց», Մասն Բ, Թիֆլիս 1895.*

17. *«Գիրք աշխարհաց և առասպելաբանութեանց որ է Ա-ղուէսագիրք, ի Մարսիլեայ 1683».*
18. *Գիրք Թղթոց, Թիֆլիս 1901.*
19. Dolens et Khatch, Histoire des anciens Arméniens, Genève 1907.
20. Dubois de Montpéreux F., Voyage autour du Caucase, Paris, 1839—43.
21. *«Թովմայի վարդապետի Արծրունւոյ, Պատմութիւն տանն Արծրունեաց», հրատ. Ք. Պ., Ս.-Պետերբ. 1887.*
22. *Ինճիճյան Հ. Ղ., «Ստորագրութիւն Հին Հայաստանեայց», Վենետիկ 1822.*
23. *Ղալայան Յերվ., «Նոր Բայազետի գաւառ կամ Գեղարքունիք», Ազգագր. Հանդ.,* XVIII, *1908 թ., № 2.*
24. Lehmann—Haupt C. F., Armenien einst und jetzt, Bd. I, Berlin 1910, Bd. II, Erste Hälfte, Berlin 1926, Bd. II, Zweite Hälfte, Berlin 1931.
25. *Նույնի,* Ueber Tigranokerta, Verhandl. der 46. Versammlung deutscher Philologen und Schulmänner in Strassburg, Leipzig 1904.
26. *Լեո, Հայոց պատմություն, հատ. առաջին, Թիֆլիս 1917.*
27. Линч Х. Ф. Б., Армения, перев. Ел. Джунковской, т. I *և* II, Тифлис 1910.
28. *Նույնի և Ոսվալդի,* Карта Армении и пограничных стран.
29. Халатьянц Г., Очерк истории Армении, Москва 1910.
30. *Նույնի,* Армянские Аршакиды, Москва, 1903.
31. Khanzadian Z., Atlas historique, Paris 1920.
32. Христианский Восток, т. III, вып. I, Петроград 1914.
33. Караулов Н. А. Сведения арабских писателей о Кавказе, Армении и Адербейджане. I. Ал-Истахрий. Сборник материалов для описания местностей и племен Кавказа, вып. XXIX, Тифлис 1901.

34. Karbe Hans, Der Marsch der Zehntausend vom Zapates zum Phasis-Araxes. Wissenschaftliche Beilage zum Jahresbericht des Königstädtischen Gymnasiums zu Berlin, 1898.
35. Dionis Cassii Cocceiani historia Romana, Bibl. Teubn.
36. *Կեղծ-Սեբեոս, տես «Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն», Ս.-Պետերբուրգ 1879.*
37. Kiepert Richard, Atlas von Kleinasien in 24 Blättern, 1902—1906.
38. Kiepert H., Nouvelle carte générale des provinces asiatiques de l'empire Ottomane, 1884.
39. *Նույնի,* Lehrbuch der alten Geographie, Berlin 1878.
40. *«Պատմութիւն Հայոց արարեալ Կիրակոսի վարդապետի Գանձակեցւոյ», Թիֆլիս 1910.*
41. Constantini Porphyrogeneti, De administrando imperio, Bonnae 1829—40.
42. *Կոստանյանց Կ., Վիմական տարեգիր, Ս.-Պետերբուրգ 1913.*
43. *Նույնի, «Հիւսուածք», գիրք յերրորդ, Վիեննա 1877.*
44. *Նույնի, Գրիգոր Մագիստրոսի թղթերը, Ալեքսանդրապոլ 1910.*
45. *Հակովբ Կարնեցի, Տեղագիր Վերին Հայոց, հրատ. Կ. Կոստանյանցի, Վաղարշապատ 1903.*
46. *Հակոբյան Հովհ., Ուղեգրություններ, հատոր Ձ, Յերևան 1934.*
47. *Հայկունի Ս., Բագրևանդ Ջրաբաշխ գավառ, Էջմիածին 1894.*
48. *Հյուբշման Հ., «Հին Հայոց տեղւոյ անունները», թարգմ. Հ. Բ. Պիլեզիկճյանի, Վիեննա 1907.*
49. *Հովսեփյան Գար. արքեպ., Խաղբակյանք կամ Պռոշյանք Հայոց պատմության մեջ, մասն առաջին, Վաղարշապատ 1928.*
50. *«Ղազարայ Փարպեցւոյ, Պատմութիւն Հայոց և Թուղթ*

ու Վահան Մամիկոնեան», աշխատ. Գ. Տեր-Մկրտչյանի և Ստ. Մալխասյանի, Տփղիս 1904.

51. «Պատմութիւն Ղևոնդեայ մեծի վարդապետի Հայոց», Ս.-Պետերբ. 1887.

52. Манандян Я. А., О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времен, Эривань 1930.

53. Մանանդյան Հակոբ, Հայաստանի հին ճանապարհները Artaxata-Satala և Artaxata Tigranocerta ըստ Պևտինգերյան քարտեզի, Տեղեկագիր Գիտ. և Արվ. Ինստիտուտի № 5, Յերևան 1930.

54. Նույնի, Մանր հետազոտություններ, Յերևան 1932.

55. Նույնի, Երատոսթենեսի ստադիոնը և Պարսից ասպարեսը, Յերևան 1934.

56. Նույնի, Խորենացու առեղծվածի լուծումը, Յերևան 1934.

57. Նույնի, Ֆեոդալիզմը Հին Հայաստանում, Յերևան 1934.

58. Markwart J., Eränschahr nach der Geographie des Ps. Moses Choren., Berlin 1901.

59. Նույնի, Untersuchungen zur Geschichte von Eran, I, Göttingen 1896, տես Philologus, Bd. 54, Bd. 55.

60. Նույնի, Die Entstehung und Wiederherstellung der armenischen Nation, Potsdam 1919.

61. Նույնի, Le berceau des Arméniens, Revue des Études arméniennes, Paris 1928, t. VIII, fasc. 2.

62. Նույնի, Das Itinerar von Artaxata nach Armastica, Wien 1928.

63. Նույնի, Südarmenien und die Tigrisquellen nach griechischen und arabischen Geographen, Wien 1930.

64. Նույնի, Die Genealogie der Bagratiden und das Zeitalter des Mar Abas und Ps. Moses Xorenathsi, Caucasica, Fasc. 6, 2 Teil, Leipzig 1930.

65. Նույնի, Die Entstehung der armenischen Bistümer, hrsgg. von J. Messina, Orientalia christiana, t. XXVII, 2, Roma 1932.

66. Марр Н., Крещение армян, грузин, абхазов и аланов. Арабская версия, СПБ 1905.
67. *Նույնի,* Легенды об основании Куара в Армении и Киева на Руси, Известия ГАИМК, т. III, Ленинград 1924.
68. *«Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանց ի Վենետիկ», հատոր Ա, Վենետիկ 1914.*
69. *«Մղոնաչափք»—տես «Խորենացու առեղծվածի լուծումը», էջ 84—89.*
70. Miller Konrad, Itineraria Romana, Römische Reisewege an der Hand der Tabula Peutingeriana, Stuttgart 1916.
71. *«Մովսիսի Խորենացւոյ, Պատմութիւն Հայոց», աշխատ. Մ. Աբեղյանի և Ս. Հարությունյանի, Տփղիս 1913.*
72. *«Մեվսէս Խորենացու հայկական պատմութիւն», աշխարհ. թարգմ. Խ. Ծ. Վ. Ստեփանեյի, Ս.-Պետերբուրգ 1889.*
73. „История Армении Моисея Хоренского“, прв. Н. Эмина, Москва 1893.
74. *«Աշխարհացոյց Մովսէսի Խորենացւոյ», տես «Մովսէսի Խորենացւոյ մատենագրութիւնք», Վենետիկ 1843.*
75. *«Աշխարհացոյց Մովսեսի Խորենացւոյ յաւելուածովք նախնեաց», հրատ. Սուքրյանի, Վենետիկ 1881.*
76. Murad Fr., Ararat und Masis, Heidelberg 1901.
77. *«Եղիշէի վարդապետի, Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին», Վենետիկ 1864.*
78. *«Եղիշէի պատմութիւն Վարդանանց ըստ Անձեւացեաց օրինակի», հրատ. Խ. Հովհաննիսյանցի, Մոսկվա 1912.*
79. *«Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտեցւոյ, Պատմութիւն Հայոց», Թիֆլիս 1912.*
80. *«Յովհաննէս եպ. Մամիկոնեան, Պատմութիւն Տարօնոյ», Վենետիկ 1832.*
81. Justi F., Geschichte Irans, Grundriss der Iranischen Philologie, II, Strassburg 1903.

82. *Շահխաթունյանց Հովհ. յեպիս., «Ստորագրութիւն կաթուղիկէ էջմիածնի և հինգ գաւառացն Արարատայ», հատ.* I *և* II, *Էջմիածին 1842.*
83. Орбели Иос., Надписи Мармашена, Петроград 1914.
84. *«Ջուանշերի պատմչի, Համառօտ պատմութիւն Վրաց», Վենետ. 1884.*
85. C. Plinii Secundi Naturalis Historiae, *տես* Histoire naturelle de Pline, avec la traduction en francais, par M. É. Littré, t. I—II, Paris 1883.
86. Plutarchi vitae, graece et latine, *Փարիզի հրատ.* Th. Döhner-*ի և* F. Dübner-*ի*, vol. I—V, 1846—1855.
87. Ptolemaei, Geographia, *հրտր.* C. Müller-*ի.*
88. Ravennatis Anonymi Cosmographia, ed. Pinder et Parthey.
89. Reinach Th., Mithridate Eupator roi du Pont, Paris 1890.
90. *«Ռեկլիւ Էլիզէ, Ռուսական Հայաստան կամ Արաքսի աւազանը են», Թրգմ. Միարան, Վաղարշապատ 1891.*
91. *Ռուսական հին շտաբի տասը վերստանոց քարտեզ.*
92. Saint-Martin M. J., Mémoires historiques et géographiques sur l' Arménie, t. II, Paris 1819.
93. *«Սամուէլի քահ. Անեցւոյ, Հաւաքմունք ի գրոց պատմագրաց», Վաղարշապատ 1893.*
94. Sandalgian J., Histoire documentaire de l' Arménie des âges du paganisme, t. I—II, Rome 1917.
95. *«Սեբէոսի եպիսկոպոսի, Պատմութիւն ի Հերակլն», Ս.-Պետերբուրգ 1879.*
96. *«Սիմէոն կաթ., Ջամբռ», Վաղարշապատ 1873.*
97. *Սմբատյանց Մես. արքեպ., Տեղագիր Գեղարքունի ծովազարդ գավառի, Վաղարշապատ 1895.*
98. *«Ստեփաննոսի Տարօնեցւոյ Ասողկան, Պատմութիւն տիեզերական», Ս.-Պետերբուրգ 1885.*

99. «Ստեփանոսի Օրբելեան արքեպիսկոպոսի Սիւնեաց, Պատմութիւն նահանգին Սիսական», Թիֆլիս 1911.
100. Strabonis Geographica, ed. A. Meineke, I—III, Lipsiae 1921—26.
101. Strecker W., Topographische Mittheilungen über Hoch-Armenien, տես ռուս. թարգմ. Н. Астафьев-ի, Материалы для географии Аз. Турции, прилож. к тому III Изв. Кавк. Отд. Рус. Геогр. Общ., Тифлис 1874.
102. «Հաւաքումն պատմութեան Վարդանայ վարդապետի», Վենետիկ 1862.
103. Վերներ Շուր գր., «Ներոն կայսեր արեւելեան քաղաքականութիւնը», թրգմ. Հ. Մ. Հապոզյանի, Վիեննա 1930.
104. Oeuvres complètes de Tacite, traduction du bureau de Lamalle, revue par M. Charpentier, t. I—Annales, t. II—Histoire, Paris.
105. Taylor J. G., Journal of a tour in Armenia, Kurdistan and Upper Mesopotamia, տես ռուս. թարգմ. Н. Астафьев-ի, Матер. для географии Аз. Турции, прил. к тому II Изв. Кавк. Отд. Рус. Геогр. Общ., Тифлис 1874.
106. Տաշյան Հ. Հ. Վ., Պոնտական ուսումնասիրությունք: Մասն Ա՝. «Հետազօտական ուղեւորութիւն ի Պոնտոս Յ. Գ. Կ. Անգերսընի»: Մասն Բ՝. «Ուղևորութիւն հնախօսական հետազօտութեան ի Պոնտոս եւ ի Փոքր Հայս Փր. և Եւգ. Կիւմոն եղբարց», Վիեննա 1919.
107. Tomaschek, „Caspiae“, Pauly—Wissowa Realencykl.
108. Еремян С. Т., Торговые пути Юго-Кавказа в конце IV века, քարտեզ՝ հրատր. ձեռագրի իրավունքով.
109. Tournebize Fr., Histoire politique et religieuse de l' Arménie, Paris 1900.
110. «Փաւստոսի Բուզանդացւոյ, Պատմութիւն Հայոց», յերկ. տպ., Վենետիկ 1889.

*111.* Xenophontis Anabasis, Biblioth. Teubn.
*112.* *«Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Գ. Ցէթ-թէրի», թրգմ. Հ. Հ. Տաշյանի, Վիեննա 1895։*
*113.* *Պրոֆ. Դր. Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, Հատոր Ա, Երևան 1934։*

---

*Проф. Я. А. Манандян.*

## Главные пути Армении по Tabula Peutingeriana.

## РЕЗЮМЕ.

Настоящая монография является продолжением моих исследований о древних путях Армении по Tabula Peutingeriana (см. „О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времен“, Эривань 1930, стр. 101—124; „Древние пути Армении“ (на арм. яз.), Известия Института Наук и Искусств ССРА, Эривань 1931, № 5, стр. 65—89 и „Мелкие исследования“ (на арм. яз.), Эривань 1932, стр. 3—21). Кроме итинерариев Artaxata - Satala и Artaxata - Tigranocerta, переработанных и значительно пополненных, в издаваемом труде рассмотрены также и магистральные пути Artaxata-Sebastopolis и Artaxata - Gobdi - Paresaca. Кроме того, в особом приложении подробно выяснен средневековый путь, идущий из Двина в Партав.

Окончательные мои выводы о вышеозначенных путях и местоположениях расположенных на них станций сводятся, в общем, к следующим основным пунктам:

### 1. Artaxata-Satala.

1. Путь из Artaxata в Bagauna (Raugonia, Ragauna = *Bagauna, см. Markwart, Die Entstehung und Wiederherstellung der armenischen Nation, Berlin 1919, стр. 23 и 69, прим. 10) шел не через Парнаут и не через

Чингильский перевал, как полагали Р. Киперт и В. Бельк, а через нын. Булаг-Баш (=Paracata, см. W. Belck, Beiträge zur alten Geographie und Geschichte Vorderasiens, II, Leipzig 1901, стр. 83—92) и через Каравансарайский или Куджахский перевал в нын. Арудж и оттуда в Багаван (=нын. Учь-Килиса).

2. Coloceia в Таблицах Певтингера и Zotozeta у анонимного географа из Равенны следует исправить и читать *Zolocerta (Colo-, Zoto- = *Zolo-,-ceia, -zeta = *certa). Станция эта соответствует древнеармянскому **Ձողկերտ = Ցոլակերտ**. Вполне вероятно также, что упомянутая у Птолемея Ζογοκα΄ρα (77° 15′ д. и 42° 20′ ш.), местоположение которой указано им к юго-западу от Арташата, тождественна с *Zolocerta—Цолакертом.

3. В предыдущих моих исследованиях (см. „Древние пути Армении“, Известия Института ССРА, № 5, стр. 69—71 и „О торговле и городах Армении“, стр. 107—108) *Zolocerta — Цолакерт отождествлен был мною согласно с Алишаном (Айрарат, Венеция 1890, стр. 123—124) с нын. Каракалой. Предположение это оказывается, однако, явно ошибочным. Определением местонахождения станции Hariza и приурочиванием Hariza к нынеш. Аруджу (см. мои „Мелкие исследования“, стр. 3—21) выясняется, что местонахождение станции *Zolocerta—Цолакерта, лежавшей на расстоянии 24 римских миль или 36 километров от Hariza—Аруджа, следует искать не в районе Каракалы, а в предгорной местности к юго-западу от нын. Хош-Хабара и Н. Чарухчи.

4. Станция Hariza отождествлена мною, как указано выше, с нынешним местечком Арудж (срв. **Արուճ**

у армянского историка Леонтия, гл. 34, стр. 140—141), лежащим недалеко от Мысуна, на расстоянии около 10 километров к югу от Каравансарайского или Куджахского перевала. Правильность этого предположения подтверждается тем, что расстояние между Bagauna и Hariza, показанное в Таблицах 24 рим. м. или 36 килом., соответствует точь в точь расстоянию между Багаваном (нын. Учь-Килиса) и нынеш. Аруджем.

5. Определением местоположения станции Hariza устанавливается, как видим, и тот древний перевал через который пролегала линия Artaxata-Bagauna. Через Каравансарайский или Куджахский перевал следует предположить, как подробно указано в моем труде, не только вторжения римских легионов Помпея, Корбулона, Статия Приска в область Айрарат, но и путь отступления „десяти тысяч" греков и Ксенофонта к реке Фазису-Араксу, а также передвижения халдов в приаракские долины и в древний Армавир.

6. Через этот же перевал следует предположить транзитный путь международной торговли и движение караванов, идущих из Китая и Дальнего Востока в порты Черного моря. В правильности этого предположения можно убедиться, если иметь в виду расположение городов Армении римской эпохи.

7. На основании целого ряда указаний можно также с уверенностью утверждать, что район Каравансарайского перевала и вся горная область к востоку от озера Гайлату имели первостепенное стратегическое значение и, являясь воротами Центральной Армении, охранялись могущественными крепостями, развалины которых сохранились до нашего времени.

8. В вышеозначенной горной области к востоку от озера Гайлату находились, как я полагаю, упомянутые у Страбона (XI, 14, 6) укрепления Ὀλάνη (=castellum Volandum, Тацит, Анналы, XIII, 39) и Βάβυρσα. Следовательно и путь Корбулона определяется из Внутренней Армении через Keприкей в Багаван (=Учь-Килиса) и оттуда через Аруджю в горный район Каравансарайского перевала, где были осаждены и взяты им замок Volandum и другие укрепления. Исходя из этих же данных, можно, мне кажется, также предположить, что Βάβιλα Птолемея, местонахождение которой указано им недалеко от Σαγαυάνα (=Багаван) и Ζογοκάρα (=*Zolocerta), тождественна, вероятно, с Βάβυρσα Страбона.

9. Из Багавана (Учь-Килиса), лежавшего к северо-востоку от нынеш. Диадина, общее направление пути в Саталу устанавливается, с полной очевидностью, к югу от горной цепи Агри-дага через упомянутую у Лазаря Парпского деревню *Արամանայ* в Keприкей, и оттуда через нынеш. Калдарич и южное предгорье Коп-дага в Саталу.

10. Местоположение станции Chadas (с двумя башнями) можно предположить в нынешнем Хаздаре (*Խաստուր*, Хасдур, Ханзыр), который, по мнению Лемана, был одним из главных центров халдской эпохи (см. Armenien einst und jetzt, Bd. II, 2, Berlin 1931, стр. 742). Правильность этого предположения подтверждается тем, что расстояние между Bagauna и Chadas, показанное в Таблицах 48 римских миль = 71 килом., соответствует расстоянию между Багаваном и нын. Хаздаром.

11. Следующая за Chadas станция Armanas, лежавшая на расстоянии 17 римских миль = 25 килом. от Chadas, тождественна с упомянутой у Лазаря Парпского (II, гл. 30) деревней *Արամանայ*, которая находилась в области Багреванде, недалеко от Басиана и Товарацатапа.

12. Ближайшая станция Andaga (Andacas у Анонима Равеннского), которая отстояла от Armanas на расстоянии 12 римских миль = 18 килом., соответствует, повидимому, древнеармянскому Антаку (см. Алишан, Айрарат, стр. 52; срв. Эндэк на десятиверстной карте бывшего Генерального штаба).

13. Следующая за Andaga или Andacas станция Barantea, лежавшая на расстоянии 26 римских миль = 39 килом. от станции Andaga, находилась, очевидно, в Верхнем Басиане приблизительно в 44 километрах (= 30 римских миль) к северо-востоку от нын. Кеприкея (= Adconfluentes). Эта же область Верхнего Басиана, по свидетельству Моисея Хоренского (II, гл. 6), в древнее время называлась также Вананд. Можно поэтому предположить, что название станции Barantea, которое должно быть исправлено в *Banantea, соответствует древнеармянскому *Վանանդ*, род. пад. *Վանանդեայ*. Область эта, вероятно, названа *Վանանդ* по имени главного пункта области *Banantea, сохраненного в Таблицах Певтингера.

14. Станция Calcidaua (Chachidara у Анонима Равеннского), название которой я предлагаю исправить в *Chalchdiara, соответствует, несомненно, древнеармянскому Халдой-аричу, тождественному с нын. деревней Калдарич, находящейся около переправы через Евфрат недалеко от нын. Ашкалы.

15. Ближайшая станция Sinara (Sinara у Птол., Sinora у Плут., Sinoria у Страбона и Synhorium у Амм. Марц.), лежавшая на расстоянии 15 римских миль=22 килом. от *Chalchdiara, находилась на южных склонах Коп-дага, недалеко от правого берега реки Евфрата.

16. Согласно свидетельству Страбона (XII, 3, 28), Синория была значительным укреплением в Понтийском царстве Митридата Евпатора и находилась на границе с Великой Арменией. Исходя из этого сообщения, можно заключить, что граница между Понтийским царством Митридата и Великой Арменией пролегала в районе горного массива нын. Коп-дага.

17. Местоположение станции Lucus Basaro (=„роща Basaro“), лежавшей на растоянии 22 римских миль=33 килом. от Sinara, можно предположить в упомянутой у Асохика долине Багарича («դաշտն Բագառճոյ», III, гл. 27, стр. 251). Basaro я предлагаю исправить и читать *Bagara (Г вм. С) и полагаю, что *Bagara может соответствовать древнеармянскому Багаричу (срв. *Chalchdi-ara = Халдой-арич).

18. В предыдущих моих исследованиях следующая за Lucus Basaro станция Aegea (Egea у Анонима Равеннского) была отождествлена мною согласно с Конр. Миллером (см. Itineraria Romana, стр. 676) с древней Елегией римских источников. Предположение это оказалось, однако, ошибочным. Местонахождение Елегии, как правильно указано в исторических трудах (срв. F. Justi, Geschichte Irans, Grundriss der iranischen Philologie, Bd. II, Strassburg 1904, стр. 508) следует предположить на месте нынеш. деревни Илиджа, лежащей недалеко от Эрзерума.

## 2. Artaxata - Tigranocerta.

19. Отождествление древнего Тигранакерта с нын. Фаркином, подробно обоснованное в трудах Лемана и Белька, подтверждается, с полной очевидностью, также и нижеприведенным анализом вышеозначенного итинерария.

20. Станция Zanserio (Zancerion у Анонима Равеннского), лежавшая на расстоянии 30 римских миль=44 килом. от Тигранакерта, может быть сопоставлена с Зоникартом, упомянутым у Barhebraeus-a (Chron. eccles., vol. II, p. 615/16, ed. Abbeloos et Lamy). Возможно поэтому, что вышеозначенные названия станции искажены из *Zancerta. Местоположение Zōnīqart-a указано у Barhebraeus-a в местности Hesnā de-Zājid, около места слияния реки Dēbā с рекой Arsīnōs. Основываясь на этом свидетельстве, местонахождение Зоникарта Маркварт предполагает около реки Арацания против нынеш. Пистека (см. Südarmenien und die Tigrisquellen, стр. 100—101). Мне кажется более вероятным, что под рекою Arsīnōs подразумевается не Евфрат - Арацаний, а нынеш. река Кульп-су, находящаяся в древней области Арзанене (=сир. Arzôn).

21. Ближайшая станция Cymiza, лежавшая на расстоянии 20 римских миль = 30 килом. от Zanserio, тождественна с нынеш. Кильдизом, обозначенным на десятиверстной карте бывшего генерального штаба на пути из Фаркина в Мушскую равнину, к северу от деревни Нерджики. Искаженное название означенной станции я предлагаю исправить в Cyldiza (CYΛΔIZA вм. CYMIZA, ΛΔ = M).

22. Название станции Patansana (Patransana у Анонима Равен.), которое я предлагаю исправить в *Patransauna (срв. Bagauna = *Բագաւան),* соответствует древнеармянскому Патрансавану *(= Պատրանս աւան).* Местоположение этой станции, лежавшей на расстоянии 49 римских миль=73 килом. от Кильдиза, следует искать недалеко от Муша. Одноименная с этой станцией деревня Патранс имеется и теперь в районе Спаркерте Битлисского вилайета (см. А-До, Ванский, Битлисский и Эрзерумский вилайеты (на арм. яз.), Эривань 1912, стр. 94).

23. Ближайшая после *Patransauna станция Vastauna (Bastavena у Анонима Равен.), отстоявшая от *Patransauna на расстоянии 26 римских миль = 39 килом., находилась, как я полагаю, на месте нынеш. Бостакенда, который в древнее время назывался, повидимому, Баст аван, арм. *Բաստ աւան* (= *Bastauna или *Bastavana). Соименная деревня Баст существует и в настоящее время в районе Спаркерте Битлисского вилайета (см. у А-До в вышеуказанной книге, стр. 94).

24. С станционным пуктом Dagnevana (Dognavana у Анонима Равен.) тождественен, несомненно, Доневанк, арм. *Դոնեվանք* (=вероятно *Dognevana), лежавший в древнеармянской области Харке.

25. Ближайшая станция Flegoana, название которой следует исправить в *Elegacana, сопоставлена мною с древнеармянской деревней Елегакан *(Եղեգական),* лежавшей, по свидетельству Асохика (см. Всеобщая история, перевод Н. Эмина, Москва 1864, II, гл. 2), также в Харке.

26. Следующая станция Isumbo (с двумя башнями) название которой я предлагаю исправить в *Tsumbo, соответствует, очевидно, древнеармянскому селению Цумбу *(Ցումբ,* род. пад. *Ցումբոյ),* находившемуся, по свидетельству Асохика (Всеобщая история, перевод Эмина, III, гл. 41), в прилегающей к Харку области Апахунии.

27. Местоположение станции *Tsumbo, лежавшей в Апахунии, можно предположить к северо-востоку от Мелазгерда, в окрестностях нынеш. Патноса или же Зомика.

28. Ближайшие станции Таблиц (Nasabi, Anteba, Sorue и Catispi), как выяснено мною в настоящем труде, являются станционными пунктами линии Artaxata-Gobdi-Paresaca. Аноним Равеннский, пользовавшийся более древним и лучшим экземпляром Таблиц, вместо этих станций упоминает Arachia, Indua и Didyma, которые находились, как я полагаю, на линии Artaxata—Tigranocerta. Расстояния между ними, к сожалению, у Анонима не обозначены.

29. Упомянутая у Анонима станция Arachia может быть сопоставлена с Археной (Archene) Клавдия Цезаря (см. Plin., Hist. Nat., VI, 31, 1—3, изд. Littré, Paris 1883, стр. 260—261), в которой Маркварт усматривает название древнеармянской области Харка *(=Հարք,* род. пад. *Հարքայ,* см. Südarmenien und die Tigrisquellen, ст. 77). Можно поэтому предположить, что с наименованием этой же области имеет тесную связь также и название станции Arachia.

30. Станция Didyma, как правильно указано А. Хачатряном (в тезисах к докладу, прочитанному в Ин-

ституте Истории Культуры ССРА), может быть признана тождественной с нын. деревней Дидем, лежащей к западу от Багавана, около левого берега реки Арацания.

Дорога же от Багавана в Арташат пролегала через вышеуказанные станции—Hariza, *Zolocerta, Paracata.

### 3. Artaxata - Sebastopolis.

31. Путь из Artaxata в Sebastopolis шел не через Армавир и Ардаган, как полагает Конр. Миллер (см. Itineraria Romana, стр. 649—650 и 653—654), а через нынеш. Аштарак и Ганлиджу в Хоспию и оттуда через Абастуман и Рион в Севастополь-Диоскурию.

32. Местоположение станции Strangira (Stranguria у Анонима Равен.), лежавшей на расстоянии 30 римских миль = 45 килом. от Арташата, можно предположить на месте древнего Аштарака. Strang-uria = вероятно štrang-uria „змее-град", см. Н. Марр, „Легенды", Известия ГАИМК, III, стр. 278.

33. После станции Strangira значится у Анонима Равеннского станция Janio, которая пропущена в Таблицах Певтингера. Если название станции Janio искажено из *Tancio или же *Tanco (t вм. ճ), то станцию эту можно сопоставить с армянским *ճանկի* (род. пад. *ճանկիոյ, ճանկոյ)*, лежавшим в нын. Абаране к северу от Аштарака.

34. Ближайшая станция Condeso, как правильно отмечено на карте Р. Киперта (Karte von Kleinasien, Berlin 1902), соответствует нын. Кондахсазу, произно-

шение которого подверглось, повидимому, ложной этимологизации под влиянием тюркского языка.

35. Придерживаясь указаний Анонима Равеннского, имевшего перед собою исправный и древний список римской карты, путь из Condeso в Gaulita мы можем восстановить в следующем виде: Condeso, Gavala, Misium, Savatinum, Gaulita (Gaulitia у Анонима Равен.).

36. Из вышеозначенных станций *Gaulita или Gaulitia соответствует, несомненно, нын. деревне Ганлиджа *(Ղանլիճա)*, в которой находится древний монастырь Мармашен. Название Gaulita, очевидно, искажено и должно быть исправлено в *Ganlita (t = арм. *ճ*, срв. Aretissa = *Արճեշ*).

37. После *Ganlita у Анонима Равеннского упомянута станция Tendava, пропущенная в Таблицах Певтингера; а за Тендавой значатся как в Таблицах, так и у Анонима, станции—Pagas 7 Apulum (Apolum у Анонима) 5 Caspiae, названия и местоположения которых выяснены Томашеком (см. Pauly-Wissowa Realencykl., „Caspiae"). С станционным пунктом Pagas тождественен, несомненно, нын. Пога на южном берегу озера Топорована. Apulum (Apolum у Анонима) соответствует нын. Абулу. Станция же Caspiae с двумя башнями должна быть признана тождественной с нын. деревней Хоспией, которая значится на картах к югу от города Ахалкалаки.

38. Дорога от Хоспии шла в северо-западном направлении, вероятно, через нын. Ахалкалаки в Ахалцих. Не подлежит поэтому никакому сомнению, что

